## ՄԵՐ ՀԵՂԻՆԱԿՆԵՐԻՆ

«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս ճշտորեն պահպանել հետևյալ կանոնները. տեսական բնույթի հոդվածները՝ 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի տեսությունները՝ 6—8 էջ։

Անդրկովկասի ու Հայաստանի հեղափոխական շարժման թեմաներով գրված և Հայաստանում մարքսիզմ-լենինիզմի տարածմանը նվիրված հոդվածները պետք է ունենան ռուսերեն ամփոփում՝ 8 տողի չափով։

Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, հեղինակի կողմից ստորագրված, նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն, աշխատանքի վայրն ու հեռախոսի համարը։ Խմբագրությանը հանձնված հոդվածներից մեկը պետք է լինի մեքենագրվածի առաջին օրինակը։ Հոդվածում անհրաժեշտ է ցույց տալ մեջբերումների և թվական տվյալների աղբյուրները։

Մարքսիզմ-լենինիզմի կլասիկների, կուսակցության և սովետական պետության ղեկավարների, միջազգային բանվորական ու կոմունիստական շարժման ականավոր գործիչների աշխատություններից, պաշտոնական փաստաթղթերի ժողովածուներից վերցված քաղվածքները, վկայակոչումները պետք է լինեն երկերի հատորյակների կամ աշխատությունների հայերեն, իսկ եթե այդպիսիք չկան՝ ռուսերեն վերջին հրատարակությունից։

Տեսական և գիտական բնույթի հոդվածների վերջում պարտադիր է նշել օգտագործված աղբյուրների համառոտ ցանկը։

Սույն պահանջները խախտողների հոդվածները չեն տպագրվի։ Ներկայացված հոդվածն անհետևանք կմնա, եթե այն ամբողջովին կամ հատվածներով հրապարակված լինի մամուլի և ինֆորմացիայի որևէ օրգանում։

Խմբագրությանն ուղարկված հոդվածները չեն վերադարձվում։



Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎԻ ԾՆՆԴՅԱՆ 70-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

12

ԴԵԿՏԵՄԲԵՐ 1976

ԼՈՒՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ 1922 Թ.
ИЗДАЕТСЯ С 1922 Г.

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

**«Ленинян угиов» («По ленинскому пути»)—теоретический и политический журнал ЦК КП Армении**


## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

## СОДЕРЖАНИЕ



### СТАТЬИ



### ПАРТИЙНАЯ ЖИЗНЬ



### ПРОБЛЕМНЫЕ ТЕОРЕТИЧЕСКИЕ СЕМИНАРЫ



### ЗНАМЕНАТЕЛЬНЫЕ ДАТЫ



### ОБЗОР ПЕЧАТИ







# ՄԵԾ ԼԵՆԻՆԻ ՀԵՏ, ԼԵՆԻՆՅԱՆ ԿՈՒՐՍՈՎ

### (Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎԻ ԿԵՆՍԱԳՐՈՒԹՅԱՆ ԷՋԵՐԻՑ)

Լեոնիդ Իլյիչ Բրեժնևը ծնվել է 1906 թ. դեկտեմբերի 19-ին, Դնեպրոձերժինսկ քաղաքում, բանվորի ընտանիքում: ՍՄԿԿ անդամ է 1931 թվականից: 1921 թ. սկսել է իր աշխատանքային գործունեությունը: 1927 թ. ավարտել է Կուրսկի հողաշինարարական-մելիորատիվ տեխնիկումը: 1927—30 թթ. աշխատել է նախ Բելոռուսական ՍՍՀ Օրշանսկի օկրուգում և Կուրսկի նահանգում որպես հողաշինարար, իսկ այնուհետև Ուրալում՝ որպես հողաշինարարական խմբի պետ, շրջանային հողբաժնի պետ, շրջգործկոմի նախագահի տեղակալ և ապա՝ Ուրալի մարզային հողվարչության պետի տեղակալ: 1935 թվականին ավարտելով Դնեպրոձերժինսկի մետալուրգիական ինստիտուտը՝ մինչև 1937 թ. աշխատել է մետալուրգիական գործարանում, իբրև ինժեներ: Նույն թվականի մայիսին ընտրվել է Դնեպրոձերժինսկի քաղաքային գործադիր կոմիտեի նախագահի տեղակալ: 1938 թ. մայիսից աշխատել է ՀամԿ(բ)Կ Դնեպրոպետրովսկի մարզկոմում, նախ՝ որպես բաժնի վարիչ, իսկ 1939 թ.՝ քարտուղար:

Հայրենական մեծ պատերազմի տարիներին (1941—1945) ղեկավար քաղաքական աշխատանք է տարել գործող բանակում. եղել է Հարավային ռազմաճակատի քաղվարչության պետի տեղակալ, բանակի քաղբաժնի պետ (1943 թ. գեներալ-մայոր), ապա՝ Ուկրաինական չորրորդ ռազմաճակատի քաղվարչության պետ: 1946 թ. ընտրվել է Ուկրաինայի կոմկուսի Զապորոժիեի մարզկոմի առաջին քարտուղար, իսկ 1947 թ. Դնեպրոպետրովսկի մարզկոմի առաջին քարտուղար: 1950 թ. հուլիսին ընտրվել է Մոլդավիայի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար: ՍՄԿԿ XIX համագումարում (1951 թ.) ընտրվել է ՍՄԿԿ Կենտկոմի անդամ, իսկ ՍՄԿԿ Կենտկոմի պլենումում (1952 թ. հոկտեմբեր)՝ ՍՄԿԿ Կենտկոմի նախագահության անդամության թեկնածու և ՍՄԿԿ Կենտկոմի քարտուղար: 1953 թ. մարտից (գեներալ-լեյտենանտի կոչումով) աշխատել է որպես սովետական բանակի գլխավոր քաղվարչության պետի առաջին տեղակալ: 1954 թ. ընտրվել է Ղազախստանի կոմունիստական կուսակցության Կենտկոմի երկրորդ, իսկ 1955 թ. օգոստոսին՝ առաջին քարտուղար:

ՍՄԿԿ XX համագումարում (1956 թ.) ընտրվել է ՍՄԿԿ Կենտկոմի անդամ, իսկ ՍՄԿԿ Կենտկոմի պլենումում (1956 թ. փետրվար)՝ ՍՄԿԿ Կենտկոմի նախագահության անդամության թեկնածու և ՍՄԿԿ Կենտկոմի քարտուղար: 1957 թ. եղել է ՍՄԿԿ Կենտկոմի նախագահության անդամ, 1960 թ. մայիսից՝ ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ: 1963 թ. հունիսից մինչև 1964 թ. հոկտեմբերը եղել է նաև ՍՄԿԿ Կենտկոմի քարտուղար: 1964 թ. հոկտեմբերից մինչև 1966 թ. ապրիլը հանդիսացել է ՍՄԿԿ Կենտկոմի առաջին քարտուղար և Կենտկոմի բյուրոյի նախագահ՝ ՌՍՖՍՀ-ի գծով: 1966 թ. ապրիլից մինչև օրս վարում է ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղարի պաշտոնը:

ՍՍՀՄ Գերագույն սովետի երրորդ գումարումից սկսած առ այսօր Գերագույն սովետի դեպուտատ է, 1965 թ.՝ ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության անդամ: 1961 թվականին նրան շնորհվել է սոցիալիստական աշխատանքի հերոսի, իսկ 1966-ին՝ Սովետական Միության հերոսի կոչում: 1973 թ. արժանացել է Լենինյան մրցանակի դափնեկրի կոչման՝ ժողովուրդների միջև խաղաղության ամրապնդման համար: 1976 թ. նրան շնորհվեց Սովետական Միության մարշալի կոչում, և նա հաստատվեց ՍՍՀՄ պաշտպանության խորհրդի նախագահ: Լ. Ի. Բրեժնևն արժանացել է սոցիալիստական համագործակցության երկրների կառավարական բարձր պարգևների: Նա բազմիցս մասնակցել է բարձր մակարդակով միջկուսակցական, միջպետական և դիվանագիտական բանակցություններին ու խորհրդակցություններին, գլխավորել Սովետական Միության կուսակցական, կառավարական պատվիրակությունները:

ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևի անդուլ գործունեությունը ժողովուրդների անվտանգության և աշխարհում խաղաղության ամրապնդման ասպարեզում արժանացել է բոլոր ժողովուրդների ջերմ հավանությանը: Ահա թե ինչու նրա ծննդյան 70-ամյակն ըստ արժանվույն նշում է ողջ առաջավոր մարդկությունը:

# ՀԱՂԹԱՆԱԿԻ ԳԻՏՈՒԹՅՈՒՆԸ

## ԸՆԿԵՐ Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎԻ «ԶԱՐԳԱՑԱԾ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՀԱՍԱՐԱԿԱՐԳԻ ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ԿԱՌԱՎԱՐՄԱՆ ՀԱՐՑԵՐԸ» ԳՐՔԻ ԼՈՒՅՍԸՆԾԱՅՄԱՆ ԱՌԹԻՎ

Սովետական երկրում կառուցվել է զարգացած սոցիալիստական հասարակարգ, ամեն անհրաժեշտը կա կոմունիզմի կառուցման համար: Մենք ունենք հսկայական բնական հարստություններ: Մենք ունենք ժամանակակից ինդուստրիա, խոշոր, բարձր մեքենայացված գյուղատնտեսություն, զարգացած ինֆրակառուցվածք: Մեզ մոտ կան բանվորների, կոլտնտեսականների, մասնագետների, գիտնականների հիանալի կադրեր, հզոր հոգևոր պոտենցիալ: Մեր ստեղծարար աշխատանքը գլխավորում է ՍՄԿԿ-ն՝ փորձված, մարտերում և աշխատանքում կոփված կուսակցությունը, որն ունի տնտեսական շինարարությունը ղեկավարելու հարուստ փորձ:

Խնդիրն այն է, որ լրիվ օգտագործվեն եղած հնարավորությունները, հմտորեն տնօրինվեն մարդկային, նյութական և ֆինանսական այն ռեսուրսները, որ մենք ունենք: Այս խնդրի կատարման գործում վճռական դեր է պատկանում կառավարման գիտությանը և պրակտիկային: Ինչպես նշում է ընկեր Լ. Ի. Բրեժնևը, կոմունիստական էկոնոմիկայի շինարարության նակատներում հաղթանակելու գիտությունը, ըստ էության, կառավարելու գիտություն է:

Հենց կոմունիստական շինարարության արդի փուլում սոցիալիստական էկոնոմիկայի կուսակցական ղեկավարման ու պետական կառավարման պրոբլեմների մշակմանն է նվիրված ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Լ. Ի. Բրեժնևի ճառերի, զեկուցումների, ելույթների՝ «Զարգացած սոցիալիստական հասարակարգի էկոնոմիկայի կառավարման հարցերը» ժողովածուն, որը նոր է լույս ընծայել Քաղհրատը: Գրքի մեջ պարունակվող, իրականության խոր վերլուծության վրա հիմնված տեսական ընդհանրացումները, դրույթները, եզրակացություններն ու հանձնարարականները խոշոր ավանդ են կառավարման գիտության ու պրակտիկայի, գիտական կոմունիզմի տեսության մեջ:

✦

Գրքում մեծ տեղ է գրավում սոցիալիստական հասարակության կառավարման սիստեմում կոմունիստական կուսակցության դերի մշտական բարձրացման հարցը: Մարքս-լենինյան առաջավոր տեսությամբ զինված, կուսակցությունը մշակում է գիտականորեն հիմնավորված քաղաքականություն, մասսաներին կազմակերպում է այն կենսագործելու համար: Սերտորեն կապված լինելով միլիոնավոր ու միլիոնավոր աշխատավորների հետ, կուսակցությունը նրանց ջանքերը միավորում և ուղղում է տնտեսական, սոցիալ-քաղաքական ու գաղափարական բարդ խնդիրների լուծման նպատակին:

Կոմունիստական կուսակցության ղեկավարման մեջ գլխավորը գիտակա-

նորեն հիմնավորված տնտեսական քաղաքականության մշակումն է, ժողովրդական տնտեսության արդյունավետ կառավարման կազմակերպումը: Այստեղ է կոմունիզմի համար պայքարի վճռական տեղամասերից մեկը, այստեղ են կենտրոնացվում կուսակցության ու ժողովրդի գլխավոր ջանքերը:

Այդ ամենը պահանջում է մշտապես կատարելագործել կուսակցական աշխատանքի ձևերն ու մեթոդները:

«Սովետական հասարակության զարգացման դինամիզմը, կոմունիստական շինարարության հարաճուն մասշտաբները, մեր գործունեությունը միջազգային ասպարեզում,— ասում է ընկեր Լ. Ի. Բրեժնևը,— հրամայաբար պահանջում են անընդհատ բարձրացնել կուսակցական ղեկավարության մակարդակը էկոնոմիկայի և կուլտուրայի զարգացման, մարդկանց դաստիարակության գործում» (էջ 543):

Կուսակցության դերը, նրա պատասխանատվությունը ժողովրդի, երկրի ճակատագրի համար անշեղորեն բարձրանում է կոմունիստական շինարարության թափի մեծացման հետ միասին: Աճում է կուսակցության համագումարների, նրա Կենտրոնական կոմիտեի պլենումների նշանակությունը, որտեղ լուծվում են կուսակցության ու երկրի կյանքի կարևորագույն հարցերը: Օրինակ, վերցնենք Կենտկոմի դեկտեմբերյան պլենումները, որոնք քննարկեցին տարեկան ժողովրդատնտեսական պլանների նախագծերը: Այդ պլենումներում ընկեր Լ. Ի. Բրեժնևի ելույթները, սկզբունքային գործնական մոտեցումը, էկոնոմիկայի վիճակի, տնտեսավարման մեթոդների քննադատական վերլուծությունը թույլ տվեցին ավելի խոր բացահայտել թերությունները, հայտաբերել նոր հնարավորություններ, նշել տնտեսական զարգացումն արագացնելու կոնկրետ միջոցներ:

Ուղղություն տալով էկոնոմիկայի, ամբողջ հասարակության զարգացմանը, կուսակցությունը չի փոխարինում սովետական, տնտեսական ու հասարակական կազմակերպություններին, այլ ըստ ամենայնի զարգացնում է նրանց նախաձեռնությունը, ձգտում է նրանց աշխատանքի ըստ հնարավորին մեծ արդյունավետության, ձգտում է, որպեսզի նրանք լրիվ պատասխանատվություն կրեն այն գործի համար, որը կոչված են կատարելու: Կուսակցությունը ոչ թե կարգադրում է նրանց, այլ գործում է համոզման միջոցներով, հենվելով իր հսկայական հեղինակության, մեծ փորձի վրա, ժողովրդի լայն զանգվածների պաշտպանության վրա: «Մենք ձգտել ենք,— ասում է ընկեր Լ. Ի. Բրեժնևը,— նպաստել պետական մարմինների և հասարակական կազմակերպությունների սեփական ակտիվության բազմակողմանի զարգացմանը, ըստ ամենայնի խթանել նրանց նախաձեռնությունը» (էջ 552):

Գրքի նյութերը ցույց են տալիս, որ ժողովրդի բարեկեցության հետագա էական բարձրացման կուսակցության ստրատեգիական կուրսի իրականացման գործում վճռական նշանակություն ունի շրջադարձը դեպի էկոնոմիկայի աճի այնպիսի գործոններ, ինչպիսիք են արտադրության արդյունավետության բարձրացումը, ամբողջ աշխատանքի որակի շեշտակի բարելավումը: Էկոնոմիկայի բոլոր ճյուղերի, յուրաքանչյուր մինիստրության և ձեռնարկության կողմնորոշում դեպի արդյունավետության ու որակի վճռական բարձրացում՝ սա է այժմ ամենակարևորը: Պատահական չէ, որ տասներորդ հնգամյակը կոչվել է արդյունավետության և որակի հնգամյակ:

Խորապես հիմնավորելով նոր հնգամյակի այս առանձնահատկությունը, ընկեր Լ. Ի. Բրեժնևը նշել է, որ որակի պրոբլեմն ընդգրկում է տնտեսական գործունեության բոլոր կողմերը: Դա վերաբերում է և՛ պլանների որակին, այսինքն՝ դրանց հիմնավորվածությանն ու հավասարակշռվածությանը, և՛ կառավարչական գործունեության որակին՝ արտադրական ապարատի սկզբնական օղակներից մինչև կենտրոնական տնտեսական մարմինները, և՛ աշխատանքային կարգապահության ամրապնդմանը, և՛ թողարկվող արտադրանքի որակի բարելավմանը: Բարձրացնել աշխատանքի որակը՝ նշանակում է սովորել առաջ նայել, ֆինանսական և նյութական ռեսուրսները կենտրոնացնել առավել հեռանկարային, առավելագույն փոխհատուցում տվող արտադրությունների զարգացման վրա, ավելի լրիվ օգտագործել առկա արտադրական կարողությունները, արտադրության մեջ առավել արագորեն արմատավորել նոր, ավելի կատարելագործված տեխնիկան ու տեխնոլոգիան: Բարձր որակը աշխատանքի և նյութական ռեսուրսների խնայողությունն է, արտահանության հնարավորությունների աճը, իսկ վերջին հաշվով՝ հասարակության պահանջմունքների ավելի լավ, առավել լրիվ բավարարումը: Ահա թե ինչու, ասված է գրքում, արտադրանքի որակի բարձրացմանը պետք է նպատակամղվեն պլանավորման ու կառավարման ամբողջ մեխանիզմը, նյութական ու բարոյական խրախուսման ամբողջ սիստեմը, ինժեներների և կոնստրուկտորների ջանքերը, բանվորների վարպետությունը: Պետք է մշտապես դրա վրա կենտրոնացված լինի կուսակցական կազմակերպությունների, արհմիությունների և կոմերիտմիության ուշադրությունը:

Արդյունավետության և որակի բարձրացումը ենթադրում է հաստատակամ պայքար տնտեսական գործունեության մեջ տեղ գտած թերությունների դեմ: Իսկ այդպիսի թերություններ դեռևս կան: Գրքում նշվում է, թե որոշ ճյուղերում առաջվա պես նեղ տեղ է մնում գիտության ու տեխնիկայի նվաճումների արմատավորումն արտադրության մեջ: Հատկապես անհանդուրժելի են աշխատաժամանակի կորուստները, պարապուրդները, անհամաչափությունը աշխատանքում, աշխատանքային և տեխնոլոգիական թույլ կարգապահությունը, կադրերի մեծ հոսունությունը մի շարք ձեռնարկություններում: Կան նյութական և ֆինանսական ռեսուրսների վատնման փաստեր: Այդպիսի վերաբերմունքը գործի նկատմամբ անթույլատրելի է. որքան էլ աճի հասարակության հարստությունը, խստագույն տնտեսումն ու խնայողությունը մնում են ժողովրդական տնտեսության զարգացման, ժողովրդի բարեկեցության բարձրացման կարևորագույն պայմանը: Այդ հանգամանքն ընդգծվում է ընկեր Լ. Ի. Բրեժնևի շատ ելույթներում, հատկապես Կենտկոմի պլենումներում, մասնավորապես դեկտեմբերյան (1975 թ.) և հոկտեմբերյան (1976 թ.) պլենումներում նրա արտասանած ճառերում: Խնայողության նշանակության մասին նշվեց նաև կուսակցության XXV համագումարին ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ:



Ընկեր Լ. Ի. Բրեժնևի ժողովածուում զետեղված ելույթներում, հատկապես ՍՄԿԿ XXV համագումարում նրա զեկուցման մեջ և ՍՄԿԿ Կենտկոմի հոկտեմբերյան (1976 թվականի) պլենումում նրա ճառում սահմանված են արդի փուլում էկոնոմիկայի զարգացման հանգուցային պրոբլեմները. գիտատեխնիկական առաջընթացի արագացումը, գյուղատնտեսության հետագա զարգացումը, ժողովրդական սպառման ապրանքների արտադրության ավելացումը, առևտրի և բնակչության կենցաղային սպասարկման բարելավումը, արտաքին տնտեսական կապերի զարգացումը:

Բնական է, որ գրքում հիմնական ուշադրությունը հատկացված է էկոնոմիկայի, տնտեսական մեխանիզմի կառավարման հետագա կատարելագործմանը: Այս հանգուցային պրոբլեմը վճռական նշանակություն ունի: Երբ մշակված է ճիշտ քաղաքականությունը, ճիշտ գիծը, գործի հաջողությունն առաջին հերթին կախված է կազմակերպումից: «Այդպիսի քաղաքականություն, այդպիսի գիծ մենք ունենք,— ասում է ընկեր Լ. Ի. Բրեժնևը:— Նշանակում է, վճռական օղակը դառնում է կազմակերպումը, այսինքն՝ էկոնոմիկայի կառավարման հետագա կատարելագործումը բառիս ամենալայն իմաստով» (էջ 539): Խոսքն ըստ էության այն մասին է, թե ինչպես ավելի լավ կազմակերպել հասարակության գործունեությունը տնտեսական ու սոցիալական զարգացման արագացման ուղղությամբ, ապահովել առկա հնարավորությունների առավել լրիվ օգտագործումը, հարյուր հազարավոր կոլեկտիվների, տասնյակ միլիոնավոր աշխատավորների ավելի սերտորեն միավորել կուսակցական քաղաքականության գլխավոր նպատակների շուրջը:

Ըստ որում, ընդգծվում է կառավարման կատարելագործման քաղաքական կողմը: Տնտեսական մեխանիզմի անխափան աշխատանքն օգնում է երկրում ստեղծելու լավ, գործնական մթնոլորտ, նպաստում է լայն զանգվածների աշխատանքային վերելքին, առաջացնում է աշխատավորների նախաձեռնությաան, քանի որ մարդիկ տեսնում են, որ իրենց աշխատանքը պատշաճ արդյունքներ է տալիս, ծառայում է ժողովրդի բարօրությանը, ամբողջ հասարակության բարօրությանը: Եվ, մյուս կողմից, ոչինչ այնպես չի սառեցնում մարդկանց, ինչպես չմտածված որոշումների, առանձին աշխատողների քյալլագյոզության կամ բյուրոկրատիզմի փաստերը, որոնք հանգեցնում են այն բանին, որ ապարդյուն ծախսվում են աշխատանքը, հասարակական հարստությունները, ստեղծված արժեքները:

Գիրքը պարունակում է միջոցառումների մի ամբողջական սիստեմ, որոնք ընդգրկում են տնտեսության կառավարման բոլոր հիմնական կողմերը՝ պլանավորման լուրջ կատարելագործում, տնտեսական խթանների և լծակների ավելի հմուտ օգտագործում, կառավարման կազմակերպական կառուցվածքի ու մեթոդների կատարելագործում, տնտեսական կադրերի պատրաստման ու որակավորման բարձրացման հետագա կատարելագործում, աշխատավորներին կառավարմանը ներգրավելու արդյունավետ ձևերի հետևողական զարգացում:

Առաջին հերթին խոսքը պլանավորման լուրջ կատարելագործման մասին է: Գրքի նյութերում ցույց են տրված սովետական պլանավորման խոշոր նվաճումները: Դրա հետ մեկտեղ նշվում է, որ անհրաժեշտ է ավելի բարձրացնել պլանային աշխատանքի մակարդակը, այն համապատասխանեցնել սոցիալիստական տնտեսության նոր մասշտաբներին և տեմպերին, ժամանակի նոր պահանջներին: Պետք է հասնել այն բանին, որ ուժերն ու ռեսուրսները կենտրոնացվեն կարևորագույն համպետական ծրագրերի կատարման վրա, ավելի հմտորեն զուգակցվեն ճյուղային և տերիտորիալ զարգացումը, հեռանկարային և ընթացիկ պրոբլեմները, ապահովվի էկոնոմիկայի հավասարակշռվածությունը: Այդ խնդիրների լուծման համար շատ բան պետք է անեն պլանային ու տնտեսական մարմինները, այստեղ լայն ասպարեզ կա տնտեսական գիտության ջանքերի կիրառման համար, ժամանակակից գիտական մեթոդների, այդ թվում տնտեսագիտական-մաթեմատիկական մեթոդների արմատավորման, կառավարման ավտոմատացված սիստեմների օգտագործման համար:

Կառավարչական և առաջին հերթին պլանային գործունեությունը պետք է նպատակամղվի վերջնական ժողովրդա-տնտեսական արդյունքներին: Կարևոր է ոչ միայն հիշել, որ արտադրության վերջնական նպատակն է այս կամ այն հասարակական պահանջմունքների բավարարումը, նշում է ընկեր Լ. Ի. Բրեժնևը, այլև դրանից գործնական եզրակացություններ անելը: Դրանցից մեկն այն է, որ սպառողին (խոսքը վերաբերի հումքին ու նյութերին, մեքենաներին ու սարքավորումներին, թե ժողովրդական սպառման ապրանքներին) ավելի լայն հնարավորություններ տրվեն արտադրության վրա ազդելու համար: Այս առումով տնտեսական մեխանիզմի շատ օղակներ էական բարելավման կարիք ունեն:

Տնտեսական մեխանիզմի կատարելագործման աշխատանքի մյուս ուղղությունն է տնտեսական խթանների և լծակների՝ տնտեսական հաշվարկի, շահույթի, գնի, պարգևի ավելի հմտորեն օգտագործումը: Լուրջ բարելավում է պահանջում մինիստրությունների, միավորումների ու ձեռնարկությունների գործունեության, առաջին հերթին նրանց աշխատանքի արդյունավետության ու որակի գնահատման հիմքում դրված ցուցանիշների սիստեմը: Այդ ցուցանիշները կոչված են միավորելու աշխատողի, ձեռնարկության կոլեկտիվի, պետության, հասարակության շահերը, խթանելով ստանձնելու ու կատարելու լարված պլանները, խնայելու ռեսուրսները, իջեցնելու ինքնարժեքը ու միևնույն ժամանակ ավելի արագորեն յուրացնելու նոր արտադրատեսակները, նոր տեխնիկան, առաջավոր տեխնոլոգիան և նախագծային լուծումները, թողարկելու բարձրորակ և անհրաժեշտ տեսականու արտադրանք: Պետք է բարելավել աշխատանքի վարձատրության ու նորմավորման սիստեմը, բարձրացնել պետա-



կան մարմինների դերը, որոնք անմիջականորեն պատասխանատու են աշխատանքի տվյալ տեղամասի համար:

Ընդ որում, անհրաժեշտ է որակի խթանման սիստեմն օրգանապես զուգակցել ստանդարտների, պլանային ու պայմանագրային կարգապահությունը խախտողների նկատմամբ խիստ և արժանի տույժանքների հետ: Պետք է, ասում է ընկեր Լ. Ի. Բրեժնևը, փակել այն բոլոր սողանցքերը, որոնք դեռևս անշնորհք տնտեսավարներին թույլ են տալիս համարվելու առաջավորներ, չնայած խախտում են պայմանագրային պարտավորությունները, տալիս ցածրորակ արտադրանք, վատ օգտագործում ռեզերվները:

Էկոնոմիկայի ղեկավարումը բարելավելու գործում կարևոր օղակ է կառավարման կազմակերպական կառուցվածքի ու մեթոդների կատարելագործումը: Պետք է միաժամանակ ամրապնդել դեմոկրատական ցենտրալիզմի երկու սկզբունքները. մի կողմից՝ զարգացնել դեմոկրատական սկզբունքները, տեղերում դրսևորվող նախաձեռնությունը, ղեկավարության վերին ատյանները բեռնաթափել մանր գործերից, մյուս կողմից՝ օպերատիվություն և ճկունություն ապահովել կենտրոնական մարմինների կողմից որոշումներ ընդունելու գործում:

Գրքում բերվում են փաստեր, երբ կառավարման մասնատվածությունը, ջանքերի թույլ համակենտրոնացվածությունն առաջացնում են չարդարացված ծախսեր ու կորուստներ, դանդաղեցնում խոշոր խնդիրների լուծումը: Հասունացել է խոշոր համպետական միջճյուղային և տերիտորիալ պրոբլեմների կոմպլեքսային իրականացման մեթոդները կատարելագործելու հարցը: Պահանջվում են միասնական, կենտրոնացված ծրագրեր, որոնք ընդգրկեն աշխատանքի բոլոր փուլերը՝ նախագծումից մինչև գործնական իրականացումը:

Կարևոր է, որ մշտապես լինեն ամբողջ պատասխանատվությունը կրող, այս կամ այն ծրագրի շրջանակներում բոլոր ջանքերը կոորդինացնող կոնկրետ մարմիններ, կոնկրետ մարդիկ: Անհրաժեշտ է նաև լուծել նույնատիպ ճյուղախմբերի (օրինակ, վառելիքային-էներգետիկ, տրանսպորտային, գյուղատնտեսական արտադրանքի արտադրության ու վերամշակման և այլն) կառավարման սիստեմ ստեղծելու հարցը:

Գրքում համոզիչ կերպով ցույց է տրված, որ կազմակերպական առավել ռացիոնալ ձև են հանդիսանում արտադրական միավորումները, որոնք թույլ են տալիս բարձրացնել էկոնոմիկայի արդյունավետությունը, գիտատեխնիկական հեղափոխության նվաճումները միացնել սոցիալիստական տնտեսության առավելությունների հետ և ավելի հաջողությամբ լուծել սոցիալ-տնտեսական զարգացման կոմպլեքսային խնդիրները: Դրանք ապահովում են արտադրության համակենտրոնացում, մասնագիտացում և կոոպերացում, ըստ որում ոչ միայն արդյունաբերական, այլև գյուղատնտեսական արտադրության: Միջտնտեսային կոոպերացման և ագրոարդյունաբերական ինտեգրացման բազայի վրա արտադրության մասնագիտացման ու համակենտրոնացման կուրսը, որը հիմնավորել է ընկեր Լ. Ի. Բրեժնևը, գյուղատնտեսական արտադրանքի արտադրության ծավալի արագ աճի, նրա ինքնարժեքի իջեցման, աշխատանքի արտադրողականության շեշտակի բարձրացման գլխավոր ուղիներից մեկն է:

Կառավարման կատարելագործման ողջ աշխատանքում, նշված է գրքում, պետք է լրիվ հաշվի առնվի ժամանակի գործոնը: Բարելավել պլանավորումը՝ նշանակում է ֆինանսական միջոցների և նյութական ռեսուրսների հետ միասին հաշվի առնել նախագծերի իրականացման համար անհրաժեշտ ժամկետները, ընտրել տեխնիկապես ու տնտեսապես հիմնավորված տարբերակներ, որոնք ապահովեն ամենաարագ փոխհատուցում: Կատարելագործել խթանումը՝ նշանակում է խրախուսել ժամանակի խնայողությունը և խիստ տույժանքներ կիրառել դրա շռայլման համար: Կատարելագործել կառավարման կազմակերպումը՝ նշանակում է վերացնել ավելորդ օղակները և բյուրոկրատական պրոցեդուրաները, օպերատիվ կերպով որոշումներ ընդունել:

Կառավարման կազմակերպման կատարելագործումը ոչ թե կամպանիա է, այլ սիստեմատիկ քրտնաջան աշխատանք: «Կենտրոնական կոմիտեն,— աս-

ված է գրքում,— դեմ է կառավարման կառուցվածքի, տնտեսավարման գոյություն ունեցող մեթոդների հապճեպ, չմտածված վերակառուցումներին: Այստեղ պետք է կտրելուց առաջ չափել ոչ թե յոթ անգամ, ինչպես ընդունված է ասել, այլ ութ կամ նույնիսկ տասն անգամ: Բայց եթե մենք արդեն չափել ենք, եթե մենք հասկացել ենք, որ անընդհատ զարգացող ժողովրդական տնտեսության համար նեղ են դարձել գոյություն ունեցող տնտեսական մեխանիզմի շրջանակները, ապա այդ պետք է վճռականորեն կատարելագործել: Դա Մինիստրների սովետի, Պետպլանի, կենտրոնական տնտեսական մարմինների ուղղակի պարտականությունն է» (էջ 542):

Ժողովրդական տնտեսության կառավարման հետագա կատարելագործման՝ ընկեր Լ. Ի. Բրեժնևի առաջադրած ծրագիրը հստակ ու բազմակողմանի է: Եվ որքան էլ կատարելագործված լինեն տեխնիկան, կառավարման ձևերը, մեթոդներն ու միջոցները, դրա հաջող իրացումը, վերջին հաշվով, կախված է մարդկանցից: Այդ ծրագիրը չի կարող իրականացվել առանց աշխատավորական լայն զանգվածների ակտիվ մասնակցության, որոնց գիտելիքները, փորձն ու կարողությունն են, վերջին հաշվով, որոշում մեր պլանների բախտը: Ուստի, հասկանալի է, թե ինչու գրքում մեծ ուշադրություն է դարձված սոցիալիստական դեմոկրատիայի, աշխատավորների հասարակական ակտիվության և նախաձեռնության հետագա զարգացմանը, սոցիալիստական մրցության, աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի շարժման ըստ ամենայնի ծավալմանը, առաջավոր փորձի տարածմանը:

Տնտեսության կառավարման գործում մեծ է ղեկավար կադրերի դերը: Նոր գիտական ու տեխնիկական լուծումների, աշխատանքի կազմակերպման ու կառավարման առաջավոր եղանակների ակտիվ օգտագործում, արտադրության ռեզերվների ստեղծագործական որոնում, փոփոխվող պահանջմունքների ու պահանջարկի ուշադիր հաշվառում, նորի զգացում, հեռանկարների նշմարում, կուսակցական դիրքերից, լրիվ գործիմացությամբ որոշումներ ընդունելու կարողություն՝ այսպիսին են, ինչպես նշված է գրքում, ժամանակակից սովետական ղեկավարի անկապտելի հատկանիշները: Ժամանակակից ղեկավարը պետք է ներքուստ կուսակցականությունն օրգանապես միացնի խոր բանիմացության հետ, կարգապահությունը՝ նախաձեռնության ու գործի նկատմամբ ստեղծագործական մոտեցման հետ: Ցանկացած տեղամասում ղեկավարը կոչված է հաշվի առնելու նաև իր որոշումների սոցիալ-քաղաքական, դաստիարակչական կողմերը, զգայուն լինի մարդկանց, նրանց կարիքների ու պահանջմունքների նկատմամբ, օրինակ ծառայի աշխատանքում ու կենցաղում:

Ղեկավարման ու կառավարման արդյունավետության կարևոր գործոն է հոգատարությունը կադրերի նկատմամբ: Հենց այդպիսի վերաբերմունք է կայուն կերպով հաստատվել կուսակցության մեջ: Վերջ է տրվել աշխատողների չարդարացված վերադասավորմանը և հաճախակի փոփոխմանը: Սակայն դա, ինչպես նշված է գրքում, չի նշանակում, թե կարելի է կադրերի ամրացման պատրվակով ղեկավար պոստերում թողնել նրանց, ովքեր չեն կարողանում կատարել իրենց պարտականությունները: Առավել ևս չի կարելի ղեկավար աշխատանքում թողնել այնպիսի մարդկանց, որոնք անպատասխանատվություն են ցուցաբերում, ապրում են հին գիտելիքներով, ենթադրելով, թե պաշտոնն ինքնըստինքյան հեղինակություն և հարգանք է ապահովում իրենց: Կուսակցական ղեկավար չի կարող լինել նաև նա, ով կորցնում է իր գործունեությունը քննադատաբար գնահատելու ունակությունը, կտրվել է մասսաներից, աճեցնում է շողոքորթների ու քծնողների, ովքեր զրկվել են կոմունիստների վստահությունից:

ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղարը հատուկ ուշադրություն է դարձրել քննադատությանն ու ինքնաքննադատությանը: Եվ դա պատահական չէ: Չէ՛ որ լուծվող խնդիրների մասշտաբների ու բարդության աճին համեմատ բացառիկ մեծ նշանակություն է ստանում խստապահանջ, քննադատական մոտեցումը բոլոր գործերի նկատմամբ: Դրա էությունը կայանում է նրանում, որ այս կամ



այն կազմակերպության, այս կամ այն աշխատողի գործունեության բոլոր կողմերն օբյեկտիվորեն գնահատվեն, որ եղած թերությունները բազմակողմանիորեն վերլուծվեն՝ վերացման նպատակով, որ լիբերալ վերաբերմունք թույլ չտրվի թերությունների ու դրանց մեղավորների նկատմամբ: Մարդկանց հանդեպ վստահությունն ու հարգանքը պետք է զուգակցվեն հանձնարարված գործի համար բարձր պահանջկոտության հետ: Դա մեր ամբողջ աշխատանքի օրենքն է:

Պահանջները կադրերի, նրանց պատրաստման նկատմամբ շարունակ աճում են: Ուստի կուսակցությունն ամեն հնարավոր բան անում է, որպեսզի աշխատողները բարձրացնեն իրենց տեսական մակարդակը, խորացնեն գիտելիքները, տիրապետեն գիտության ու տեխնիկայի, արտադրության կազմակերպման ու կառավարման ժամանակակից նվաճումներին: ՍՄԿԿ Կենտկոմի վերջերս ընդունած «Ղեկավար կուսակցական և սովետական կադրերի գաղափարական-տեսական մակարդակի ու գործնական որակավորման բարձրացման սիստեմի հետագա կատարելագործման մասին» որոշումը դրա մի նոր համոզիչ վկայությունն է:

Կուսակցական հաջող ղեկավարման, հավասարապես նաև կառավարման կարևոր պայմանն է, ասված է գրքում, աշխատանքի լենինյան ոճը՝ ստեղծագործական, սուբյեկտիվիզմին խորթ ոճը, որը ներթափանցված է հասարակական բոլոր պրոցեսների նկատմամբ գիտական մոտեցմամբ: Այդ ոճը ենթադրում է բարձր պահանջկոտություն իր և ուրիշների նկատմամբ, բացառում է ինքնագոհությունը, դիմակայում է բյուրոկրատիզմի և ձևականության ամեն տեսակի դրսևորումներին:

Լենինյան ոճը ենթադրում է ընդունված որոշումների կատարման լավ կազմակերպված ստուգում: Այստեղ, ասում է ընկեր Լ. Ի. Բրեժնևը, հատուկ մեկնաբանություններ չեն պահանջվում, յուրաքանչյուրի համար պարզ է, որ ընդունված որոշումները պետք է կատարվեն: Չէ՛ որ կուսակցության որոշումները նրա կոլեկտիվ կամքն են ու մասսաների համակենտրոնացված փորձը: Սակայն երբեմն պատահում է, որ որոշ որոշումներ թույլ վերահսկողության պատճառով չեն կատարվում կամ կատարվում են ոչ ճշգրիտ, ոչ լրիվ, ուշացումով: Երբեմն, երբ ինչ-որ որոշում չի կատարվում, այդ նույն հարցերի շուրջ ընդունվում է երկրորդը, երբեմն էլ նույնիսկ երրորդը: Բովանդակությամբ դրանք, թվում է, վատը չեն: Բայց ակամա հարց է ծագում. արդյոք, նոր որոշումը զեղչում, լիբերալիզմի յուրատեսակ դրսևորում չէ՞: Արդյոք, դրա հետևանքով պահանջկոտությունը չի՞ թուլանում:

Ընդունված որոշումների նկատմամբ վերահսկողությունն ու կատարման ստուգումը կազմակերպչական աշխատանքի կարևորագույն մասն են, նշում է գրքի հեղինակը: Դա յուրաքանչյուր կուսակցական, սովետական ու տնտեսական ղեկավարի, յուրաքանչյուր կուսակցական մարմնի, յուրաքանչյուր սկզբնական կուսկազմակերպության գործն է:

Ընկեր Լ. Ի. Բրեժնևի գիրքը ներթափանցված է ժողովրդի անսպառ ուժերի, նրա հսկայական ստեղծագործական հնարավորությունների նկատմամբ անսասան վստահությամբ: Եզրակացություններն ու հանձնարարականները հիմնվում են գիտության և առաջավոր փորձի տվյալների վրա, հաշվի են առնում հասարակության բարոյա-քաղաքական պոտենցիալը, համաժողովրդական սոցիալիստական մրցության հզոր ուժը, որում առավել լրիվ են դրսևորվում աշխատավոր զանգվածների ստեղծագործական ակտիվությունն ու նախաձեռնությունը:

Այժմ, նշված է գրքում, երբ կուսակցությունը լուծում է էկոնոմիկայի արդյունավետության, աշխատանքի որակի հետագա բարձրացման, ժողովրդական տնտեսության կառավարման սիստեմի կատարելագործման խնդիրը, հատուկ նշանակություն են ստանում աշխատավորների է՛լ ավելի լայն ներգրավումը կառավարչական ակտիվ գործունեության, նրանց փորձի ու գիտելիքների ավելի լրիվ օգտագործումը:

Սոցիալիստական դեմոկրատիայի հետագա զարգացման կուսակցության

կուրսը նպաստում է մասսաների ստեղծագործական եռանդի ավելի լրիվ մոբիլիզացմանը, ինչպես պետական մարմինների, այնպես էլ մասսայական հասարակական կազմակերպությունների լայն ցանցի միջոցով աշխատավորների արտադրության կառավարմանը մասնակից դարձնելու բազմազան ձևերի առավել հարստացմանը: Որքան լայն ու խորն է բոլոր աշխատավորների մասնակցությունն այդ գործունեությանը, այնքան ավելի ամուր է սովետական պետական ու հասարակական կարգը, այնքան ավելի հաջողությամբ են իրականացվում կոմունիստական շինարարության պլանները:



Ընկեր Լ. Ի. Բրեժնևի «Զարգացած սոցիալիստական հասարակարգի էկոնոմիկայի կառավարման հարցերը» գրքում ստեղծագործաբար իմաստավորված և ընդհանրացված է տնտեսության ղեկավարման հարուստ փորձը, համոզիչ կերպով ցույց են տրված, թե սոցիալիստական էկոնոմիկայի զարգացման գործում ինչ նպատակների ու բնագծերի ենք հասել: Դրա հետ մեկտեղ բացահայտվում են չլուծված պրոբլեմները, դժվարություններն ու թերությունները, չօգտագործված հնարավորություններն ու ռեզերվները: Գործերի վիճակի բազմակողմանի վերլուծությունը զուգակցվում է գործերի վճռական բարելավման նպատակին ուղղված կոնկրետ, ռեալ ու ներգործուն միջոցների նշման հետ: Բարդ երևույթների էության մեջ խորամուխ լինելը զուգակցվում է պարզ, ռացիոնալ և արդյունավետ առաջարկությունների մշակման հետ: Այստեղից էլ՝ ընկեր Լ. Ի. Բրեժնևի զեկուցումների, ճառերի, ելույթների ծրագրային բնույթը, այստեղից էլ՝ դրանց հսկայական տեսական ու գործնական նշանակությունը:

(«ՊՐԱՎԴԱ», 30 նոյեմբերի, 1976 թ.)

# ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԱՄՔՈՎ, ԱՆԴՈՒԼ ԱՇԽԱՏԱՆՔՈՎ

ՍՄԿԿ XXV ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻՑ ՀԵՏՈ անցած ժամանակահատվածում սովետական ժողովրդի աբարչագործ ջանքերով կերտվող կոմունիստական հասարակարգի կենդանի եռուզեռում, խոշորագույն իրադարձություն հանդիսացավ կուսակցության Կենտկոմի սույն թվականին կայացած հոկտեմբերյան պլենումը: Մի պլենում, որտեղ ունեցած իր ծրագրային ու իմաստալի ելույթում Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևը հատկապես շեշտեց, թե այն ամբողջ կուսակցության ու ողջ ժողովրդի համար առանձնահատուկ նշանակություն ունի[1]:

Պլենումը քննարկեց ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1976—1980 թվականների պետական հնգամյա պլանը և ՍՍՀՄ 1977 թվականի ժողովրդական տնտեսության զարգացման պետական պլանը, ինչպես և ՍՍՀՄ 1977 թվականի պետական բյուջեն ու ՍՍՀՄ 1975 թվականի պետական բյուջեի կատարման հարցերը:

Տասներորդ հնգամյա պլանի կատարման առաջին տարվա ոգևորիչ արդյունքները մի անգամ ևս ապացուցում են, որ սովետական մեր մեծ հայրենիքի տնտեսական ու սոցիալ-կուլտուրական կյանքի բուռն վերընթացը կուսակցության XXV համագումարի մշակած լենինյան կուրսի արգասիքն է:

ՍՄԿԿ Կենտկոմի 1976 թ. հոկտեմբերյան պլենումում ունեցած իր ելույթում Լ. Ի. Բրեժնևը, բարձր գնահատելով կուսակցության ու ժողովրդի այս տարվա գործադրած վիթխարի ջանքերը, հստակ ու խոր վերլուծությամբ կանխագծեց մեր վաղվա առաջընթացի առավել արդյունավետ տակտիկան, եզրակացնելով, որ այս պլենումի որոշումները կոչված են դառնալու կուսակցական կոմիտեների, բոլոր կոմունիստների պրակտիկ գործունեության մարտական ծրագիրը: Ելնելով այդ ծրագրի անհապաղ ու անշեղ իրագործման նկատառումից, նա միաժամանակ բացահայտեց ու նախանշեց տասներորդ հնգամյակի վճռական տեղամասերը, առանձնացրեց հնգամյա ու տարեկան պլանների այն հանգուցային պրոբլեմները, որոնց իրագործումն անհնար է առանց կուսակցության ու ժողովրդի ողջ ուժերի առավել համակենտրոնացման: Պլենումում արտասանած իր բովանդակալի ճառում Լ. Ի. Բրեժնևը խորապես վերլուծեց միջազգային կյանքի բարդ ելևէջները, մատնանշելով կուսակցության ու սովետական կառավարության՝ խաղաղության ամրապնդման նպատակով վարած սթափ ու ռեալիստական կուրսի բոլոր ասպեկտները:

Հիրավի, ՍՄԿԿ Կենտկոմի հոկտեմբերյան պլենումում քննարկված, ինչպես և ՍՍՀՄ իններորդ գումարման Գերագույն սովետի հինգերորդ սեսիայում հաստատված տասներորդ հնգամյա պլանն իր մասշտաբներով ու մեծ հնարավորություններով, իրոք, հոյակապ է: Անդրադառնալով այս հարցին Լ. Ի. Բրեժնևը նշեց, որ տասներորդ հնգամյա պլանի նախագիծն իր ընդհանուր տնտեսական բոլոր ցուցանիշներով— ազգային եկամտի աճով, արդյունաբերության և գյուղատնտեսության արտադրանքով, կապիտալ ներդրումների ծավալով, բնակչության կենսամակարդակի բարձրացմամբ, բխում է ՍՄԿԿ XXV համագումարի դրույթներից:

---

[1] Ընդգծումների մեծ մասը մերն են. ԽՄԲ.:

Ահա մի քանի պերճախոս թվեր, որոնք մեր պայծառ գալիքի ամրակուռ հենքն են։ Ընթացիկ հնգամյակում ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության ներդաշնակ զարգացման նպատակով ներդրվելու է 621 մլրդ ռուբլի, որի շնորհիվ պողպատի արտադրությունը կաճի 27,2 մլն տոննայով, նավթինը՝ 149,2 մլն տոննայով, գազինը՝ 145,7 մլրդ խորանարդ մետրով, քարածխինը՝ 103,7 մլն տոննայով, էլեկտրաէներգիայինը՝ 341,4 մլրդ կվտ-ժամով։ Բացի այդ, այս հնգամյակում 45,1 մլրդ ռուբլով կավելանա ժողովրդական սպառման ապրանքների արտադրությունը, մոտ 40 մլն տոննայով՝ հացահատիկի տարեկան միջին բերքը։ Նման բարձունքների մեր երկիրը երբեք չի հասել։

Ընթացիկ հնգամյակում արդյունաբերության արտադրանքը կավելանա 36, աշխատանքի արտադրողականությունը՝ 25 տոկոսով։ Նախատեսվում է դրա հաշվին ստանալ արդյունաբերական արտադրանքի աճի 90 տոկոսը, իսկ գյուղատնտեսական արտադրանքի ու շինմոնտաժային աշխատանքների ծավալի ամբողջ աճը։ Եվ, վերջապես, գյուղատնտեսության նյութատեխնիկական բազան առավել հզորացնելու նպատակով ներդրվելու է 170 մլրդ ռուբլուց ավելի։ Այս խոշոր պատկառելի գումարի գործադրմամբ, այլ բարիքների հետ մեկտեղ, երկիրը հնարավորություն կունենա շահագործելու ինը միլիոն հեկտար նոր ռոոգելի ու չորացված հողեր, ջրարբիացված 37 մլն հեկտար արոտավայրեր, կստանա 466 մլն տոննա պարարտանյութ և քիմիական կերախառնուրդ, 42 մլրդ ռուբլու արժողությամբ նոր մեքենաներ։

Վերլուծելով ՍՄԿԿ ագրարային քաղաքականության հանգուցային հարցերը, Լ. Ի. Բրեժնևը շեշտում է, թե այժմ չկա ավելի կենսական խնդիր, քան մեր էկոնոմիկայի ագրարային սեկտորն ամենաարդիական մակարդակին հասցնելը։ Մի հանգամանք, որն առավել հրատապ ու կարևոր է դարձնում կուսակցության Կենտկոմի հոկտեմբերյան պլենումի որոշումներն ու նյութերը։

ՍՄԿԿ Կենտկոմի հոկտեմբերյան պլենումը հանձին Լ. Ի. Բրեժնևի, ըստ արժանվույն գնահատելով հնգամյակի առաջին տարվա ակնբախ հաջողությունները, նշեց, որ սովետական ժողովուրդը լավ սկսեց իր մեկնարկը։ Դա նշանակում է, որ աշխատանքի ճիշտ կազմակերպման, տնտեսության գիտական կառավարման և աշխատավորական զանգվածների ստեղծագործ նախաձեռնությունների գլխավորման դեպքում, կուսկազմակերպությունները կարդարացնեն իրենց, երբ ամենքն աշխատեն լենինաբար և գործով ապացուցեն դա։

Նոր հնգամյակում սևեռված մեր կուսակցության սոցիալական ծրագրի համաձայն, սպառման ֆոնդը հինգ տարում կավելանա գրեթե 76 մլրդ ռուբլով, որը 12 մլրդ-ով գերազանցում է նախորդ հնգամյա պլանով նախատեսված աճը։ Այդ ժամանակամիջոցում երկրի բնակարանային ու կոմունալ շինարարության վրա կծախսվի 100 մլրդ ռուբլի, առողջապահությանը, լուսավորությանը և կուլտուրայի նյութական բազայի զարգացմանը կհատկացվի 20 մլրդ ռուբլի։ Ընթացիկ հնգամյակում բնակչության յուրաքանչյուր շնչին ընկնող ռեալ եկամուտները կավելանան 21 տոկոսով։ Ժողովրդի կենսամակարդակի բարձրացմանը, սոցիալական բարօրությանը նպաստող՝ կուսակցության վարած կուրսի անվիճելի փաստերն են սրանք, բայց ոչ բոլորը։

Միայն 1980 թվականին 17,7 մլրդ ռուբլի կհատկացվի համապետական սոցիալական միջոցառումներին. նշանակալիորեն կավելանան նվազ ապահովված ընտանիքների եկամուտները։ Միաժամանակ նախատեսված է բարձրացնել լուսավորության, առողջապահության, կուլտուրայի, առևտրի, կենցաղային ու կոմունալ սպասարկման 31 մլն աշխատողների դրույքներն ու ռոճիկները։ Բնորոշ է և այն, որ այս հնգամյակում կսկսվի բանվորների ու ծառայողների նվազագույն աշխատավարձի, նրանց դրույքների ու ռոճիկների բարձրացման նոր փուլը։ Ընդ որում, բանվոր ծառայողների միջին աշխատավարձը կհասնի ամսական 170 ռուբլու, իսկ կոլտնտեսականների աշխատանքի միջին վարձատրությունը՝ 116 ռուբլու։ Մասնակիորեն վճարովի արձակուրդ կտրվի աշխատող մորը՝ մանկան խնամքի համար, մինչև վերջինս դառնա մեկ տարեկան։ Կբարձրացվեն նվազագույն կենսաթոշակները, կտրվեն



կոլտնտեսականների կենսաթոշակային ապահովության լրացուցիչ արտոնություններ։

Պլենումում իր արտասանած ուղենիշ ճառում Լ. Ի. Բրեժնևն ասաց. «Ինչպես միշտ, Սովետական Միության էկոնոմիկայի զարգացման հնգամյա պլանը հաշվի է առնում յուրաքանչյուր միութենական ու ինքնավար հանրապետության առանձնահատկություններն ու պահանջմունքները, ապահովում նրանց ներդաշնակ զարգացումը, նրանց ընդհանուր վերելքը դեպի սոցիալական պրոգրեսի նոր բարձունքներ։ Մեր հնգամյակը ժողովուրդների բարեկամության լենինյան քաղաքականությունն է՝ թարգմանված էկոնոմիկայի լեզվով»։

1976 թվականի տնտեսական ռիթմը,— շեշտեց Լ. Ի. Բրեժնևը,— ապահովում է կուսակցության առաջադրած խնդիրների լուծումը։ Եվ դա ո՛չ միայն տնտեսական, այլև քաղաքական մեծ հաջողություն է։ Այսօր մեր պարտականությունն է՝ տարին ավարտել հարվածայնորեն։ «Արդյունավետություն և որակ։ Այս երկու բառերը,— ասաց նա,— այժմ դարձել են ամբողջ տնտեսական գործունեության նշանաբանը։ Դրանց մեջ, ինչպես ամենքին հասկանալի է, արտահայտված են ժողովրդական տնտեսության զարգացման արդի փուլի օբյեկտիվ պահանջմունքները»։

Սոցիալիստական մեր տնտեսության համար հույժ կենսական վերոհիշյալ երկու պրոբլեմների լուծման եղանակները ևս նշված են Լ. Ի. Բրեժնևի ելույթում։ Այստեղ ասված է, թե պայքար որակի ու արդյունավետության համար նշանակում է, որ յուրաքանչյուր սովետական մարդ, աշխատանքային կոլեկտիվ պետք է հասնի աշխատանքի առավելագույն արտադրողականության, աշխատանքային բարձր կարգապահության, խնայողության ռեժիմի անշեղ կիրառման, սեփական աշխատանքի ու թողարկվող արտադրանքի որակի առավել բարձրացման։ Բացի այդ, որակի ու արդյունավետության համար պայքարող «յուրաքանչյուր ղեկավար և մասնագետ պարտավոր է տիրապետել աշխատանքի լենինյան ոճին, կառավարման լենինյան գիտությանը, հասատատի արտադրության պլանավորման ու կազմակերպման ժամանակակից մեթոդները, լինի գիտատեխնիկական պրոգրեսի ակտիվ կիրառողը»։

Տասներորդ հնգամյա պլանի հաջող իրագործման համար,— պլենումում շեշտեց Լ. Ի. Բրեժնևը,— յուրաքանչյուր կոմունիստ և կուսակցական կազմակերպություն պետք է ամեն կերպ խրախուսի ու տարածի խոշոր գործնական և օգտակար նախաձեռնությունները, վճռականապես վերացնի այն ամենը, ինչ խանգարում է ստեղծագործական մտքի բաբախյունին, խաթարում մեր առաջընթացը։ Այլ կերպ ասած, կուսակցությունը մեզ կոչում է՝ աշխատել ու պայքարել լենինաբար, տնտեսավարման, կյանքի արմատական կատարելագործման, նոր մարդու դաստիարակության բոլոր բնագավառներում հավատարիմ մնալ լենինյան ոճին։

Վկայակոչելով կոմունիզմ կառուցողին հատուկ լենինյան բուն ուղենիշ դրույթը, Լ. Ի. Բրեժնևը շեշտում է, որ այս հնգամյակում արդյունավետությունն ու որակն են տնտեսավարության առանցքը, որովհետև կուսակցությունը միտում է այս հինգ տարիներում ընդլայնել երկրի տնտեսական աճի աղբյուրները, բարելավել էկոնոմիկայի բալանսավորումը և, այդպիսով, հող պատրաստել հաջորդ հնգամյակի նշանակալի վերընթացի համար։

Եթե աշխատենք լենինաբար՝ առավել արդյունավետ, ապա հնարավոր կլինի,— ասում է Լ. Ի. Բրեժնևը,— «ոչ թե երկու անգամ, ինչպես նախատեսված է հնգամյա պլանի նախագծով, այլ շատ ավելի մեծ չափերով» թողարկել որականիշով արդյունաբերական արտադրանք։

Վերլուծելով որակի ու արդյունավետության բարձրացման պահանջը, Լ. Ի. Բրեժնևը նշում է, որ այն տարբեր կերպ է իրագործվում հանրային աշխատանքի զանազան տեղամասերում։ Ուստի, ասում է նա, տնտեսական մտածողությունը պետք է առավելագույն չափով կոնկրետ լինի, և մեր ուշադրությունը սրում է մի քանի պրոբլեմների վրա, որոնցից կենտրոնականը կապիտալ շինարարությունն է։ Խնդիր է դրվում՝ հնգամյակում նվազեցնել անավարտ շինարարության ծավալը, կրճատել շինմոնտաժային աշխատանքների արժեքն ու

թյան խնդիրները, որոնք բխում են պլենումում ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Լ. Ի. Բրեժնևի արտասանած փայլուն ճառից։ Զեկուցմամբ հանդես եկավ ՀԿԿ Կենտկոմի առաջին քարտուղար Կ. Ս. Դեմիրճյանը։ Պլենումը քննարկեց նաև Հայկական ՍՍՀ ժողովրդական տնտեսության զարգացման 1976—1980 թվականների պետական հնգամյա պլանի, Հայկական ՍՍՀ ժողովրդական տնտեսության զարգացման 1977 թվականի պետական պլանի և Հայկական ՍՍՀ 1977 թվականի պետական բյուջեի նախագծերը։ Զեկուցումներով հանդես եկան Հայկական ՍՍՀ Մինիստրների սովետի նախագահի տեղակալ, պետպլանի նախագահ Ս. Լ. Թումանյանը և հանրապետության ֆինանսների մինիստր Զ. Ա. Զանոյանը։

Հանրապետության աշխատավորները, անշեղորեն կենսագործելով ՍՄԿԿ XXIV համագումարի ծրագրային առաջադրանքները, իններորդ հնգամյակը կենսագործեցին ակնբախ հաջողություններով։ Բավական է նշել, որ նախորդ հնգամյակում հանրապետության ազգային եկամուտն աճեց 46, արդյունաբերական արտադրության ծավալը մեծացավ 45 և կապիտալ ներդրումներինը՝ 30 տոկոսով։ Սպառման ապրանքների արտադրատեմպերը կազմեցին՝ 49,2 տոկոս։ Արձագանքելով ՍՄԿԿ Կենտկոմի կոչին, Հայաստանի աշխատավորները նոր թափ հաղորդեցին սոցիալիստական մրցությանը և աշխատանքի արտադրողականության բարձրացման, բարձրորակ արտադրանքի թողարկման, սոցիալիստական կազմակերպվածության հոյակապ օրինակներ ցուցաբերեցին։

Հանրապետության տասներորդ հնգամյա պլանը սահմանված ծավալով ու թափով առավել մասշտաբային է նախորդի համեմատ։ Բերենք լոկ մի քանի խոսուն թվեր։ Այս հնգամյակում հանրապետության արդյունաբերական արտադրության ծավալը կաճի 46,0 տոկոսով։ Արագ զարգանալու են էներգետիկան, մեքենաշինությունը, ռադիոէլեկտրոնիկան։ Իսկ գյուղատնտեսական արտադրանքի արտադրությունը կավելանա 24 տոկոսով։ Այս տեմպերին համամասնաբար զարգանալու են տրանսպորտն ու կապի միջոցները։ Հանրապետության աշխատավորության նյութական բարօրության բարձրացման, գիտության, կուլտուրայի, կրթության զարգացման ու բուժսպասարկման բարելավման նպատակով ներդրվելու են խոշոր գումարներ, որոնք արտացոլված են հանրապետության Գերագույն սովետի այս տարվա վերջին սեսիայի հաստատած հնգամյակին վերաբերող օրենքում։

Ընթացիկ հնգամյա պլանով ժողովրդական տնտեսության զարգացման նպատակով ներդրվելու է 5,17 մլրդ ռուբլի, որը 21,2 տոկոսով ավելի է իններորդ հնգամյակից։ Ոգևորիչ է հանրապետության ազգային եկամտի՝ 37,7 տոկոսով աճը, որի երեք քառորդը կանխատեսված է ստանալ ի հաշիվ հանրային աշխատանքի արտադրողականության բարձրացման։ Այս հնգամյակում առանցքային են արդյունավետության ու որակի բարձրացման հարցերը, որոնց ճիշտ ու ժամանակին լուծումը պահանջում է խնդիրների գիտական ու կոմպլեքսային եղանակով մշակում, գիտատեխնիկական հեղափոխության պահանջների ծրագրված բավարարում։ Նախատեսված է բարձրորակ արտադրանքի բաժինը 1980 թվականին հասցնել 20 տոկոսի, 1975 թ. 6,5 տոկոսի փոխարեն։

Տնտեսական այս բարձունքին հասնելու համար անհրաժեշտ է՝ արմատավորել արդիական սարքավորումները, կատարելագործել տեխնոլոգիական պրոցեսները, դրանց մեքենայացմամբ ու ավտոմատացմամբ նվազագույնի հասցնել ձեռքի աշխատանքը և մշտապես նորացնել արտադրանքի տեսականին։

Պլենումը շեշտեց, որ հնգամյակի սոցիալ-տնտեսական մեծ խնդիրների լուծումը հնարավոր է միայն գիտատեխնիկական պրոգրեսի ու գիտության զարգացման արագացմամբ, արտադրության հետ վերջինիս կապերի առավել սերտացմամբ։ Այս գործում հանրապետությունն ունի որոշակի դրական փորձ, որը պետք է ծավալվի ու արմատավորվի։ Չպետք է անտեսել, որ գիտական շատ հաստատությունների աշխատանքի մակարդակն ու արդյունքները տակավին բավարար չեն։ Ուրախալի է, որ հանրապետության արդյունաբերության շատ ճյուղեր, միավորումներ պատվով են կատարել անցած ամիսների պլանա-



յին առաջադրանքները։ Ցավոք, որոշ ձեռնարկություններ ո՛չ միայն թողարկում են ցածրորակ արտադրանք, այլև թերակատարում են պլանները։

Ողջ հնգամյակի անթերի կատարումը պահանջում է անդուլ, լարված և, որ գլխավորն է՝ արդյունավետ, գիտականորեն կազմակերպված աշխատանք։ Ինքնին պերճախոս է այն հանգամանքը, որ հանրապետության հնգամյա պլանում ազգային եկամտի աճի մեկ տոկոսի արժեկշիռը 1975 թ. 21,6 միլիոն ռուբլուց 1980 թ. կհասնի 31,5 միլիոնի։ Ըստ հնգամյակի՝ ազգային եկամտի բացարձակ աճը կազմելու է 1 միլիարդ 190 միլիոն ռուբլի, իսկ սպառման ֆոնդի բաժինն ազգային եկամտի ծավալում՝ բացարձակ աճի առումով կազմելու է 792 միլիոն ռուբլի։ Հնգամյակի ընթացքում արտադրանքի աճը կազմելու է 1 միլիարդ 836 միլիոն ռուբլի։ Նախատեսվում է, որ արտադրամիջոցների արտադրությունը՝ «Ա» խումբը, կաճի 46,6 տոկոսով, իսկ սպառառարկաների արտադրությունը՝ «Բ» խումբը, 45,8 տոկոսով։ Հանրապետության ողջ արդյունաբերության զարգացման նպատակով ներդրվելու է 1 միլիարդ 751 միլիոն ռուբլի, նախորդ հնգամյակի համեմատությամբ 21 տոկոսով ավելի։

Մեր վերընթացի հզոր թափի ցայտուն վկայություններն են օրենքի ուժ ստացած հետևյալ թվերը. հնգամյակի վերջին տարում էլեկտրաէներգիայի հզորությունը կհասնի 14,5 մլրդ կվտ-ժամի, պետական միջոցներով կկառուցվեն 4 մլն 642 հազար քմ բնակարաններ՝ 600 հազար մարդու համար։

1976—1980 թվականներին հանրապետության գյուղատնտեսության զարգացման նպատակով ծախսվելու է 1.310 մլն ռուբլի, որը 44,6 տոկոսով ավելի է, քան նախորդ հնգամյակում։ Այս հնգամյակում կապիտալ ներդրումները և նյութատեխնիկական միջոցները հիմնականում կհատկացվեն հողերի մելիորացմանը, քիմիացմանը և արտադրապրոցեսների մեքենայացմանը։ Հնգամյակի վերջին մեր ոռոգելի հողատարածությունը կավելանա 20 հազար հեկտարով։

Այս տարվա նոյեմբերի 27-ին հանրապետության կենտրոնական վիճակագրական վարչության հաղորդագրության համաձայն, Հայաստանի գյուղատնտեսության աշխատողների անձնվեր ջանքերով պետությանն է վաճառված 67 հազար 871 տոննա կարտոֆիլ, որը 10 հազար 245 տոննայով ավելի է նախորդ տարվա նույն ժամանակաշրջանից։ Հանրապետությունում մթերված է 307 հազար 889 տոննա բանջարեղեն, որը 37,9 հազար տոննայով բարձր է պլանով նախատեսվածից և 63,4 տոննայով ավելի՝ նախորդ տարվանից։ Այս հնգամյակի առաջին տարում մթերված է 92 հազար 66 տոննա մրգեղեն. պլանը կատարված է 102,3 տոկոսով։ Հանրապետությունում արդեն մթերված է 159,2 հազար տոննա շաքարի ճակնդեղ, պլանով նախատեսված 116 հազար տոննայի փոխարեն։ Նախատեսած 41 հազար տոննայի փոխարեն, հանձնված է 47,4 հազար տոննա խորդենի։

Ինչ խոսք, այս հաջողություններն ուրախալի են, ոգեշնչող։ Սակայն ոչ մի պահ չմոռանանք և այն, ինչ ասաց ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևը ս.թ. հոկտեմբերյան պլենումում։ Զարգացման «...արդի փուլում գյուղատնտեսության հետագա վերելքի պրոբլեմը նախ և առաջ նրա արդյունավետության բարձրացման պրոբլեմն է՝ ամենալայն առումով։ Ընդհանուր խնդիրը կարելի է ձևակերպել այսպես՝ խելացիորեն, տնտեսաբար օգտագործել պետության կողմից գյուղատնտեսության զարգացման համար հատկացվող հսկայական ռեսուրսները, հոգատար վերաբերմունք ցուցաբերել հողի նկատմամբ, հասնել յուրաքանչյուր հեկտարի, ներդրված յուրաքանչյուր ռուբլու, պարարտանյութի յուրաքանչյուր տոննայի առավելագույն փոխհատուցման»։

Առաջադրված այս պրոբլեմի հաջող լուծումը թելադրում է ամենից առաջ բարձրացնել գյուղատնտեսության մարզում աշխատող մարդկանց պատասխանատվությունը, բազմապատկել նրանց ձեռներեցությունը և մոբիլիզացնել կոլտնտեսությունների ու սովխոզների ներքին ռեզերվները։ Դա նշանակում է առավել ակտիվ իրագործել կուսակցության նախանշած ագրարային ստրատեգիական կուրսը՝ հասնել առավելագույն արդյունքի միջտնտեսային կոոպերացման և ագրոարդյունաբերական ինտեգրացման բնագավառներում, բարձ-

րացնել գյուղատնտեսական արտադրանքի որակը, նվազագույնի հասցնել մթերքների փոխադրման ու մշակման ընթացքում եղած կորուստները: Խաղողի շաքարայնության բարձրացմամբ, ծխախոտի, բանջարեղենի բոլոր տեսակների, մսի, կաթի և մյուս մթերքների որակային ցուցանիշների առավելագույն աճով միայն հնարավոր կլինի փոխհատուցել ներդրվող ահագին կապիտալները:

Անհրաժեշտ է կիրառել այնպիսի միջոցներ, որոնք հնարավորություն ընձեռեն ժամանակին նկատելու մեր գործունեության նեղ տեղերը, բացահայտելու թերությունների սկզբնապատճառներն ու առաջացման պատանշանները, թույլ չտալու, որ դրանք արգելակեն պլանային առաջադրանքների կատարումը:

ՀԿԿ Կենտկոմի վերջին պլենումում Կ. Ս. Դեմիրճյանը արծարծեց կապիտալ շինարարության հարցը, այն որակելով կենտրոնական պրոբլեմ: Հնգամյակում նախատեսված կապիտալ շինարարության 21,2 տոկոսով աճը տեսական ու լարված աշխատանքի է կոչում մեզ: Հսկայական գումարների իրացումը մեծագույն ջանքեր է պահանջում: Պլանավորվում է կրճատել շինարարության ժամկետները և անավարտ շինարարության ծավալը: Ընթացիկ հնգամյակում գործարկվելու են մեկ ու կես անգամ ավելի հիմնական ֆոնդեր, քան նախորդ հնգամյակում: Այս խնդիրը մեր հանրապետության համար հրատապ է:

Շինարարական մինիստրություններն ու կազմակերպությունները պարտավոր են արմատապես ինդուստրացնելու կառուցողական պրոցեսները, արագացնելու շինարարական տեմպերը, կարճ ժամանակամիջոցում բարելավելու կառույցների որակը, պատշաճ մակարդակով ապահովելու շինարարության նախագծերի ու նախահաշիվների գործը, արտադրության ընթացքում, ինչպես և կառուցողներին վարձատրելիս կիրառելու պրոգրեսիվ եղանակներ, ինչպիսիք են՝ բրիգադային կապալը, ակորդային-պարգևավճարային վարձատրությունը և այլն: Եվ, վերջապես, կառույցների կուսակցական կազմակերպությունները կոչված են լինելու յուրաքանչյուր նորի, առաջավորի նախաձեռնողներ: Սա պարտավորեցնում է բոլոր կառույցներում ստեղծել անհրաժեշտ պայմաններ, որպեսզի կառուցող բանվորը, բրիգադը և ստորաբաժանումը կատարի իր սոցիալիստական պարտավորությունները:

Հայաստանի աշխատավորները ջերմորեն հավանություն են տալիս և պաշտպանում ՍՄԿԿ Կենտկոմի ու նրա քաղբյուրոյի լենինյան արտաքին քաղաքական իմաստուն կուրսը, բարձր են գնահատում ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևի անձնական վիթխարի ավանդն այդ գործում: Խաղաղասիրական արտաքին քաղաքական կուրսի կենսագործման ասպարեզում իր անխոնջ գործունեությամբ նա, իրավամբ, վաստակել է սովետական ժողովրդի, սոցիալիզմի երկրների աշխատավորների, մոլորակի բոլոր պրոգրեսիվ ուժերի ջերմ սերն ու խոր հարգանքը:

Լ. Ի. Բրեժնևի աշխատությունները, ելույթներն ու զեկուցումները ստեղծագործական մարքսիզմ-լենինիզմի վառ օրինակ են, ծանրակշիռ ներդրում գիտական կոմունիզմի ամենահաղթ տեսության զարգացման ոլորտում:

ՍՄԿԿ Կենտկոմի հոկտեմբերյան պլենումում արտասանած իր ծրագրային ճառում Լ. Ի. Բրեժնևը մեզ կոչեց մեծագույն սխրանքի՝ գործենք լենինաբար:

Այս օրերին սովետական ողջ ժողովուրդը և աշխարհի կոմունիստներն ու աշխատավորական զանգվածները ջերմ խանդաղատանքով նշում են սիրելի Լեոնիդ Իլյիչի յոթանասունամյա հոբելյանը, ի սրտե մաղթում նրան քաջառողջություն և անսպառ կորով՝ հանուն մեր մեծ հայրենիքի հետագա բարգավաճման ու ծաղկման, ողջ հողագնդի խաղաղության պահպանման:

Հանրապետության աշխատավորները ջանք չեն խնայի աշխատանքային նոր սխրանքներով նշանավորելու թանկագին ղեկավարի յոթանասունամյակը, մի անգամ ևս հավաստելով իրենց համախմբվածությունը ՍՄԿԿ Կենտկոմի շուրջը և պատրաստակամությունը՝ ՀԿԿ Կենտկոմի ղեկավարությամբ պատվով կենսագործելու հարազատ կուսակցության XXV համագումարի առաջադրած պատմական խնդիրները:

# ՀՈԴՎԱԾՆԵՐ

## ԳԻՏԱԿԱՆ ԿՈՄՈՒՆԻԶՄԸ՝ ՄԱՐՔՍԻԶՄ-ԼԵՆԻՆԻԶՄԻ ՔԱՂԱՔԱԿԱՆ ՏԵՍՈՒԹՅՈՒՆ

**Է. Վ. ԹԱԴԵՎՈՍՅԱՆ**
Փիլիսոփայական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

ՈՐՔԱՆ ԱՎԵԼԻ Է ՀԵՌԱՆՈՒՄ պատմական այն ժամանակաշրջանը, երբ գիտական կոմունիզմի հիմնադիրներ Կ. Մարքսը և Ֆ. Էնգելսը սոցիալիզմը ուտոպիայից վերածեցին գիտության, այնքան մեծ հնարավորություն է ընձեռվում՝ լիովին գնահատելու նրանց գիտական սխրանքի անանց նշանակությունը: Դա միանգամայն օրինաչափ է, քանզի պատմական մեծ իրադարձությունները իրենց հետքն են թողնում հասարակության հետագա ողջ զարգացման վրա:

Անցյալ դարի կեսերին կոմունիզմի մասին խոսում էին իբրև անիրականանալի երազանքի կամ ուրվականի: Այսօր գիտական կոմունիզմը դարձել է ամենաազդեցիկ հասարակական-քաղաքական տեսությունը՝ տիրապետելով հարյուր միլիոնավոր մարդկանց մտքին ու հոգուն: Կոմունիզմի գաղափարներն այժմ դարձել են միջազգային կոմունիստական շարժման դրոշը, ժամանակի սոցիալ-քաղաքական ամենահզոր ուժը, որը միավորում է 90 կոմունիստական կուսակցություններ՝ ավելի քան 60 միլիոն կոմունիստներով: Այդ գաղափարները մարմնավորված են համաշխարհային սոցիալիստական սիստեմում, որն ընդգրկում է երկրագնդի տերիտորիայի ավելի քան մեկ քառորդը և բնակչության ավելի քան մեկ երրորդը:

Գիտական կոմունիզմը բռնել է ամենաբարդ ժամանակի, կյանքի, հեղափոխական պայքարի, սոցիալիստական և կոմունիստական շինարարության պրակտիկայի քննությունը: Պատմությունն անհերքելիորեն ապացուցել է, որ այդ ուսմունքն ամենազոր է, քանի որ այն ճշմարիտ է, քանի որ ճիշտ է արտացոլում հասարակական առաջընթացի օբյեկտիվ պահանջներն ու օրինաչափությունները: Ինչպես նշում էր Վ. Ի. Լենինը, «...մեր հայացքները պաշտպանելու է գալիս ինքը՝ պատմությունը, պաշտպանելու է գալիս իրականությունն ամեն քայլափոխում» (Երկեր, հ. 10, էջ 10):

ՍՄԿԿ-ն գիտական կոմունիզմի կուսակցությունն է: Մարքսիզմ-լենինիզմը նրա քաղաքականության, պրակտիկ գործունեության տեսական անսասան հիմքն է: «Կոմունիստական դաստիարակության գործը,— կուսակցության XXV համագումարում ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ ասաց Լ. Ի. Բրեժնևը,— ինչպես և իր ամբողջ հեղափոխական վերափոխիչ գործունեությունը ՍՄԿԿ-ն կառուցում է մարքս-լենինյան տեսության ամուր հիմքի վրա: Մարքսիզմ-լենինիզմը միակ հուսալի հիմքն է ճիշտ ստրատեգիա և տակտիկա մշակելու համար: Նա մեզ տալիս է պատմական հեռանկարի ըմբռնումը, օգնում է որոշելու սոցիալ-տնտեսական ու քաղաքական զարգացման ուղղու-

թյունը շատ տարիների համար, ճիշտ կողմնորոշվելու միջազգային իրադարձություններում» (Լ. Ի. Բրեժնև, ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետվությունը և կուսակցության հերթական խնդիրները ներքին ու արտաքին քաղաքականության բնագավառում, էջ 118)։

ՄԱՐՔՍԻԶՄ-ԼԵՆԻՆԻԶՄԸ ԲԱՆՎՈՐ ԴԱՍԱԿԱՐԳԻ աշխարհայացքն արտահայտող փիլիսոփայական, տնտեսական և սոցիալ-քաղաքական հայացքների ամբողջական կուռ սիստեմ է։ Այդ ուսմունքի համաձույլ միասնությունն իր առավել վառ ու խոր արտահայտությունն է գտնում նպատակի ընդհանրության ու նրա բոլոր բաղադրամասերի՝ դիալեկտիկական և պատմական մատերիալիզմի փիլիսոփայության, մարքսիստական քաղաքատնտեսության և գիտական կոմունիզմի հիմնական սոցիալական միտումներում։ Դրանցից ամեն մեկը, ինչպես և ամբողջ մարքսիզմ-լենինիզմը, այլ բան չէ, քան բանվոր դասակարգի արմատական շահերի, նրա պայքարի նպատակների ու խնդիրների գիտական արտահայտությունը, կապիտալիզմի կործանման և կոմունիզմի հաղթանակի անխուսափելիության տեսական հիմնավորումը։ Կոմունիզմը որպես տեսություն, նկատել է Ֆ. Էնգելսը, պրոլետարիատի դիրքորոշման թեորիական արտահայտությունն է, նրա՝ պրոլետարիատի ազատագրման եղանակների, պայքարի ձևերի ու մեթոդների գիտական ընդհանրացումը (տե՛ս К. Маркс и Ф. Энгельс. Соч., т. 4, стр. 282)։

Քանի որ մարքսիզմ-լենինիզմի բոլոր երեք բաղադրամասերը կոմունիզմի փիլիսոփայական, տնտեսական և սոցիալ-քաղաքական համակողմանի հիմնավորումն են, ուստի մարքսիզմ-լենինիզմը, ամբողջությամբ վերցրած, գիտական կոմունիզմն է՝ բառիս լայն իմաստով։ Դա այն գիտությունն է, որն ուսումնասիրում է կոմունիստական հասարակական ֆորմացիայի առաջացման, ձևավորման ու զարգացման փիլիսոփայական, տնտեսական և սոցիալ-քաղաքական օրինաչափությունները։ Դրա հետ մեկտեղ, մարքսիզմ-լենինիզմի յուրաքանչյուր բաղադրամաս, ունենալով հետազոտության իր, յուրահատուկ առարկան, հանդես է գալիս որպես ինքնուրույն գիտություն։ Այսպես, դիալեկտիկական և պատմական մատերիալիզմը, որն ուսումնասիրում է աշխարհի զարգացման առավել ընդհանուր օրենքները, կոմունիզմի փիլիսոփայական, ընդհանուր սոցիոլոգիական հիմնավորումն է, իսկ քաղաքատնտեսությունը, որն ուսումնասիրում է արտադրահարաբերությունների զարգացման օրինաչափությունները, կոմունիզմի տնտեսական հիմնավորումն է։

Գիտական կոմունիզմի՝ որպես մարքսիզմ-լենինիզմի երրորդ բաղադրամասի, առանձնահատկությունն այն է, որ վերջինս մարքսիզմ-լենինիզմի սոցիալ-քաղաքական տեսությունն է՝ կոչված ուսումնասիրելու սոցիալ-քաղաքական հարաբերություններն ու դրանց զարգացման օրինաչափությունները հասարակության կոմունիստական վերափոխման պրոցեսում։ Այդ իսկ պատճառով գիտական կոմունիզմի տեսադաշտում են այնպիսի պրոբլեմներ, ինչպես բանվոր դասակարգի պատմական միսիան, նրա դասակարգային պայքարի, սոցիալիստական հեղափոխության և պրոլետարիատի դիկտատուրայի իրականացման օրինաչափությունները, ուղիներն ու ձևերը, համաշխարհային հեղափոխական պրոցեսի զարգացումը, սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման սոցիալ-քաղաքական պրոբլեմների կոմպլեքսային հետազոտումը, ինչպես նաև սոցիալիստական հասարակարգի սոցիալ-դասակարգային կառուցվածքը և սոցիալական լրիվ միատարրության հասնելու ուղիները, ազգային, ընտանեկան-կենցաղային և այլ հարաբերությունների, սոցիալիզմի քաղաքական սիստեմի, հոգևոր մշակույթի, անհատի զարգացումը, աշխատավորների կոմունիստական դաստիարակությունը և այլն։

Յուրաքանչյուր գիտության տեղն ու դերը, դրա առանձնահատկությունը որոշվում են ամենից առաջ իրականության այն օրենքների յուրահատուկ բնույթով, որպիսիք այն ուսումնասիրում է։ Այս կապակցությամբ խոսելով գիտական կոմունիզմի մասին՝ առանձնացնենք հետևյալ հիմնական մոմենտները։ Նախ, ի տարբերություն պատմական մատերիալիզմի, որն ուսումնասիրում



է մարդկային պատմության բոլոր փուլերում գործող ընդհանուր սոցիոլոգիական օրենքները (օրինակ, հասարակական կեցության առաջնայնության և հասարակական գիտակցության երկրորդայնության օրենքը, վերնաշենքի նկատմամբ բազիսի որոշիչ դերի, արտադրահարաբերությունների և արտադրաուժերի զարգացման բնույթի ու մակարդակի համապատասխանության օրենքը), գիտական կոմունիզմի օրենքները գործում են միայն մեկ, կոմունիստական ֆորմացիայի նախապատրաստման, առաջացման ու զարգացման պրոցեսի պատմական շրջանակներում։

Այնուհետև, ի տարբերություն քաղաքատնտեսության, գիտական կոմունիզմն անմիջականորեն ուսումնասիրում է հասարակության կոմունիստական վերափոխման ոչ թե տնտեսական, այլ սոցիալ-քաղաքական օրենքները։ Ինչպես պատմական ողջ զարգացումը, կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու պրոցեսը նույնպես ուներ փոխկապված երկու կողմ. տնտեսական, որը պայմանավորված է արտադրաուժերի առաջընթացի ներգործության տակ արտադրահարաբերությունների արմատական փոփոխմամբ, և սոցիալ-քաղաքական, որը բնութագրվում է բանվոր դասակարգի գլխավորությամբ աշխատավոր զանգվածների՝ հանուն աշխարհի կոմունիստական վերափոխման մղած պայքարով։ Մարդկության՝ կապիտալիզմից կոմունիզմին անցնելու սոցիալ-քաղաքական էությունը արդի համաշխարհային հեղափոխական պրոցեսն է, որի օրինաչափություններն իսկ ուսումնասիրում է գիտական կոմունիզմի տեսությունը։

Սխալ կլիներ գիտական կոմունիզմի խնդիրը հանգեցնել հասարակության կոմունիստական վերափոխման պրոցեսի սոսկ սուբյեկտիվ կողմի ուսումնասիրմանը։ Այն, անկասկած, ուսումնասիրում է նաև այդ պրոցեսի զարգացման օբյեկտիվ պայմանները, նախադրյալներն ու օրինաչափությունները։ Բայց գիտական կոմունիզմը՝ որպես սոցիալ-քաղաքական տեսություն, կոմունիստական ֆորմացիայի առաջացման, ձևավորման ու զարգացման օբյեկտիվ, բնապատմական պրոցեսն ուսումնասիրում է դրա զարգացման սուբյեկտիվ գործոնի (այսինքն՝ բանվոր դասակարգի և բոլոր աշխատավորների) հեղափոխական պայքարի, մարքս-լենինյան կուսակցությունների և սոցիալիստական պետությունների գործունեության հետ անմիջական կապի մեջ և այդ առնչությամբ։

Եվ վերջապես. հարկ է նկատել, որ սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման սոցիալ-քաղաքական պրոբլեմները ուսումնասիրում են նաև կոնկրետ, մասնակի հասարակական գիտությունները (օրինակ, պետության և իրավունքի տեսությունը, ճյուղային իրավաբանական գիտությունները, բարոյագիտությունը, գեղագիտությունը, սոցիալական հոգեբանությունը և այլն)։ Բայց, ի տարբերություն դրանց, գիտական կոմունիզմն ուսումնասիրում է ոչ թե հասարակական կյանքի որևէ մեկ, համեմատաբար նեղ ոլորտի կոմունիստական վերափոխման պրոցեսին հատուկ օրենքները, այլ հասարակության, որպես ամբողջական սոցիալական օրգանիզմի, կոմունիստական վերափոխման պրոցեսի ընդհանուր արմատական սոցիալ-քաղաքական օրենքները։ Այսպիսին է գիտական կոմունիզմի օրենքների սոցիոլոգիական բնույթը։

ԳԻՏԱԿԱՆ ԿՈՄՈՒՆԻԶՄԻ ՕՐԵՆՔՆԵՐԸ միաժամանակ ընդհանուր են գործողության ոլորտով և սոցիալ-քաղաքական՝ իրենց բնույթով։ Դրանք արտացոլում են մարդկության՝ կապիտալիզմից կոմունիզմին անցնելու պատմական պրոցեսի ակտիվ, գործուն կողմի զարգացման օրինաչափություններն ու էական գծերը։ Գիտական կոմունիզմի այնպիսի կարևորագույն օրենքներ, ինչպիսիք են՝ պրոլետարիատի դասակարգային պայքարը, սոցիալիստական հեղափոխության իրականացումը կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու ժամանակ, գյուղացիության և աշխատավորների մյուս ոչ պրոլետարական զանգվածների հետ բանվոր դասակարգի դաշինքի ապահովումը՝ բանվոր դասակարգի առաջատար դերի պահպանմամբ, կոմունիստական կուսակցության ղեկավար դերի բարձրացումը սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման գործում և ուրիշ շատ օրենքներ, կոմունիստական հասարակարգի առաջացման, ձևավոր-

ման ու զարգացման ոչ թե փիլիսոփայական, տնտեսական, այլ իրենց էությամբ, բնույթով սոցիալ-քաղաքական օրինաչափությունների արտահայտությունն են: Միաժամանակ խոսքը վերաբերում է կոմունիստական հասարակարգի առաջացման և զարգացման օրինաչափություններին, քանի որ բանվոր դասակարգի գլխավորած ժողովրդական զանգվածների պայքարը, մարքս-լենինյան կուսակցությունների և սոցիալիստական պետությունների հեղափոխական գործունեությունը ընդգրկում են հասարակական կյանքի բոլոր ոլորտները: Հետևաբար, գիտական կոմունիզմն ուսումնասիրում է պրոլետարիատի ո՛չ միայն քաղաքական ու գաղափարական, այլև տնտեսական դասակարգային պայքարը, ինչպես և սոցիալիստական հեղափոխության իրականացումը ո՛չ միայն քաղաքականության, գաղափարախոսության և կուլտուրայի, այլև տնտեսական բնագավառներում: Սակայն չպետք է ենթադրել, թե գիտական կոմունիզմի օրենքները սոսկ սոցիալ-քաղաքական բնույթ ունեն: Սոցիալ-քաղաքական օրինաչափությունները, անշուշտ, առավել անմիջականորեն արտահայտվում են սոցիալ-քաղաքական հարաբերությունների, այսինքն՝ դասակարգերի, սոցիալական խմբերի, ազգերի, կուսակցությունների, պետությունների, սոցիալական սիստեմների ոլորտում: Բայց այդ հարաբերությունները շատ բարդ են իրենց էությամբ ու կառուցվածքով, քանի որ ընդգրկում են հասարակական կյանքի բոլոր՝ և՛ տնտեսական, և՛ քաղաքական, և՛ հոգևոր ոլորտները: Ուստի և գիտական կոմունիզմի կողմից ուսումնասիրվող հասարակության կոմունիստական վերափոխման սոցիալ-քաղաքական օրինաչափությունների գործողությունը դրսևորվում է հասարակական կյանքի բոլոր ոլորտներում:

Գիտական կոմունիզմն ուսումնասիրում է ոչ թե արտադրության բուն կոմունիստական եղանակը և դրա օրինաչափությունները, այլ արտադրության այդ եղանակի՝ որպես նոր հասարակարգի բաղադրամասի առաջացման ու զարգացման սոցիալ-քաղաքական ասպեկտը: Արտադրության հիմնական միջոցների ազգայնացման ու գյուղատնտեսության կոոպերացման ասպարեզում, կոմունիստական կուսակցությունների և սոցիալիստական պետությունների քաղաքականությունը բանվորական վերահսկողության և նոր տնտեսական քաղաքականության (նէպ-ի) իրականացումը այնպիսի պրոբլեմներ են, որ գիտական կոմունիզմն ուսումնասիրում է համապատասխան սոցիալ-քաղաքական հարաբերությունների վերլուծությամբ: Մեր կուսակցության X համագումարում տված զեկուցման մեջ Վ. Ի. Լենինը նշում էր, որ նէպ-ի հարցը «...ամենից առաջ ու ամենից ավելի քաղաքական հարց է, որովհետև այս հարցի էությունը բանվոր դասակարգի վերաբերմունքն է դեպի գյուղացիությունը» (Երկեր, հ. 32, էջ 262): Պրոբլեմի սոցիալ-քաղաքական այդ կողմն է հենց ուսումնասիրում գիտական կոմունիզմը, մինչդեռ քաղաքատնտեսությունը և ՍՄԿԿ պատմությունը նէպ-ի պրոբլեմներն ուսումնասիրում են բացահայտելու համար դրա տնտեսական հիմքերը, արտադրահարաբերությունները և դրա իրականացման կոնկրետ-պատմական պրակտիկան: Ելնելով ՍՄԿԿ XXV համագումարի որոշումներից՝ գիտական կոմունիզմի արդի կարևորագույն խնդիրներից է հանրային արտադրության արդյունավետության, աշխատանքի արտադրողականության բարձրացման, ժողովրդական տնտեսության կառավարման կատարելագործման, գիտատեխնիկական հեղափոխության նվաճումների և տնտեսության սոցիալիստական սիստեմի առավելությունների զուգակցման սոցիալ-քաղաքական պրոբլեմների ուսումնասիրությունը: «Հասարակական գիտությունների հետագա զարգացման և կոմունիստական շինարարության մեջ նրանց դերի բարձրացման միջոցառումների մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ (1967 թվական) նշվում է, որ գիտական կոմունիզմի խնդիրն է, մասնավորապես, «սոցիալիզմի զարգացման և նրա՝ կոմունիզմի վերաճելու սոցիալ-քաղաքական պրոբլեմների կոմպլեքսային ուսումնասիրությունը, գիտատեխնիկական հեղափոխության սոցիալական արդյունքների բացահայտումը»:

ԳԻՏԱԿԱՆ ԿՈՄՈՒՆԻԶՄԻ ՏԵՍՈՒԹՅՈՒՆԸ չի փոխարինում հատուկ սոցիալ-



քաղաքական գիտություններին, օրինակ՝ իրավաբանական գիտություններին, սոցիալիստական պետության և իրավունքի տեսությանը և այլն, այլ դրանց մեթոդոլոգիական հիմքն է սոցիալիստական և կոմունիստական շինարարության ավելի մասնակի պրոբլեմների ու օրինաչափությունների ուսումնասիրության գործում: Այսպես, օրինակ, գիտական կոմունիզմի խնդիրը չէ սոցիալիստական պետության և իրավունքի առաջացման ու զարգացման յուրահատուկ օրինաչափությունների ուսումնասիրումը: Սակայն, բնութագրելով ողջ հասարակության կոմունիստական վերափոխման այնպիսի օրինաչափության ներգործունությունը, ինչպիսին է սոցիալիստական հեղափոխությունը, գիտական կոմունիզմը պատասխանում է հասարակական կյանքի բոլոր ոլորտների սոցիալիստական վերափոխման, այդ թվում և հասարակության քաղաքական կազմակերպման էության հարցին:

Դիալեկտիկական և պատմական մատերիալիզմի ընդհանուր փիլիսոփայական մեթոդի հիման վրա բացահայտելով կոմունիստական հասարակարգի՝ որպես սոցիալական ամբողջական օրգանիզմի առաջացման ու զարգացման յուրահատուկ օրինաչափությունները, գիտական կոմունիզմը դրանով իսկ կոնկրետացնում է այդ ընդհանուր մեթոդը տվյալ ֆորմացիայի պրոբլեմների ու օրինաչափությունների ուսումնասիրման նկատմամբ, սահմանում հատուկ գիտությունների կողմից հասարակական կյանքի առանձին ոլորտների կոմունիստական վերափոխման ուսումնասիրության հիմնական ուղղություններն ու ուղիները: Այսպիսով, լինելով հեղափոխական շարժման, սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման ընդհանուր տեսություն, գիտական կոմունիզմը, միաժամանակ, այդ պրոբլեմների ուսումնասիրման մեթոդ է հատուկ գիտությունների համար:

Կոմունիստական ֆորմացիան, դրա ձևավորման ու զարգացման պրոցեսը մարքսիզմ-լենինիզմի բոլոր բաղադրամասերի ուսումնասիրության ընդհանուր օբյեկտն են: Պատմական մատերիալիզմը, օրինակ, այդ պրոցեսն ուսումնասիրում է ընդհանուր սոցիոլոգիական օրենքների դրսևորման առումով: Այսպես, քննելով պատմական զարգացման շարժիչ ուժերը և հասարակական-տնտեսական ֆորմացիաների փոխարինման օրինաչափությունները, այն բացահայտում է կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու ժամանակ դասակարգային պայքարի և սոցիալական հեղափոխության ընդհանուր սոցիոլոգիական օրենքների դրսևորման կոնկրետ-պատմական ձևի յուրահատկությունը:

Ընդհանուր սոցիոլոգիական օրենքների իմացությունը հասարակական մեկ ֆորմացիան մեկ ուրիշով փոխարինվելու և տվյալ ֆորմացիայի զարգացման յուրահատուկ օրինաչափությունների ուսումնասիրման նկատմամբ ճիշտ մոտեցման անհրաժեշտ պայմանն է: Ուստի, պատմական մատերիալիզմը, ինչպես և մարքս-լենինյան փիլիսոփայությունը, գիտական կոմունիզմի տեսության մեթոդոլոգիական հիմքն է: Հասարակության սոցիալ-քաղաքական զարգացումը օրինաչափորեն պայմանավորված է նրա տնտեսական զարգացմամբ, հետևաբար կոմունիզմին անցնելու սոցիալ-քաղաքական օրինաչափությունների գիտական իմացությունը խարսխվում է նաև մարքսիստական քաղաքատնտեսության վրա, որը նույնպես գիտական կոմունիզմի կարևորագույն տեսական հիմքերից է:

Ինչպես նշել է Էնգելսը, գիտական կոմունիզմի ստեղծումն իսկ հնարավոր է դարձել մարքսիզմի երկու մեծագույն հայտնագործությունների շնորհիվ միայն. առաջինը պատմության մատերիալիստական ըմբռնումն է, որը բացահայտել է բնապատմական պրոցեսի օբյեկտիվ տենդենցը, և մյուսը՝ հավելյալ արժեքի տեսությունը, որը բացահայտել է կապիտալիստական շահագործման տնտեսական հիմքերն ու գաղտնիքները (տե՛ս К. Маркс и Ф. Энгельс. Соч., т. 19, стр. 209): Հենց այդ էլ մարքսիզմի հիմնադիրներին հնարավորություն ընձեռեց կատարելու գիտական մի ուրիշ հայտնագործություն ևս՝ հիմնավորելու բանվոր դասակարգի՝ որպես կապիտալիզմի գերեզմանափորի և կոմունիզմ կերտողի համաշխարհային-պատմական միսիան: «Միայն Մարքսի փիլիսոփայական մատերիալիզմը,— գրել է Վ. Ի. Լենինը,— ցույց տվեց պրոլետարիատին ելքը հոգևոր ստրկությունից, որի մեջ մինչև օրս իրենց

գոյությունը քարշ էին տալիս բոլոր ճնշված դասակարգերը։ Միայն Մարքսի տնտեսական թեորիան պարզաբանեց պրոլետարիատի իսկական դրությունը կապիտալիզմի ընդհանուր համակարգում» (Երկեր, հ. 19, էջ 10)։

Հենվելով մարքսիստական փիլիսոփայության և քաղաքատնտեսության վրա, գիտական կոմունիզմը, որպես մարքսիզմ-լենինիզմի բաղադրամաս, դրանց տրամաբանական, հետևողական և օրինաչափ շարունակությունն է։ Մարքսիզմ-լենինիզմի սիստեմում փիլիսոփայական և տնտեսական պրոբլեմների մշակումը ինքնանպատակ չէ, այն պրոլետարիատի, բոլոր աշխատավորների ազատագրության, կապիտալի իշխանության տապալման ու կոմունիզմի կառուցման պայմանների և ուղիների գիտական հիմնավորման միջոցն է։ Գիտական կոմունիզմը սահմանում և գիտականորեն հիմնավորում է մարքս-լենինյան ուսմունքի գլխավոր հետևություններն ու կոմունիստական իդեալները, որոնք առնչվում են հեղափոխական պայքարի պրակտիկայի, կոմունիստական կուսակցությունների և սոցիալիստական պետությունների քաղաքականության հետ։ Առանց դրա՝ մարքսիզմի մյուս բաղադրամասերը, ինչպես և ողջ ուսմունքը, կլինեին անավարտ և զգալի չափով զուրկ քաղաքական նպատակասլացությունից ու պրակտիկ ներգործունությունից։ Անդրադառնալով դասակարգային պայքարի մարքսիստական ըմբռնմանը՝ Լենինը գրել է. «...առանց մատերիալիզմի այդ կողմի՝ Մարքսն իրավամբ այն համարում էր կիսատ-պռատ, միակողմանի, մեռյալ» (Երկեր, հ. 21, էջ 81)։ Հեղափոխական պայքարի, սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման ռեալ պրակտիկայով ստուգված գիտական կոմունիզմի հետևություններն ու դրույթներն իրենց հերթին նպաստում են մարքսիզմ-լենինիզմի փիլիսոփայության և քաղաքատնտեսության հետագա զարգացմանը։

Որպես մարքսիզմ-լենինիզմի սոցիալ-քաղաքական տեսություն, գիտական կոմունիզմը սերտորեն կապված է ՍՄԿԿ-ի և ամբողջ միջազգային կոմունիստական շարժման պատմության հետ։ Այս գիտություններն ուսումնասիրում են շահագործողական հասարակարգի հեղափոխական վերափոխման համար մղված պայքարի միևնույն պատմական ժամանակաշրջանները։ Կոմունիզմի հաղթանակի համար մղվող պայքարում, մեծ ուշադրություն նվիրելով սուբյեկտիվ գործոնի դերին, գիտական կոմունիզմը տեսականորեն հիմնավորում է մարքս-լենինյան կուսակցությունների վճռական դերը։ ՍՄԿԿ-ն և մարքս-լենինյան մյուս կուսակցությունները, իրենց քաղաքականությունը մշակելիս, գործունեության բոլոր փուլերում ղեկավարվում են գիտական կոմունիզմով՝ ստրատեգիայի ու տակտիկայի անմիջական գիտական հիմքով։ Լինելով համաշխարհային հեղափոխական շարժման պատմական փորձի ընդհանրացումը՝ գիտական կոմունիզմն ուղղակի և անմիջականորեն ղեկավարվում է ՍՄԿԿ-ի և միջազգային կոմունիստական շարժման պատմության օրինաչափությունների գիտական ըմբռնմամբ. պատմություն, որը մարքսիզմ-լենինիզմն է գործողության, նրա պրակտիկ իրականացման ու ստեղծագործական զարգացման մեջ։ «Կոմունիզմը,— գրել է Էնգելսը,— դոկտրինա չէ, այլ շարժում է։ Այն ելնում է ոչ թե սկզբունքներից, այլ փաստերից։ Կոմունիստներն իրենց համար որպես նախադրյալ ունեն ոչ թե այս կամ այն փիլիսոփայությունը, այլ նախորդ պատմության ողջ ընթացքը և, հատկապես, նրա ժամանակակից փաստական արդյունքները քաղաքակրթված երկրներում» (К. Маркс и Ф. Энгельс. Соч., т. 4, стр. 281)։

Գիտական կոմունիզմի տեսության ստեղծագործական զարգացման համար ՍՄԿԿ պատմության առանձնահատուկ նշանակությունն այն է, որ մեր կուսակցությունն առաջինն ընտրեց սոցիալիստական հեղափոխության իրականացման, սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման ուղին։ Նրա պատմական փորձի մեջ առաջին անգամ դրսևորվեցին սոցիալիստական հեղափոխության և սոցիալիստական շինարարության ընդհանուր օրինաչափությունները, իսկ այժմ՝ սոցիալիզմը կոմունիզմի վերաճելու հիմնական օրինաչափությունները։

Շեշտելով գիտական կոմունիզմի կապը ՍՄԿԿ-ի և ամբողջ կոմունիստա-



կան շարժման պատմության հետ, չի կարելի սակայն մոռանալ դրանց էական տարբերությունները։ Գիտական կոմունիզմի մեջ գլխավորը հեղափոխական պայքարի փորձի ոչ թե պատմական, այլ տեսական ընդհանրացումն է, ոչ թե իրադարձությունների կոնկրետ-պատմական ընթացքի արտացոլումը, այլ հասարակության կոմունիստական վերափոխման ընդհանուր պարտադիր օրինաչափությունների և տարբեր պայմաններում դրանց դրսևորման յուրատեսակության բացահայտումը։ Ընդսմին, գիտական կոմունիզմը ո՛չ միայն ուսումնասիրում է անցյալը, այլև ժամանակակից հասարակական զարգացման օրինաչափությունների ու տենդենցների վերլուծությամբ կանխատեսում դեպի կոմունիզմ հասարակության առաջընթացի ուղիները։

ԳԻՏԱԿԱՆ ԿՈՄՈՒՆԻԶՄՆ իր էությամբ ինտերնացիոնալ գիտություն է։ Դրա վկայությունն են՝ իմացության բուն օբյեկտի՝ համաշխարհային հեղափոխական պրոցեսի, սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման ինտերնացիոնալ բնույթը, ինչպես նաև բանվոր դասակարգի ինտերնացիոնալ էությունը, որի շահերն արտահայտում և պաշտպանում է գիտական կոմունիզմը։ Բանվոր դասակարգը պատմության մեջ միակ հետևողականորեն հեղափոխական և ինտերնացիոնալիստական դասակարգն է։ Պրոլետարիատը այն «դասակարգն է, որին բոլոր ազգերի մեջ էլ հատուկ են միևնույն շահերը և որոնց մոտ արդեն ոչնչացված է ազգային մեկուսացածությունը» (К. Маркс и Ф. Энгельс. Соч., т. 3, стр. 61)։ Ամենաբարձր հեղափոխականությունն ու խոր ինտերնացիոնալիզմը օրգանապես մարմնավորվում և միաձուլվում են բանվոր դասակարգի մեջ, որի պատմական առաքելությունն է՝ ոչնչացնել սոցիալական ու ազգային ճնշման բոլոր ձևերը։ Բանվոր դասակարգի ինտերնացիոնալիզմն առավել վառ դրսևորվում է նրա ավանգարդի՝ մարքս-լենինյան կուսակցությունների գործունեության մեջ, որոնք ինտերնացիոնալ են իրենց կազմով ու կառուցվածքով, գաղափարախոսությամբ ու քաղաքականությամբ։ Դեռևս Կոմունիստական կուսակցության մանիֆեստում Կ. Մարքսը և Ֆ. Էնգելսը գրել են, թե կոմունիստները մյուս կուսակցությունների ներկայացուցիչներից տարբերվում են միայն նրանով, որ տարբեր ազգերի պրոլետարների պայքարի մեջ նրանք առանձնացնում և պաշտպանում են ողջ պրոլետարիատի ընդհանուր, ազգությունից կախում չունեցող շահերը (տե՛ս նույն տեղը, էջ 437)։

Ժամանակակից հեղափոխական շարժման զարգացմանը հատուկ է երկու տենդենց. մի կողմից՝ հեղափոխական շարժման ինտերնացիոնալացման ուժեղացումը, մյուս կողմից՝ մարքս-լենինյան կուսակցությունների հեղափոխական պայքարի կոնկրետ պայմանների բազմազանության ընդլայնումը։ Կոմունիստական կուսակցությունների գործունեության մեջ պայքարի կոնկրետ ձևերի ու մեթոդների, տակտիկական եղանակների բազմազանությունը ո՛չ միայն չի նսեմացնում, այլ առավել մեծ ուժով է դրսևորում գիտական կոմունիզմի տեսության՝ որպես ինտերնացիոնալ ուսմունքի դերն ու նշանակությունը։ Պատմական փորձը ցույց է տալիս, որ գիտական կոմունիզմի տեսությունը տարբեր ազգային կամ ռեգիոնալ «տարբերակների» արհեստականորեն մասնատելու փորձերը միշտ էլ հանգեցրել են այդ ուսմունքի հիմնական սկզբունքների նենգափոխմանը և բանվոր դասակարգի գործի դավաճանությանը։

Պատահական չէ, որ ժամանակակից հակակոմունիզմի գաղափարախոսներն ու քաղաքագետներն իրենց հույսը դնում են նացիոնալիզմի վրա։ Վ. Ի. Լենինը դեռևս սովետական իշխանության առաջին տարիներին կանխատեսել էր, որ վճռական ու անհաշտ պայքարը նացիոնալիզմի դեմ, «...ամենից ավելի արմատացած մանրբուրժուական ազգային նախապաշարմունքների դեմ առավել ևս դրվում է առաջին պլանի վրա, որքան ավելի հրատապ է դառնում պրոլետարիատի դիկտատուրան ազգայինից (այսինքն՝ մի երկրում գոյություն ունեցող և համաշխարհային քաղաքականությունը որոշելու անընդունակ դիկտատուրայից) միջազգայինի (այսինքն՝ առնվազն մի քանի առաջավոր երկրների պրոլետարիատի դիկտատուրա, որն ընդունակ լինի վճռական ազդեցություն ունենալու ամբողջ համաշխարհային քաղաքականության վրա) վերածելու խնդիրը» (Երկեր, հ. 31, էջ 169—170)։

գացման փոխադարձ կապն ու փոխպայմանավորվածությունը: Կոմունիստական շինարարությունը չի կարող հաջող ընթանալ, եթե հասարակական կյանքի այս կամ այն ոլորտը լրջորեն ետ է մնում: Այդ պատճառով իսկ արդի փուլում ՍՄԿԿ քաղաքականության բնորոշ կողմն է ապահովել կոմպլեքսային, սիստեմային մոտեցումը կոմունիստական շինարարության պրոբլեմների լուծմանը: ՍՄԿԿ-ն իր քաղաքականությունը մշակում է՝ հաշվի առնելով երկրի զարգացման կոնկրետ փուլը, ներքին և միջազգային իրադրությունը: Հասարակական զարգացման յուրաքանչյուր նոր փուլ կուսակցության քաղաքականության առջև դնում է նոր խնդիրներ, նոր հարցեր, որոնք պահանջում են քաղաքական նոր լուծումներ: Կոմունիստական կուսակցության քաղաքականության կոնկրետ-պատմական, ստեղծագործական բնույթը նրա գիտականության և ռեալիզմի վառ դրսևորումներից է:

ՍՄԿԿ արտաքին քաղաքական գործունեությունն անբաժան է նրա ներքին քաղաքականությունից, սերտորեն կապված է նրա հետ: Ինչպես երկրի ներսում, այնպես էլ միջազգային ասպարեզում, ՍՄԿԿ քաղաքականությունը մարմնավորում և պաշտպանում է միասնական դասակարգային շահեր ու իդեալներ՝ բանվոր դասակարգի, ամբողջ սովետական ժողովրդի սոցիալիստական շահերն ու կոմունիստական իդեալները: ՍՄԿԿ արտաքին քաղաքական գործունեության՝ նման դասակարգային, սոցիալիստական հիմքը նրա արտաքին քաղաքականության գիտականության կարևորագույն աղբյուրն է: Բանվոր դասակարգի, սոցիալիզմի դիրքերից միայն կարելի է այսօր ճիշտ հասկանալ և պրակտիկ գործունեության մեջ հաշվի առնել աշխարհի իրադրության բարդ, հակասական, դինամիկ զարգացման օբյեկտիվ տենդենցներն ու օրինաչափությունները:

Արտաքին քաղաքականության հարցերի մշակման նկատմամբ ՍՄԿԿ խոր գիտական մոտեցման նշանակությունն առավել մեծանում է շնորհիվ այն բանի, որ այժմ արտակարգ լայն է ու բազմակերպ մեր կուսակցության գործունեությունը միջազգային ասպարեզում: Թերևս չկա աշխարհի մի անկյուն, ՍՄԿԿ XXV համագումարում ասաց Լ. Ի. Բրեժնևը, որի գործերի վիճակը հարկ չլինի այս կամ այն կերպ հաշվի առնել՝ մեր արտաքին քաղաքականությունը մշակելիս:

ՍՍՀՄ արտաքին քաղաքականությունը հենվում է վերջին ժամանակներս աշխարհում ստեղծված պատմական նոր իրավիճակի գիտական վերլուծության վրա: Այդ իրավիճակին առավել բնութագրական է այն, որ համաշխարհային սոցիալիզմը դարձել է արդի հասարակական զարգացման վճռական գործոն, իսկ սոցիալիզմի երկրների ազդեցությունը համաշխարհային իրադարձությունների ընթացքի վրա ավելի է ուժեղանում ու խորանում: Ելնելով համաշխարհային ասպարեզում ստեղծված ուժերի նոր հարաբերակցությունից՝ ՍՄԿԿ XXIV համագումարը առաջադրեց խաղաղության ծրագիրը:

Կյանքը լրիվ հաստատեց, որ խաղաղության ծրագիրը հրատապ է ու ռեալիստական: Միջազգային մթնոլորտի բարելավումը համոզիչ վկայում է, որ կայուն խաղաղության նվաճումը ոչ թե բարի ցանկություն է, այլ միանգամայն ռեալ խնդիր: Իմպերիալիզմի էությունը չի փոխվել: Բայց իմպերիալիզմի ագրեսիվ գործողությունների հնարավորություններն այժմ զգալիորեն սահմանափակվել են:

ՍՄԿԿ արտաքին քաղաքական գործունեության շնորհիվ ՍՍՀՄ-ի միջազգային դրությունն այժմ կայուն է, ինչպես երբեք: Արդեն չորրորդ տասնամյակն է, ինչ մեր երկիրն ապրում է խաղաղ պայմաններում: Ամրացել են սոցիալիզմի դիրքերը, ամրապնդվել է սոցիալիզմի երկրների համախմբվածությունը: Ընդլայնվել ու ամրակայվել են ՍՍՀՄ-ի կապերը զարգացող երկրների հետ, հարստացել է դրանց քաղաքական բովանդակությունը: Միջազգային լարվածության թուլացումը դարձել է առաջատար տենդենց: ՍՄԿԿ արտաքին քաղաքական գործունեության այս ակնբախ արդյունքները վկայում են, որ այդ գործունեությունը խարսխված է ժամանակակից հասարակական առաջընթացի օրինաչափությունների խոր իմացության վրա:

---

# ՆԵՈԳԱՂՈՒԹԱՏԻՐՈՒԹՅԱՆ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅԱՆ ԵՎ ԳԱՂԱՓԱՐԱԽՈՍՈՒԹՅԱՆ ՅՈՒՐԱՀԱՏԿՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

**Մ. Հ. ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ**
Պատմական գիտությունների թեկնածու

ՍՄԿԿ XXV ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ մեծ ուշադրություն նվիրեց գաղութային ճնշումից ազատագրված երկրների հասարակական զարգացման պրոբլեմներին: Նշվեց, որ զարգացող երկրներում ուժեղանում է սոցիալ-դասակարգային և քաղաքական պայքարը հասարակական կողմնորոշման, հետագա զարգացման ձևերի ու մեթոդների պրոբլեմների շուրջ: Այդ պայքարի ընթացքում երիտասարդ պետությունների մի մեծ խումբ ընտրեց սոցիալիստական կողմնորոշումը և հաջողությամբ ընթանում է այդ ուղիով: Դրանք են՝ Բիրման, Սիրիան, Իրաքը, Ալժիրը, Գվինեան, Տանզանիան, Սոմալին, Կոնգոյի Ժողովրդական Հանրապետությունը, Բենինը և այլն: Երկրների մյուս խումբը, ընտրելով զարգացման կապիտալիստական ուղին, ազգային շահերը ենթարկեց իմպերիալիզմի և իմպերիալիստական մոնոպոլիաների շահերին:

Վերլուծելով ազգային-ազատագրական պայքարի արդի փուլի բնույթն ու առանձնահատկությունները, Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ XXV համագումարում ասաց, որ պրոգրեսիվ որոշ վարչակարգեր ու քաղաքական կազմակերպություններ, որոնք հռչակել են սոցիալիստական նպատակներ, ենթարկվել են ներքին ու արտաքին ռեակցիայի ուժեղ ճնշմանը (տե՛ս Լ. Ի. Բրեժնև, ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետվությունը և կուսակցության հերթական խնդիրները ներքին ու արտաքին քաղաքականության բնագավառում, էջ 18): Արտաքին իմպերիալիստական ռեակցիան հանդես է գալիս նեոգաղութատիրության՝ ժողովուրդների իմպերիալիստական ստրկացման և շահագործման նոր ձևերի կերպարանքով: Նեոգաղութատիրությունը հասարակական երկու սիստեմների հակամարտության պայմաններում իմպերիալիզմի քաղաքականությունն է և ստրատեգիան, որոնք կոչված են ազատագրված երկրներին պարտադրելու զարգացման կապիտալիստական ուղին՝ համաշխարհային կապիտալիզմի սիստեմում նրանց կախյալ ու կեղեքվող վիճակում պահելով: Նեոգաղութատիրությունը, դրա հետ միասին, ժողովուրդների անուղղակի կախման ու շահագործման սիստեմն է, երբ պահպանվում է տնտեսական, քաղաքական, ռազմական, գաղափարական ճնշման ու վերահսկողության միջոցներով:

Հարկավոր է նշել, որ նեոգաղութատիրության պրոբլեմն արդեն իր պատմական ծագման մեջ գաղափարական սուր պայքարի առարկա է դարձել համաշխարհային ասպարեզում: Իմպերիալիզմի գաղափարախոսները, որոնք կենսականորեն շահագրգռված են այն բանում, որ խորապես քողարկեն ազգային-ազատագրական շարժման գոտիներում իմպերիալիզմի քաղաքականու-

գային պետություններից շատերին խճճել ռազմա-քաղաքական, դիվանագիտական, ֆինանսական և այլ կարգի վերահսկողության ցանցերի մեջ, շատ երկրներում ստեղծել իմպերիալիզմից կախյալ կառավարություններ, մի շարք երկրներում հաստատել զինվորական-դիկտատորական ռեակցիոն ու վաճառված վարչակարգեր: Շատ երկրների հետ կնքվեցին անիրավահավասար ստորացուցիչ պայմանագրեր: Օրինակ, Անգլիան իր բազմաթիվ գաղութներին պարտադրեց անկախություն տալու այնպիսի նախնական պայման, ինչպես համաձայնությունների կնքումն է ռազմական և արտաքին քաղաքական համագործակցության վերաբերյալ: Այդ բանը վերաբերեց Կիպրոսին, Մալայային, Հորդանանին, Քենիային, Տանգանիկային, Գանային, Նիգերիային և մի քանի այլ գաղութների: Դրա հետևանքով անգլիական սպաներն ու զինվորական կայազորները մնացին այդ երկրներում: Բավական է ասել, որ 1966 թվականին Մեծ Բրիտանիայի սահմաններից դուրս գտնվող 170 հազար անգլիական զինվորներից ու սպաներից ավելի քան երկու երրորդը եղել է աֆրիկյան ու ասիական երկրների տերիտորիայում (տե՛ս К. Н. Брутенц. Новая форма порабощения народов. М., Политиздат, 1969, стр. 42): Նման համաձայնագրեր Ֆրանսիան կնքեց Նիգերի, Չադի, Մավրիտանիայի, Գաբոնի, Սենեգալի, Կամերունի և այլ երկրների հետ: Ֆիլիպինների անկախության հռչակման կապակցությամբ ԱՄՆ-ը իրեն իրավունք վերապահեց 99 տարի շարունակ օգտագործել ռազմական բազաների համար հատկացված 23 շրջաններ: Օգտագործելով հակակոմունիզմը և վախեցնելով «սովետական սպառնալիքով», ստեղծվեցին ԱՊԿ, ՍԵԱՏՕ, ՍԵՆՏՕ ռազմական բլոկները, որոնց մեջ ներգրավվեցին ազատագրված երկրներից շատերը:

Երկրորդ, կորցնելով անմիջական քաղաքական ու տնտեսական իշխանությունը նախկին գաղութների ու կիսագաղութների ժողովուրդների նկատմամբ, իմպերիալիզմն այնուհանդերձ այդ երկրներում պահպանեց տնտեսական կարևոր դիրքեր ձեռնարկությունների, բանկերի, տրանսպորտի մոնոպոլիստական սեփականության ձևով և այլն: Քաղաքականապես դառնալով ինքնուրույն, այդ երկրները մնում էին հետամնաց՝ տնտեսական, սոցիալական և կուլտուր-տեխնիկական տեսակետներից, և կախված՝ բարձր զարգացած իմպերիալիստական երկրներից: Դրանք գաղութային անցյալից ժառանգություն էին ստացել տնտեսության միակողմանի, միակուլտուրային մասնագիտացում: Օրինակ, Բոլիվիայում արտահանության 73 տոկոսը կազմում է անագը, Վենեսուելայում 93,5-ը՝ նավթը, Բրազիլիայում 43-ը՝ սուրճը, Լիբերիայում 86-ը՝ կաուչուկը և երկաթահանքը, Գանայում 60-ը՝ կակաոն, Գամբիայում ավելի քան 90 տոկոսը՝ արախիսը և այլն: Աշխատանքի համաշխարհային կապիտալիստական բաժանման սիստեմում ազատագրված երկրների էկոնոմիկայի կախումը բնորոշվում էր նաև այն բանով, որ օտարերկրյա մոնոպոլիաների ձեռքում էր գտնվում նավթի, երկաթահանքի, քրոմի, կապարի, նիկելի, պղնձի, ուրանի և այլ հանքանյութերի արդյունահանության առյուծի բաժինը: Բավական է ասել, որ այնպիսի մի երկրում, ինչպիսին Վենեսուելան է, օտարերկրյա մոնոպոլիաները դեռևս 60-ական թվականների կեսերին վերահսկում էին լեռնահանքային արդյունաբերության 80 տոկոսին, նավթի արդյունաբերության՝ 70, շինարարական արդյունաբերության 70 տոկոսին և այլն (տե՛ս նույն տեղը, էջ 12—13):

Ակնհայտ է, որ տնտեսական ընդհանուր կախումը իմպերիալիզմից, սոցիալ-տնտեսական հարաբերությունների ծայրահեղ հետամնացությունը, գիտատեխնիկական և կուլտուրական հետամնացությունը, անգրագիտությունը, կախումը ֆինանսական և օտարերկրյա այլ օգնությունից, որոշեցին ազատագրված երկրների դրության թուլությունն ու խոցելիությունը միջազգային ասպարեզում: Դա իմպերիալիզմին հնարավորություն էր տալիս քաղաքական ճնշում գործադրելու այդ երկրների կառավարությունների, նրանց քաղաքականության վրա: Այսպես ձևավորվեց նեոգաղութատիրական հարաբերությունների սիստեմը:

ՆԵՈԳԱՂՈՒԹԱՏԻՐՈՒԹՅԱՆ ԱՌԱՋԻՆ առանձնահատկությունն այն է, որ նրա համար բնորոշ են էքսպանսիայի ու վերահսկողության անուղղակի ձևերն



ու մեթոդները՝ ի տարբերություն հին գաղութատիրության տիրապետության անմիջական ձևերի: Սրա հետ մեկտեղ հենց սա է նեոգաղութատիրության հսկայական վտանգը: Դրա ձևերը, էքսպանսիայի միջոցներն ու լծակները խորապես քողարկված են, կատարելագործված. առանձնահատուկ կեղծիքով է աչքի ընկնում դրա գաղափարախոսությունը: Դրա միջոցների շարքում կարևոր տեղ է գրավում, այսպես կոչված, իմպերիալիստական «օգնությունը» նախկին գաղութներին և կիսագաղութներին:

Այդ «օգնությունը» սկզբունքային նոր երևույթ է գաղութային հարաբերություններում. այն առաջին անգամ ծնունդ է առել ԱՄՆ-ում՝ «սառը պատերազմի» հետ միաժամանակ՝ իբրև ամերիկյան իմպերիալիզմի արտաքին քաղաքականության կարևոր գործիք: 50-ական թվականների վերջերին դրանով զինվեցին նաև մյուս իմպերիալիստական տերությունները: «Օգնությունը» ցույց է տրվում պետական գծով և կատարում է երկակի ֆունկցիա. նախ, այն խրախուսման և պատժի միջոց է, որը միտում է խանգարելու ազատագրված երկրների կառավարություններին՝ ազգային շահերին համապատասխանող զարգացման ուղի ընտրելիս: Քաղաքական շարժառիթներով են որոշվում «օգնության» չափը, ուղղությունը և անգամ դրա բաղադրակազմը: Պայքարը սոցիալիստական կողմնորոշման դեմ, մասնավոր ձեռնարկատիրության, կապիտալիստական ապրելակերպի պրոպագանդան և այլն՝ տնտեսական ու գիտատեխնիկական «օգնության» գլխավոր խնդիրներն են: Երկրորդ, «օգնությունը» կոչված է պայմաններ ստեղծելու մասնավոր մոնոպոլիաների տնտեսական էքսպանսիայի, բնական ռեսուրսների շահագործման համար, որում առանձնապես շահագրգռված են նեոգաղութատերերը: Օրինակ, նեոգաղութատիրության ձևավորման ժամանակաշրջանում ԱՄՆ-ի էկոնոմիկան անագի, արդյունաբերական ալմաստների և բնական կաուչուկի ներմուծումից կախված էր 100 տոկոսով, պլատինի ներմուծումից՝ 99, մարգանեցի ներմուծումից՝ 92, նիկելի ներմուծումից՝ 90, բոքսիտների ներմուծումից՝ 84 տոկոսով (տե՛ս В. Ф. Ли. Стратегия и политика неоколониализма США. М., «Наука», 1971, стр. 16): Զարմանալի չէ, որ «օգնության» հիմնական մասսան բաժին է ընկնում ԱՄՆ-ին. 60-ական թվականներին այն կազմել է կեսից ավելին, իսկ 70-ական թվականներին՝ մոտ 40 տոկոսը: Ասիայի, Աֆրիկայի, Լատինական Ամերիկայի երկրներին ԱՄՆ-ի ցույց տված «օգնության» տնտեսական մասը կազմել է 1962 թվականին 2.612 մլրդ դոլար, 1970 թ.՝ 1.877 մլրդ, 70-ական թվականներին, միջին հաշվով, մոտ 2 մլրդ դոլար: Եթե 1955 թ. «օգնության» տնտեսական մասը կազմում էր ԱՄՆ-ի ամբողջ «օգնության» 41,6 տոկոսը, ապա 1970 թ. այն կազմեց 80,6 տոկոսը (Statistical Abstract of the United States. New-York, 1974, p. 775):

Հարկավոր է շեշտել, որ իմպերիալիստական «օգնությունը» գործնականում դառնում է ո՛չ միայն ճնշման, շահագործման, այլև տևական ստրկացման գործիք: Այդ «օգնության» հետևանքով վիթխարի կերպով մեծացավ զարգացող երկրների պետական պարտքը իմպերիալիստական «դոնորներին». 1955 թվականին այն կազմում էր 9 մլրդ, իսկ 1970 թվականին՝ 50 մլրդ դոլար: Մինչև 1973 թվականն այն կազմեց արդեն 80 մլրդ դոլար (տե՛ս «Мировая экономика и международные отношения», № 11, 1973, стр. 43): Պարտքի ամենամյա վճարները այժմ կազմում են 8 մլրդ դոլար, այսինքն՝ բուն ամենամյա օգնության ծավալից ավելի շատ (նույն տեղը): Սա իսկական արյունառություն է:

Նեոգաղութատիրության մյուս առանձնահատկությունը դրա ձևերի կոլեկտիվությունն է, այն, որ իմպերիալիզմը ձգտում է միավորել բարձր զարգացած տերությունների ջանքերը՝ ժողովուրդների շահագործման նոր ձևերը պահպանելու համար: Նեոգաղութատերերը, համաշխարհային ասպարեզում ուժերի հարաբերակցությունը սոցիալիզմի օգտին փոխվելու պայմաններում, ազգային-ազատագրական շարժման և համաշխարհային հեղափոխական պրոցեսի դեմ մղած իրենց պայքարում, ստեղծում են միջպետական տնտեսական ու քաղաքական միավորումներ՝ «ընդհանուր շուկա», «վերականգնման ու զար-

գացման միջազգային բանկ», «միջազգային վալյուտային ֆոնդ» և այլն։ Այս միջիմպերիալիստական սիստեմում գլխավոր դերը կատարում է ԱՄՆ-ը, որը ստանձնել է միջազգային ժանդարմի ու շահագործողի դերը։ 70-ական թվականներին միջիմպերիալիստական հակասությունների սրման կապակցությամբ նեոգաղութատիրության սիստեմում իրենց դիրքերն զգալիորեն ուժեղացրին Արևմտյան Եվրոպայի երկրները, Ճապոնիան։

Նեոգաղութատիրության բացառիկ կարևոր առանձնահատկությունը նրա գլխավոր ստրատեգիական գիծն է՝ նախկին գաղութներին ու կիսագաղութներին զարգացման կապիտալիստական ուղու պարտադրումը։ Այդ ուղու վրա միայն հնարավոր է պահպանել ստրկացուցիչ, շահագործողական հարաբերությունների ամբողջ սիստեմը։ Նորն այդ ստրատեգիայում այն է, որ ազատագրված երկրները ագրարային կցորդներից, ինչպիսին դրանք եղել են գաղութային ժամանակաշրջանում, դարձնեն բարձր զարգացած կապիտալիստական երկրների յուրատեսակ «ինդուստրիալ-հումքային» կցորդներ, համաշխարհային կապիտալիստական արտադրության «մթերման արտադրամասեր»։ Կապիտալիստական չափավոր «մոդեռնացումը», ինդուստրացումը, ազգային խոշոր առևտրաարդյունաբերական և բյուրոկրատական բուրժուազիայի դիրքերի ուժեղացումը, չափավոր բուրժուական ռեֆորմների անցկացումը և այլն— ահա սրանք են ազատագրված երկրների զարգացման նեոգաղութատիրական պլանների հիմքերը։ Խոսելով նեոգաղութատիրության շահագործողական բնույթի մասին, չի կարելի մոռանալ դրա ռեակցիոն, հակահեղափոխական էությունը։ Նեոգաղութատիրության մեջ գլխավորը համաշխարհային կապիտալիզմի՝ որպես հասարակական ֆորմացիայի դիրքերի պահպանումն է, նոր կորուստներից ու ցնցումներից նրան հեռու պահելու ձգտումը։ Պայքարը սոցիալիզմի գաղափարախոսության և քաղաքականության դեմ, Ասիայի, Աֆրիկայի և Լատինական Ամերիկայի երկրների ժողովրդական զանգվածների վրա նրա ունեցած բազմակողմանի ազդեցության դեմ նեոգաղութատիրությունը դիտում է որպես առաջնակարգ խնդիր։ Նրա բնական դաշնակիցներն են հակակոմունիզմի դրոշի տակ միավորված այդ երկրների բոլոր ռեակցիոն սոցիալ-դասակարգային ուժերը։

ԱԶԳԱՅԻՆ-ԱԶԱՏԱԳՐԱԿԱՆ ՊԱՅՔԱՐԸ 60—70-ական թվականներին խոշոր հաղթանակներ տարավ նեոգաղութատիրության նկատմամբ։ Զգալիորեն ամրապնդվեց պրոգրեսիվ վարչակարգերի և հակաիմպերիալիստական ուժերի ճակատը։ Զարգացման ոչ կապիտալիստական ուղին ընտրած պետությունների խմբին միացան պրոգրեսիվ նոր վարչակարգեր՝ մասնավորապես վերջին գաղութային կայսրության խորտակման հետևանքով։ Պորտուգալական նախկին գաղութներ Անգոլան, Մոզամբիկը, Գվինեա-Բիսաուն և Կանաչ հրվանդանի կղզիները կանգնեցին զարգացման հեղափոխական առաջադիմական ուղու վրա։ Նրանք սոցիալիստական օրիենտացիայի մյուս երկրների հետ միասին անձնազոհ պայքար են մղում հասարակական կյանքի հեղափոխական խոր վերափոխումների համար։ Բոլոր ազատագրված երկրների համար էլ հակաիմպերիալիստական պայքարի գլխավոր խնդիրը տնտեսական ազատագրությունն ու տնտեսական ինքնուրույնություն նվաճելն է։ Դա, Վ. Ի. Լենինի բնորոշմամբ, ամենակարևոր և ամենաբարդ խնդիրն է փաստական ազգային ազատագրության գործում։ Նեոգաղութատիրական քաղաքականությունն ու շահագործումն էին այն գլխավոր պատճառը, որ, չնայած տնտեսական հաջողություններին, ազատագրված երկրներին չհաջողվեց 60-ական և 70-ական թվականների սկզբին ամբողջապես վերացնել հետամնացությունն ու կախումը իմպերիալիզմից։

Դա հատկապես արտահայտվում է այն բանում, որ եթե բնակչության մեկ շնչին ընկնող համախառն արտադրության մակարդակում իմպերիալիստական երկրների և Ասիայի, Աֆրիկայի, Լատինական Ամերիկայի երկրների միջև խզումը 1950 թ. եղել է տասնապատիկ, ապա 60-ական թվականների վերջին այն դարձավ քսանապատիկ։ Այսօր Ասիայի և Աֆրիկայի երկրները բնակչության մեկ շնչին ընկնող արտադրության մակարդակով 30—33 անգամ զիջում են ԱՄՆ-ին, իսկ մի շարք երկրներ՝ ավելի շատ։ Կապիտալիստական



աշխարհի արդյունաբերական արտադրանքի ընդհանուր ծավալում այդ երկրների բաժինը կազմում է միայն 12 տոկոս, այն ժամանակ, երբ դրանց բնակչությունը կազմում է ոչ սոցիալիստական աշխարհի բնակչության 72 տոկոսը (տե՛ս «Проблемы мира и социализма», 1974, № 5, стр. 91)։ Սովետական և արտասահմանյան հետազոտողների հաշվումներով, առաջիկա 2—3 տասնամյակներում այդ խզումը չի նվազելու (տե՛ս «Мировая экономика и международные отношения», № 9, 1973, стр. 39)։

Նեոգաղութատիրական քաղաքականությունը նպատակ ունի երկար ժամանակով պահպանել շահագործողական անիրավահավասար հարաբերությունները։ Նեոգաղութատիրության այդ նպատակներում կարևոր տեղ է գրավում արդի գիտատեխնիկական հեղափոխությունը։ Իմպերիալիզմի գիտատեխնիկական մոնոպոլիան, «գիտության ինդուստրիայի» կենտրոնացվածությունը հնարավորություն են ընձեռում գիտատեխնիկական հեղափոխությունը դարձնել սակավ զարգացած երկրներին ենթարկելու և շահագործելու վճռական ուժ։ Վերջիններիս բաժինը գիտական հետազոտությունների ու մշակումների համար կապիտալիստական աշխարհում կատարվող ծախսումներում կազմում է 2 տոկոսից էլ քիչ։ Իսկ ֆինանսական միջոցների հիմնական մասսան (ավելի քան 98 տոկոսը), որոնք կոչված են ապահովելու կապիտալիզմի համաշխարհային տնտեսության գիտա-հետազոտական սեկտորի գործունեությունը, իրացվում է մի քանի բարձր զարգացած պետություններում։ Գիտական հետազոտությունների և մշակումների վրա կատարվող ծախսերում խզումը բնակչության մեկ շնչի հաշվով գնահատվում է մոտավորապես 142 : 1 հարաբերությամբ (տե՛ս «Развивающиеся страны: закономерности, тенденции, перспективы». М., 1974, стр. 83)։ Ընդսմին, հարկավոր է նկատի ունենալ «երրորդ աշխարհի» համար ծանր այնպիսի մի երևույթ, ինչպիսին է, այսպես կոչված, «մտքերի արտահոսքը»։ Կապիտալիստական աշխարհում բռնատիրելով գիտատեխնիկական հեղափոխության գլխավոր առավելությունները, նեոգաղութատիրությունը փորձում է ամրապնդել, անգամ «հավերժացնել» իր տիրապետող դիրքը համաշխարհային տնտեսական կապերում՝ կապիտալիստական սիստեմի շրջանակներում։

Իմպերիալիստական գաղափարախոսությունն այսօր ձգտում է ժողովուրդներին ներշնչել կախյալ զարգացման ճակատագրական անխուսափելիության միտքը, գաղափարա-քաղաքական տեսակետից զինաթափել նրանց նեոգաղութատիրական էքսպանսիայի հանդեպ։ Օրինակ, ամերիկացի էքսպերտներ Գ. Կանի և Ա. Վիների հաշվումներով, զարգացման ներկայիս տեմպերով բնակչության մեկ շնչին ընկնող եկամտի տեսակետից 1965 թվականին ԱՄՆ-ի ունեցած մակարդակին հասնելու համար Ինդոնեզիային կպահանջվեր մոտ 600, Կոլումբիային՝ ավելի քան 350, Նիգերիային՝ ավելի քան 300 տարի (տե՛ս «Проблемы мира и социализма», № 5, 1974, стр. 91)։ Ժամանակակից գաղութարարները ձևացնում են, թե մտահոգված են այդ երկրների ծանր դրությամբ, իրենց, իբր, անկեղծ ցանկությունն են հայտնում օգնել նրանց՝ հաղթահարելու հետամնացությունը։ Խորապես շահագրգռված լինելով թաքցնելու իրենց քաղաքականության էությունը, նրանք, լրիվ ժխտելով նեոգաղութատիրության գոյությունը, գրում են ազգային ավանդույթների առանձնահատկությունները հարգելու, ժողովուրդների ինքնորոշման իրավունքը պաշտպանելու մասին և այլն։ Նեոգաղութատիրական գրականության մեջ լայն տարածում են ստացել «տեսական» կոնցեպցիաներ սուվերեն պետությունների իբր, իրավահավասար, սովորական, ընդհանուր ճանաչում գտած հարաբերությունների մասին և այլն։ Գաղութատիրությունը մեռած է, ինքն իրեն փլուզվել է, ընկել անցյալի գիրկը գաղութային ռեժիմի հետ միասին՝ սրանք են նեոգաղութատիրության փաստաբանների փաստարկները։

Մարքս-լենինյան գիտությունը լրիվ բացահայտել է նեոգաղութատիրության շահագործողական ու հակահեղափոխական էությունը, դրա առանձնահատկությունները, ժողովուրդների աչքերի առջև մերկացրել դրա կեղծ գաղափարախոսությունը։ Այդ գիտությունը ցույց է տալիս լրիվ ու իսկական ազգային ազատագրության, համակողմանի առաջընթացի ու վերածննդի միակ

ճիշտ ուղին։ Դա հեղափոխական պայքարն է իմպերիալիզմի դեմ, ազգային ազատագրության ուժերի սերտ դաշինքը մեր ժամանակի բոլոր հեղափոխական ուժերի, առաջին հերթին սոցիալիզմի համաշխարհային սիստեմի, ՍՍՀՄ-ի հետ։

Իմպերիալիզմի դեմ սոցիալիզմի մղած պայքարի ընթացքում 70-ական թվականներին, համաշխարհային ասպարեզում ուժերի հարաբերակցությունը անշեղորեն սոցիալիզմի օգտին փոփոխվելու շնորհիվ, միանգամայն նոր միջազգային պայմաններ են ստեղծվում իրենց բնական հարստությունների՝ նավթի, հումքի և այլնի նկատմամբ երիտասարդ պետությունների սուվերեն իրավունքների հետագա ամրապնդման համար։ Սոցիալիստական երկրների ակտիվ մասնակցությամբ ստեղծվում է համաշխարհային տնտեսական կապերի մի այլ սիստեմ։ Ասիայի, Աֆրիկայի, Լատինական Ամերիկայի երկրները 70-ական թվականներին, միջազգային նոր գործոնների, առաջին հերթին սոցիալիստական երկրների օգնությամբ ու աջակցությամբ, զգալի արդյունքներ են ձեռք բերում կապիտալիզմի երկրների հետ առևտրա-տնտեսական իրավահավասար հարաբերությունների համար իրենց մղած պայքարում, միջազգային տնտեսական հարաբերություններում իրենց սուվերեն իրավունքների պաշտպանության գործում։ Եթե առաջներում կոնֆլիկտային իրավիճակները լուծվում էին, ամենից առաջ, զարգացող երկրների հաշվին, ապա այժմ իմպերիալիստական պետությունները չեն կարող անտեսել դրանց շահերը։ Այդ բանն առանձնապես վառ կերպով դրսևորվեց, երբ, այսպես կոչված, «էներգետիկ ճգնաժամի» սրման պայմաններում նավթարդյունահանող երկրները հանդես եկան իրենց սուվերեն իրավունքների ու ազգային շահերի պաշտպանությամբ։ Այդ բանը ակնառու կերպով ցույց տվեց նաև ՄԱԿ-ի Գլխավոր ասամբլեայի 1974 թ. գարնան հատուկ սեսիան, որը նվիրված էր հումքային ռեսուրսների և տնտեսական զարգացման պրոբլեմներին։ Իմպերիալիստական տերությունները զարգացող երկրների առևտրա-տնտեսական շահերի հետ ստիպված եղան հաշվի նստել նաև ՅՈՒՆԿՏԱԴ-ի (ՄԱԿ-ի առևտրի ու զարգացման հարցերի կոնֆերանսի) չորրորդ սեսիայում, որը կայացավ 1976 թվականի մայիս—հունիսին Նայրոբիում (Քենիա)։

Իմպերիալիզմի դեմ մղվող ընդհանուր պայքարում աճում են սոցիալիզմի քաղաքականության ու գաղափարախոսության հեղինակությունն ու ազդեցությունը ազգային-ազատագրական պայքարի գոտիներում, ամրապնդվում են այստեղի հակակապիտալիստական ուժերը։ Սոցիալիստական օրիենտացիայի հետ են կապված ազգային-ազատագրական պայքարի առավել հզոր հեղափոխական պոտենցիալները, նեոգաղութատիրական ստրկությունից ու շահագործումից ազատագրվելու ռեալ ուղիները։ Ասիայի, Աֆրիկայի, Լատինական Ամերիկայի երկրների հետամնացության ու կախման միակ ալտերնատիվը, վերջին հաշվով, դեպի սոցիալիզմ տանող ուղին է։ Այդ ուղու վրա է հնարավոր արդյունավետ պայքարը ժողովուրդների ստրկացման և շահագործման նոր ձևերի դեմ։ Դրանով է պայմանավորված այն, որ նեոգաղութատիրության քաղաքականության և գաղափարախոսության կառուցվածքում սկսել է ինտենսիվ կերպով ներթափանցել ժամանակակից հակակոմունիզմը, որը նեոգաղութատիրության իսկական կողոպտչական ու դասակարգային հակահեղափոխական նպատակների գաղափարական-քաղաքական հիմքն է, դրանց գլխավոր շարժիչ ուժը և, միաժամանակ, դրանք քողարկելու միջոցը ազգային-ազատագրական պայքարի գոտիներում։

ՆԵՈԳԱՂՈՒԹԱՏԻՐՈՒԹՅԱՆ ՄԻ ՔԱՆԻ ԷԱԿԱՆ առանձնահատկություններ ձևավորվել են հակակոմունիզմի ուժեղ ազդեցության տակ։ Հակակոմունիզմից դուրս, օրինակ, չի կարելի հասկանալ ռեակցիոն, պաշտպանական դրդապատճառների խիստ ուժեղացումը նեոգաղութատիրական էքսպանսիայում, նեոգաղութատիրական հարաբերությունների «կոլեկտիվ» ձևերի առաջացումը, համատեղ գործողությունները, ընդհանուր պլանների մշակումը և այլն, ազգային-ազատագրական շարժումների դեմ մղվող պայքարում։ Հակակոմունիզմը ո՛չ միայն իմպերիալիստական տերություններին մղում է զարգացող երկրնե-



րում կապիտալիզմի պաշտպանության ընդհանուր դասակարգային ստրատեգիա մշակելու, այլև գործողության մեջ է դնում «ազգային» իմպերիալիզմի առանձնահատուկ շահերը, առանձին մոնոպոլիաների և մոնոպոլիստական խմբերի ագահ, ամենից առաջ տնտեսական շահերը ամբողջ դասակարգի արմատական՝ շահագործողական ֆորմացիայի պաշտպանության շահերին ենթարկելու մեխանիզմը։ Նեոգաղութատիրությունը կարող է նաև զոհաբերել և գործնականում զոհաբերում է այն մասնավոր, հատկապես զուտ տնտեսական, կողոպտչական շահերը, որոնք բացահայտորեն հակասում են հակակոմունիզմի նպատակներին՝ երկու սիստեմների հակամարտության մեջ։

Այս տեսանկյունից, միջազգային հարաբերությունների պրակտիկայում, այնպիսի նոր երևույթի առաջացումը, ինչպիսին է իմպերիալիստական «օգնությունը» նախկին գաղութներին և կիսագաղութներին, ըստ էության, զիջում էր ազատագրական ուժերին։ Ինչպես արդարացիորեն նշում է նեոգաղութատիրության պրոբլեմի սովետական հետազոտող Ռ. Ա. Ուլյանովսկին, իմպերիալիզմն ինքը կամովին երբեք չէր համաձայնի «օգնություն» ցույց տալ ազատագրված երկրներին, «առանձնապես խոշոր անհատույց սուբսիդիաներ տրամադրել նրանցից մի քանիսին, եթե դրա ծայրահեղ պատմական անհրաժեշտությունը չլիներ» (Р. А. Ульяновский. Неоколониализм США и слаборазвитые страны Азии. М., 1963, стр. 23)։

Հակակոմունիզմը, նեոգաղութատիրության դասակարգային ստրատեգիան որոշել են նաև դրա գաղափարախոսության էական առանձնահատկությունները։ Նախ, դա գաղափարախոսության հակակոմունիստական կերպարանափոխությունն է, հրաժարումը ավանդական, իմանենտ կերպով գաղութատիրությանը հատուկ տեսական ու գաղափարախոսական կոնցեպցիաներից, որ ընդհանրապես բուրժուական գաղափարախոսության ճգնաժամի սպեցիֆիկ արտահայտությունն է։ Գաղութային ավանդական գաղափարախոսությունը բացահայտ կերպով արտահայտում էր ուրիշ ժողովուրդների գաղութային ու ազգային ճնշման, կողոպուտի ու շահագործման ռեալ հարաբերությունները, ցինիկաբար գովաբանում բռնությունը, սպիտակամորթ մարդու՝ ճնշելու և կողոպտելու, կայսրություններ ստեղծելու, իր «քաղաքակրթիչ առաքելությունը» կատարելու իրավունքը։ Մեծապետականությունը, գաղութային շովինիզմը և ռասայականությունը եղել են գաղութատիրության գաղափարախոսության անբաժանելի ու էական բաղադրամասերը։ Իսկ նեոգաղութատիրության գաղափարախոսությունն ամոթխածորեն շուռ է գալիս իր իսկ սեփական ստրկացուցիչ ու շահագործողական հարաբերություններից, գովաբանում է ինքնորոշման իրավունքը, իմպերիալիստական մոնոպոլիաների և պետության «ալտրուիզմը», իրականում ռեակցիոն և շահագործողական քաղաքականությունը, նեոգաղութատիրական հարաբերությունների ամբողջ սիստեմը ներկայացնում է որպես օգնություն, որպես անկեղծ հոգատարություն նախկին գաղութների ու կիսագաղութների նկատմամբ և այլն։

Երկրորդ, նեոգաղութատիրական գաղափարախոսությունը ոչ թե իր առանձին ասպեկտների, ոչ էլ իր մանրամասների, այլ իր ամբողջության մեջ կրում է համընդհանուր ջատագովական բնույթ, որը օրինաչափորեն տանում է դեպի մարտնչող հակակոմունիզմ։ Դա առանձնապես ակնհայտորեն դրսևորվում է հենց գաղափարախոսության կառուցվածքը քննելիս, որի գլխավոր հիմքն են կազմում հակակոմունիստական այն հատուկ դոկտրիններն ու կոնցեպցիաները, որոնք ծագել են դեռևս «սառը պատերազմի» ժամանակ և այդ պատճառով աչքի են ընկնում առանձին ռեակցիոնությամբ։ Դրանք կոչված են կեղծելու կոմունիստական իդեալը, վարկաբեկելու սոցիալիզմի տեսությունն ու պրակտիկան։ Խոսքը «կոմունիստական տոտալիտարիզմի» բազմաթիվ տարբերակների մասին է, «հեղափոխության արտահանման», «կոմունիստական դավադրության», «կոմունիստական, սովետական իմպերիալիզմի, գաղութատիրության» և այլ առասպելների մասին։ Այս ելակետային տեսությունների ու կոնցեպցիաների բազայի վրա էլ կառուցված են ընդհանուր հակակոմունիստական այնպիսի կոնցեպցիաներ, ինչպիսիք են «իմպերիալիզմի, գաղութատիրու-

թյան ինքնաոչնչացումը», «կապիտալիզմի կերպարանափոխումը», «դեմոկրատական սոցիալիզմի», «ինդուստրիալ», «պոստինդուստրիալ» հասարակության, «կոնվերգենցիայի» և այլ տեսությունները, որոնք կարևոր տեղ են գրավում նեոգաղութատիրության գաղափարախոսության կառուցվածքում, կոչված են: ազատագրված երկրների ժողովուրդներին ապացուցելու կապիտալիզմի առավելությունները սոցիալիզմի նկատմամբ, պրոպագանդելու «արևմտյան մոդելները», զարգացման ուղիներն ու մեթոդները:

Եվ կոնցեպցիաների երրորդ խումբը, որոնք արդեն ունեն «զուտ» նեոգաղութատիրական ծագում, հատկապես ստեղծված են զարգացող երկրների համար, կոչված են վարկաբեկելու սովետական փորձը, սոցիալիստական կողմնորոշման փորձը, գովաբանելու մասնավոր ձեռնարկատիրական կարգը, երիտասարդ պետությունների զարգացումը մղելու կապիտալիստական ուղին: Դրանք յուրահատուկ նեոգաղութատիրական այն տեսություններն են, ինչպես «փոխվածությունը», «պարտնյորությունը», «մոդեռնացման», «նացիոնալիզմի», «նոր միջին դասակարգի» տեսությունները և այլն: Բուն նեոգաղութատիրական տեսությունները վերլուծելիս պարզվում է, որ դրանք էկլեկտիկ կերպով իրենց մեջ միավորում են տարբեր տեսակ հակակոմունիստական դոկտրիններ՝ որպես իրենց գաղափարական ու մեթոդոլոգիական հիմքի, անհրաժեշտ փաստարկներ են քաղում դրանցից:

Ուստի, եթե տալու լինենք նեոգաղութատիրական տեսությունների բնորոշումը, ապա ամենից առաջ անհրաժեշտ կլինի նշել դրանց հակակոմունիստական բնույթը և ծագումը: Դրանք այն տեսություններն են, որոնք քարոզում են զարգացող երկրների հասարակական կյանքի վերափոխման բուրժուական-ռեֆորմիստական մեթոդները, ձգտում են հիմնավորել նրանց զարգացման կապիտալիստական ուղու անհրաժեշտությունն ու անխուսափելիությունը, քարոզում են բուրժուական և ռեֆորմիստական գաղափարախոսության արտահանումը նույն այդ նպատակների համար: Այդ տեսությունների, ինչպես և առհասարակ կոմունիստական տեսութունների գլխավոր բովանդակությունն է սոցիալիզմի տեսության ու քաղաքականության խեղաթյուրումը, սոցիալիստական կարգի զրպարտումը, կապիտալիզմի ջատագովությունը:

*ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԼԱՐՎԱԾՈՒԹՅԱՆ ԹՈՒԼԱՑՈՒՄԸ* բարենպաստ պայմաններ է ստեղծում համաշխարհային հեղափոխական պրոցեսի, այդ թվում և ազգային-ազատագրական պայքարի հետագա զարգացման համար: Խաղաղ գոյակցության սկզբունքների պաշտոնական ճանաչումը Հելսինկիում՝ որպես պետությունների փոխհարաբերությունների հիմնարար նորմեր միջազգային հարաբերությունների սիստեմում, անկախ այս կամ այն հասարակական սիստեմին պատկանելուց և կամ զարգացման օրիենտացիայից, զգալիորեն ամրապնդում է զարգացող երկրների պետական սուվերենությունը, նրանց դիրքերն աշխարհում: Այս իմաստով թուլացումը նոր, լրացուցիչ խոչընդոտներ է ստեղծում նեոգաղութատիրության ագրեսիվ ոտնձգությունների, թելադրանքի ու շանտաժի նրա ավանդական մեթոդների առջև: Ահա ինչու հակակոմունիզմը, հակահարված ստանալով ռազմական և քաղաքական ոլորտներում, նահանջելով տնտեսական ոլորտում, գաղափարախոսության բնագավառը համարում է պայքարի գլխավոր ասպարեզը իր դասակարգային ստրատեգիան իրականացնելու համար:

Կուսակցության XXV համագումարում ՍՄԿԿ Կենտկոմի ներկայացրած հաշվետու զեկուցման մեջ նշված են այն նպաստավոր հնարավորությունները, որոնք հեղափոխական ուժերի առջև բացվել են լարվածության թուլացման պայմաններում: Դրա հետ մեկտեղ ընդգծվեց, որ երկու սիստեմների գաղափարական հակամարտությունը դառնում է ավելի ակտիվ, իմպերիալիստական պրոպագանդան՝ ավելի խորամանկ: Արդի գաղափարական պայքարում նեոգաղութատիրության, նրա էքսպանսիայի ձևերի ու մեթոդների, կեղծ ու երկերեսանի գաղափարախոսության մերկացումը կարևոր խնդիր է:

# ՄՏՈՐՈՒՄՆԵՐ ԳԻՏՆԱԿԱՆԻ ԿՈՉՄԱՆ ՄԱՍԻՆ

**Ս. Կ. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ**
ՀՍՍՀ ԳԱ ակադեմիկոս

ԳԻՏՆԱԿԱՆԻ ԿՈՉՈՒՄԸ շատ տարողունակ հասկացողություն է: Այնքան բազմազան ու բազմերանգ են դրա ասպեկտները, որ անհնար է մեկ հեղինակի՝ թեկուզ համառոտագույնս բնութագրել այդ հասկացողության բոլոր տեսանկյունները: Միակ հնարավորությունը թերևս այն է, որ յուրաքանչյուր հեղինակ ընթերցողի ուշադրությանը ներկայացնի իր կարծիքը, իր ըմբռնումը գիտնականի կոչման մասին: Գուցե մտքերի այդպիսի փոխանակությունն օգտակար լինի ընդհանուր եզրակացությունների հանգելու, այդ հասկացողության բնորոշումը ճշգրտելու և հիմնավորելու: Այս առիթով ցանկանում ենք շարադրել մեր ըմբռնումներն այդ մասին: Գիտնականի գլխավոր կոչումը, ամենից առաջ, պետք է համարել նրա գիտական ստեղծագործությունը, անմնացորդ նվիրվածությունը որդեգրած գիտությանը, դրա համակողմանի զարգացմանը, անընդհատ հարստացմանը՝ էքսպերիմենտալ հետազոտությունների տվյալներով:

Գիտնականի գործունեությունը ծավալվում է երկու հիմնական բնագավառներում. առաջինը՝ գիտահետազոտական ինստիտուտներում, լաբորատորիաներում, կոնստրուկտորական բյուրոներում, որտեղ նրա ողջ գործունեությունը նվիրված է գիտական պրոբլեմների լուծմանն ու գիտական կադրերի պատրաստմանը և երկրորդը՝ բարձրագույն ուսումնական հաստատություններում, որտեղ նրանց աշխատանքը բնորոշվում է որպես գիտա-մանկավարժական գործունեություն: Գիտնական-մանկավարժի գլխավոր խնդիրն այստեղ բարձրորակ մասնագիտական կադրերի, ինչպես նաև գիտա-մանկավարժական կադրերի՝ բարձրորակ դասախոսների պատրաստումն է: Բայց այսպիսի բաժանումը որոշ իմաստով պայմանական է. այնպես է ստացվում, որ բուհերում աշխատող շատ գիտնականներ՝ պրոֆեսորներ, դոցենտներ, իրենց հիմնական մանկավարժական գործունեությունը հաջողությամբ զուգակցում են գիտահետազոտական աշխատանքին: Ո՞րն է բուհում աշխատող գիտնականի հիմնական կոչումը, պարտականությունը՝ դասախոսակա՞ն աշխատանքը, թե՞ գիտահետազոտականը: Այս հարցի շուրջ տարիներ շարունակ վիճաբանում են գիտնականները:

Զգալի թվով դասախոսներ այն կարծիքին են, թե գլխավորը, հիմնականը դասախոսական աշխատանքն է, իսկ գիտահետազոտականը բոլորովին էլ պարտադիր չէ, պայմանավորված է դասախոսի ցանկությամբ: Նման տեսակետ պաշտպանողների ճնշող մեծամասնությունն այն դասախոսներն են, որոնք տարիներ շարունակ չեն զբաղվել գիտահետազոտական աշխատանքով, կորցրել են ճաշակը գիտական աշխատանքի նկատմամբ: Օբյեկտիվությունը պահանջում է նշել նաև այն հանգամանքը, որ որոշ բուհերում չեն ստեղծվել գիտական աշխատանքի համար անհրաժեշտ պայմաններ: Մեր երկրի հարյուրավոր առաջավոր բուհերի փորձը ցույց է տալիս, որ դասախոսական աշխատանքը գիտահետազոտականին հակադրելու փորձերն անհիմն են: Հանրահայտ է, որ լավագույն դասախոսը, ամենից առաջ, տաղանդավոր գիտնականն է, նա

ոչ մի ջանք չի խնայում՝ գտնվելու ժամանակակից գիտության առաջավոր դիրքերում, իր դասախոսությունները հագեցնելու անընդհատ զարգացող գիտության ամենավերջին նվաճումներով: Բարձրագույն ուսումնական հաստատություններում ծավալվում են վիթխարի մասշտաբներով գիտահետազոտական կարևորագույն աշխատանքներ: Դրա վկայությունն է այն փաստը, որ ներկայումս բուհերում աշխատում է երկրում եղած գիտության բոլոր դոկտորների ու թեկնածուների մոտ 40 տոկոսը: Մանկավարժ գիտնականները բարձրագույն ուսումնական հաստատություններում կատարում են բազմաթիվ բարձրարժեք գիտական հետազոտություններ: Միաժամանակ գիտական հիմնարկներից բուհերում դասավանդելու և գիտական աշխատանքի են հրավիրվում հազարավոր անվանի գիտնականներ:

Հայտնի է, որ գիտության շատ ականավոր գործիչներ միաժամանակ եղել են մանկավարժներ, դասախոսներ: Հիշենք Ն. Ի. Լոբաչևսկու, Կ. Ա. Տիմիրյազևի, Դ. Բ. Մենդելեևի, Վ. Ի. Վերնադսկու, Վ. Օ. Կլյուչևսկու, Ն. Ե. Ժուկովսկու, Ի. Ի. Մեչնիկովի, Ի. Պ. Պավլովի, Լևոն և Հովսեփ Օրբելիների, Ա. Ա. Ուխտոմսկու, Օ. Յու. Շմիդտի, մեր մեծանուն հայագետներ Հ. Աճառյանի, Հ. Մանանդյանի, Մ. Աբեղյանի, ականավոր բժիշկ Լ. Հովհաննիսյանի անունները: Անունների այս ցանկը կարելի էր շատ ընդարձակել, բայց սահմանափակվենք այսքանով:

Ասվածը տրամաբանորեն հանգեցնում է այն եզրակացության, որ իսկական գիտնականի գլխավոր կոչումը, ամենից առաջ, գիտական ստեղծագործությունն է՝ բնության և հասարակության զարգացման օրինաչափությունների բացահայտումը, դրանց ծառայեցումը գիտատեխնիկական առաջընթացի արագացմանը: Գիտնականի շատ կարևոր հատկանիշներից է նաև ձեռք բերած գիտելիքների հաղորդումը հաջորդ սերունդներին, այսինքն՝ մանկավարժական գործունեությունը: Ուստի, պատահական չէ, որ կոմունիստական կուսակցությունը և սովետական կառավարությունն ամեն կերպ խրախուսում են ճանաչված գիտնականների ներգրավումը նաև մանկավարժական գործունեության ոլորտը, այդ նպաստում է բուհերի ամբիոններում, պրոբլեմային լաբորատորիաներում գիտահետազոտական աշխատանքների ծավալմանը, բարձր կուրսերի ընդունակ ուսանողներին այդ պրոցեսի մեջ ընդգրկելուն, որը մեծապես խթանում է ուսման որակի բարձրացմանը:

Նշեցինք գիտնականի կոչման երկու որոշիչ կողմերը, սակայն դրանցո՞վ են սպառվում արդյոք նրա պարտականություններն ու անելիքները: Անշուշտ, ո՛չ: Բացի գիտական պրոբլեմներ լուծելուց և դասախոսական աշխատանքից, նա ունի մի շարք այլ, ոչ պակաս կարևոր պարտականություններ: Իսկական գիտնականի առաջնակարգ կոչումն է նաև իրեն արժանի փոխարինողներ պատրաստելը. որքան բարձր է աշակերտների գիտական մակարդակը, այնքան ավելի ծանրակշիռ է ուսուցչի ավանդը: Բայց, որքան էլ տարօրինակ թվա, կան թեկնածուական, անգամ դոկտորական աստիճան ունեցող ոչ քիչ գիտաշխատողներ ու դասախոսներ, որոնք երիտասարդ գիտական կադրերի պատրաստումն իրենց պարտքը չեն համարում (խոսքը, իհարկե, այն գիտնականների ու գիտաշխատողների մասին չէ, որոնք, կատարելով կուսակցական և պետական ղեկավար աշխատանք, հաճախ ֆիզիկապես զրկված են լինում գիտական կադրեր պատրաստելու հնարավորությունից):

Դրա կողքին բազում են այն օրինակները, երբ գիտությանը նվիրված գիտնականներն ստեղծում են գիտական խոշոր դպրոցներ՝ խոր հետք թողնելով գիտության պատմության մեջ: Հանրահռչակ ֆիզիոլոգ Լևոն Օրբելին, մեծ Պավլովի ղեկավարությամբ, գիտական բեղմնավոր գործունեություն սկսեց դեռ մինչև Հոկտեմբերյան հեղափոխությունը, բայց նրա տաղանդը փայլատակեց հատկապես սովետական կարգերի հաստատումից հետո, երբ բարենպաստ պայմաններ ստեղծվեցին գիտության զարգացման համար: Նրա նախաձեռնությամբ և ակտիվ մասնակցությամբ ստեղծվեցին գիտական մի շարք օջախներ, որտեղ մշակվում էին ֆիզիոլոգիական գիտության առավել կարևոր և հեռանկարային ուղղությունները (զգայարանների ֆիզիոլոգիա, սիմպաթիկ



նյարդային համակարգի հարմարվողական-սնուցիչ դերի ուսումնասիրություն, ուղեղիկի դերի ուսումնասիրություն օրգանիզմի շարժողական ակտերի և այլ գործառնությունների կարգավորման գործում և այլն): Այդ պրոբլեմների ուսումնասիրության ընթացքում նա ստեղծեց ու կոփեց մի հզոր գիտական դպրոց: Նրա աշակերտները դարձան ֆիզիոլոգիական գիտության տարբեր բնագավառների ճանաչված գիտնականներ և շարունակում են հաջողությամբ զարգացնել ու խորացնել իրենց ուսուցչի առաջավոր գաղափարները: Օրբելին այն բախտավոր գիտնականներից էր, որին շրջապատում էին ոչ թե «աշխատակիցներ», այլ աշակերտներ— հոգևոր ժառանգներ: Օրբելու աշակերտներից մեկը՝ Լ. Գ. Լեյբսոնը, գրել է. «Գիտության պատմության մեջ հազիվ թե հնարավոր լինի գտնել մի այլ այդպիսի բազմամարդ, միաձույլ գիտական դպրոց»: Բնորոշ է, որ Օրբելու մահից հետո նրա գիտական դպրոցի փառքը ո՛չ միայն չխամրեց, այլ ավելի փայլատակեց: Ներկայումս նրա աշակերտների չորս սերունդներ, միաձուլելով իրենց ստեղծագործական ուժերը, երկրով մեկ ծավալել են բեղմնավոր գիտական գործունեություն և իրենց նվաճումներով հարստացնում են հայրենական ու համաշխարհային ֆիզիոլոգիական գիտությունը:

Գիտության մեջ մեծ վաստակ և աշխատանքի երկարամյա հարուստ փորձ ունեցող գիտնականները շատ դիպուկ են բնութագրել գիտական աշխատանքի յուրահատկությունը՝ նշելով, որ իսկական գիտնականը գիտության մեջ իր կյանքն ավարտում է իր ֆիզիկական վախճանի հետ միաժամանակ: Լևոն Օրբելին այդ բնորոշման փայլուն օրինակն է: Դժվարություններով լի նրա կյանքը գիտության մեջ ընդհատվեց միայն այն պահին, երբ դադարեց բաբախել նրա սիրտը:

Գիտնականի կոչման հետ առնչվում է գնահատման և պարզաբանման կարիք ունեցող մի հարց ևս: Որոշ դասախոսներ, դիսերտացիա պաշտպանելուց, գիտական աստիճան ստանալուց հետո փաստորեն դադարեցնում են գիտական աշխատանքը: Ինչպե՞ս բացատրել այս արտառոց երևույթը: Այն ունի, իհարկե, մի շարք պատճառներ, բայց, մեր կարծիքով, գլխավոր պատճառն այն է, որ գիտական աստիճան կամ կոչում ստանալուց հետո ոմանք իրենց կյանքում տեղի ունեցած այդ կարևոր երևույթը սխալ են գնահատում: Փոխանակ շնորհված աստիճանը դիտելու որպես կանխավճար, ավելի եռանդուն գիտական գործունեության խթանիչ ուժ, նրանք այն դիտում են որպես դափնիներին նիրհելու վկայագիր: Ցավալին այն է, որ գիտական հիմնարկությունների և բուհերի կոլեկտիվները պատշաճ հասարակական կարծիք չեն ստեղծում այդ երևույթի դեմ, զարմանալիորեն անտարբեր են դրա նկատմամբ:

Գիտնականի կոչումը բնորոշող կարևորագույն ցուցանիշներից է նրա գիտա-հասարակական գործունեությունը, որը պետք է դիտել որպես նրա ամբողջական գործունեության անբաժանելի մասը: Տասնամյակների փորձը հաստատում է, որ սովետական գիտնականի բնորոշ առանձնահատկություններից մեկն էլ նրա բարձր հասարակական ակտիվությունն է. նրանք հասարակական կարգով աշխատում են գիտական ամսագրերի, հանրագիտարանների խմբագրություններում՝ որպես խմբագրական կոլեգիաների անդամներ, անգամ խմբագիրներ, գիտահետազոտական ինստիտուտների և բուհերի գիտական խորհուրդների անդամներ, հարյուր հազարավոր գիտնականներ ակտիվ մասնակցում են մասսայական գիտական ընկերությունների աշխատանքներին, ինչպես, օրինակ՝ «Գիտելիք» ընկերության, «Բնության պահպանության ընկերության», «Գիտատեխնիկական ընկերության», գիտության տարբեր բնագավառներ ընդգրկող գիտական ընկերությունների: Այդ ընկերություններում տարվող աշխատանքը վիթխարի դեր է խաղում աշխատավորների լայն խավերի շրջանում գիտական և քաղաքական գիտելիքների տարածման գործում, գիտահետազոտական աշխատանքների մակարդակի բարձրացման բնագավառներում: Առաջատար, ճանաչված գիտնականները գլխավորում են գիտա-հասարակական այդ ընկերությունները, դրանց մեջ մտնող գիտա-մեթոդական խորհուրդները,

ռամտության, մտահորիզոնի լայնության և ազնվության միջև: Ավելի քան երեք տասնամյակների ընթացքում բախտ եմ ունեցել հանդիպումներ ունենալու ականավոր, լայն ճանաչում գտած շատ գիտնականների հետ, մոտիկից ճանաչելու նրանց, հիանալու նրանց բարձր կուլտուրայով, քաղաքացիական պարտքի զգացումով և առաքինություններով: Առանձնապես խոր տպավորություն է թողել ինձ վրա նրանց պարզությունը, մարդամոտությունը: Բացառիկ էր այդ տեսակետից ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի պրեզիդենտ, հանրահռչակ բուսաբան և աշխարհագրագետ Վլադիմիր Լեոնտևիչ Կոմարովը, որը միաժամանակ գիտությունների ակադեմիայի հանրապետական ֆիլիալների խորհրդի նախագահն էր, որոնց մեծ մասը կազմակերպվել էր նրա նախաձեռնությամբ: Նա բացառիկ ուշադրություն էր նվիրում այդ մասնաճյուղերի զարգացմանը, նորերի ստեղծմանը՝ երկրի ամենահեռավոր ծայրամասերում, հոգում տեղական կադրերի ընտրության, նրանց գիտական աճի համար: Այս ամենի մեջ ցայտուն դրսևորվում էին նրա արտակարգ պարզությունն ու համեստությունը: Շատ առիթներ եմ ունեցել նրա ընդունելության հատուկ օրերին հիանալու նրա մարդկային վերաբերմունքով: Ընդունարանից դուրս եկողների աչքերը փայլում էին հոգեկան բավարարվածությունից, գոհունակությունից: Մոտ 40 տարի է անցել այդ օրերից, բայց նրա վառ կերպարը, որպես անաղարտության մարմնացում, մնում է բոլոր նրանց սրտերում, ովքեր գեթ մեկ անգամ բախտ են ունեցել մոտիկից ծանոթանալու, սրտամոտ զրուցելու նրա հետ:

Իր առաքինությամբ ու մարդասիրությամբ աչքի էր ընկնում նաև ՍՍՀՄ ԳԱ փոխ-պրեզիդենտ Օտտո Յուլևիչ Շմիդտը՝ մաթեմատիկայի, աստղագիտության և գեոֆիզիկայի բնագավառների ականավոր գիտնականներից, սովետական Արկտիկայի խոշոր հետազոտողներից մեկը, «Հյուսիսային բևեռ» դրեյֆող կայանի էքսպեդիցիայի ղեկավարը, Չելյուսկինյան էպոպեայի հերոսը:

Գիտությունների ակադեմիայի գլխավոր շտաբի ականավոր գործիչներից էր այդ շրջանում ակադեմիայի մյուս փոխ-պրեզիդենտը՝ ակադեմիկոս Իվան Միխայլովիչ Գուբկինը— հանրահռչակ երկրաբան, սովետական նավթային երկրաբանության հիմնադիրը. նրա հիմնարար գիտական հետազոտությունները հիմք ծառայեցին վերջին հնգամյակների ընթացքում երկրում նավթարդյունաբերության նոր հզոր բազաներ ստեղծելու համար:

Գիտությունների ակադեմիայի փայլուն պլեադայի ներկայացուցիչներից մեկն էր մեր հայրենակից, մեծ ֆիզիոլոգ Լևոն Օրբելին, որը, հանդիսանալով ակադեմիայի փոխ-պրեզիդենտներից մեկը, միաժամանակ գլխավորում էր ակադեմիայի կենսաբանական բաժանմունքը, ռազմաբժշկական ակադեմիան և մի շարք կարևոր հանձնաժողովներ: Հայրենական պատերազմի ծանր տարիներին գիտությունների ակադեմիայի շտաբը վիթխարի աշխատանք էր կատարում գիտության կարևորագույն նվաճումները արտադրության մեջ ներդնելու և երկրի ռազմական պոտենցիալի հզորությունն ավելի բարձրացնելու համար: Առիթ եմ ունեցել այդ պատմական օրերին հանդիպելու Լևոն Օրբելու հետ: Իր վրա դրված ծանր պարտականությունները նա կատարում էր անձնվիրաբար, ներքին մեծ ինքնատիրապետմամբ, պատասխանատվության բարձր զգացումով: Հանդիպումներից մեկի ժամանակ՝ 1943 թ. գարնանը հանձնարարություն ունեի իմանալու ակադեմիկոս Լևոն Օրբելու կարծիքը, թե ինչպես կվերաբերվի ՍՍՀՄ գիտությունների ակադեմիան, եթե Հայաստանի ղեկավար օրգանները հարց հարուցեն Միութենական կառավարության առաջ՝ ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի հայկական ֆիլիալի հիմքի վրա ստեղծելու Հայաստանի գիտությունների ակադեմիա: Երևի այդ հարցը նրա համար անսպասելի էր, քանի որ անմիջապես չպատասխանեց. կենտրոնացած մտածում էր: Մի քանի րոպե անց լարվածությունն անցավ, և նրա մեղմ, հմայիչ ժպիտը զարդարեց դեմքը: Կարծես մի ծանր բեռ ուսիցս ընկավ, թվում էր, թե արդեն ստացել էի դրական պատասխան և չէի սխալվել: «Ներեցեք, սիրելիս,— ասաց Օրբելին,— Ձեր հարցը ինձ համար անսպասելի էր. ահեղ պատերազմը դեռ



շարունակվում է: Ճիշտ է, ռազմաճակատում վճռական բեկում է տեղի ունեցել հօգուտ սովետական ռազմական ուժերի, բայց դեռ զանազան կարգի դժվարություններ կան, որոնք պետք է հաղթահարվեն. չպետք է մոռանանք, որ մեր դաշնակիցներ Անգլիան և Միացյալ Նահանգները կապիտալիստական երկրներ են: Ահա թե ինչու սկզբում ես մտածում էի՝ որքա՞ն նպատակահարմար է այս պայմաններում հարց բարձրացնել Հայաստանում գիտությունների ակադեմիա ստեղծելու մասին: Բայց քիչ խորհելուց հետո եկա այն եզրակացության, որ այդ քայլը կունենա ո՛չ միայն գիտական, այլև շատ կարևոր քաղաքական նշանակություն: Ինչ վերաբերում է ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի կարծիքին, ապա ես համոզված եմ, որ այն դրական կլինի, քանի որ ակադեմիայի պրեզիդենտ Վ. Լ. Կոմարովը ամենալավ կարծիքն ունի գիտությունների ակադեմիայի հայկական ֆիլիալի և առհասարակ Հայաստանի գիտնականների մասին»: Հենց այդ զրույցի ընթացքում էր, որ հափշտակված հետևում էի, թե ինչպիսի խորաթափանցությամբ, բանիմացությամբ և համբերատարությամբ էր նա լուծում բոլոր հարցերը, որոնցով դիմում էին նրան անձամբ, հեռախոսով, հեռագրերով:

Գիտնականի կոչման բնորոշման հետ կապված՝ վերն ընդգծեցինք, որ նրա առաջնահերթ պարտականություններից են՝ ամեն կերպ բարձրացնել գիտական հետազոտությունների արդյունավետությունը, արագացնել ձեռք բերած նվաճումների արմատավորումը ժողովրդական տնտեսության մեջ: Այս հարցի հետ է առնչվում նաև գիտական աշխատանքի արդյունավետության բարձրացման հարցը, որը բավականին հաճախ է քննարկվում մամուլի էջերում: Փորձեր են արվում խիստ ռեգլամենտացիայի ենթարկել գիտնականի աշխատօրը, սահմանել մասնագիտական գրականություն կարդալու ամենօրյա կայուն, ընդ որում, բավականին մեծ էջաքանակ, մոռացության տալով, որ գիտական աշխատանքն ունի իր սպեցիֆիկ առանձնահատկությունները. *որ այն ընթանում է ոչ թե բանվորական ժամանակի, այլ ազատ ժամանակի օրենքով* և շատ տեսակետներից գիտնականի աշխատօրը հանդիսանում է կոմունիստական աշխատանքի նախատիպը: Խոսելով գիտնականի աշխատաժամանակի առավել արդյունավետ օգտագործման մասին, չպետք է մոռանալ, որ նա պետք է ունենա ժամանակ մտածելու, իր իդեաները բազմակողմանի վերլուծելու, բյուրեղացնելու համար: Մտածելը գիտնականի համար ամենաանհրաժեշտ և կենսական պայմաններից մեկն է:

Գիտնականի աշխատանքի արդյունավետությունը հնարավոր չէ չափել նրա ինստիտուտում, լաբորատորիայում գտնված ժամերի քանակով, գիտական և «ոչ գիտական» գործունեության ժամանակի տոկոսային հարաբերությունների սահմանմամբ, մասնագիտական գրականություն կարդալու ինչ-որ նորմաներ սահմանելով: Ի դեպ, ստեղծագործող գիտնականը մեծ կարիք ունի նաև գեղարվեստական գրականության, պոեզիայի, երաժշտության, առհասարակ գեղագիտական, հոգեկան սննդի, որը հզոր խթան է հանդիսանում մտավոր գործունեության արդյունավետության բարձրացման համար:

Մեր ականավոր գենետիկ Նիկոլայ Պետրովիչ Դուբինինն իր առավել սիրած մասնագիտական գրքերի՝ էռնստ Հեկկելի «Տիեզերական առեղծվածներ» և Չարլզ Դարվինի «Տեսակների ծագումը» գրքերի կողքին նշում է նաև Լև Տոլստոյի «Պատերազմ և խաղաղություն» վեպը: Մյուս խոշոր գիտնական ակադեմիկոս Իվան Իվանովիչ Արտոբոլևսկին, դիմելով երիտասարդ գիտնականներին, գրում է. «...երիտասարդ հետազոտողը պետք է հասկանա, որ Մարքսի և Լենինի մտքերի մեծագույն հարստությունը, Շեքսպիրի և Պուշկինի պատկերների աշխարհը, Բախի և Չայկովսկու հնչյունների աշխարհը նույնպիսի զենք է նրա գիտական ստեղծագործության համար, ինչպես և մաթեմատիկային, ֆիզիկային կամ քիմիային տիրապետելը (տե՛ս **Возраст познания** գրքի 42 էջը, հրատ. 1974, Մոսկվա):

Վերջին տարիներին մեր երկրում մեծ ուշադրություն է նվիրվում արտադրության տարբեր բնագավառներում աշխատանքի գիտական կազմակերպման հարցերին, և նկատելի արդյունքներ են ձեռք բերվել: Ժամանակն է՝ լրջորեն

գրաղվելու նաև հենց գիտական աշխատանքի գիտական կազմակերպման պրոբլեմով: Դա, իհարկե, դժվար պրոբլեմ է, բայց որքան էլ դժվար լինի, այն պետք է լուծվի որքան հնարավոր է արագ և որակական բարձր մակարդակով: Վերջապես, չպետք է մոռանալ, որ իսկական գիտնականի աշխատանքը ամենից առաջ ստեղծագործական աշխատանք է, մտավոր աշխատանքի բարձրագույն, ամենակատարյալ ձևը, իսկ դրա համար պետք է ստեղծել համանման պայմաններ, այլ ոչ թե բազմապիսի արհեստական խոչընդոտներ, որոնք անխուսափելիորեն խանգարում են գիտնականի առօրյա ստեղծագործական աշխատանքը:

Վերջապես, գիտնականի առաջնակարգ մի կոչումն էլ պետք է համարել նրա անզիջում սկզբունքայնությունը, գիտական ճշմարտության վճռական, անձնվեր պաշտպանությունը: Հիշենք XVI դարի մեծ մտածող, մատերիալիստ և աթեիստ Ջորդանո Բրունոյի անմահ սխրանքը: Երբ վայրագ ինկվիզիտորները այրելով նրան խարույկի բոցերի մեջ, ստիպում էին, որ նա մեղանչի, հրաժարվի իր աթեիստական գաղափարներից, նա գերադասեց այրվել և հանուն գիտական ճշմարտության, հարազատ մնաց իր գաղափարներին: Նա մեռավ որպես իսկական մարտիկ, հանուն ճշմարտության, խոր հավատով, որ նրա գաղափարները կհաղթանակեն, իսկ հերոսական մահը կվերածվի անմահության: Պատմությանը հայտնի են բազմաթիվ գիտնականներ, բժիշկներ, որոնք արհամարհելով մահը՝ իրենց վրա փորձեր են դրել գիտական ճշմարտություններ հաստատելու համար, հանուն մարդկության բարօրության:

Վսեմ, պատվաբեր է գիտնականի կոչումը, վեհ պարտականություն. մեծ բախտավորություն է արժանի լինել այդ կոչմանը:



# ՍՏՈՒԳՈՒՄՆԵՐԸ ՀԱՋՈՂՈՒԹՅԱՆ ԳՐԱՎԱԿԱՆ ԵՆ

**Գ. Ա. ՓԱՀԼԵՎԱՆՅԱՆ**
ՀԿԿ վերստուգիչ հանձնաժողովի նախագահ

*ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅՈՒՆԸ, իրականացնելով մարքս-լենինյան քաղաքական ղեկավարությունը սոցիալիստական հասարակության կյանքի բոլոր ոլորտների նկատմամբ, մշտապես հոգում է իր շարքերի միասնության ամրապնդման, կոմունիստների գաղափարական կոփման, կուսակցական աշխատանքի ձևերի ու մեթոդների կատարելագործման համար: ՍՄԿԿ XXV համագումարը նշեց, որ կուսակցության բոլոր օղակների կազմակերպված, ակտիվ ու արդյունավետ գործունեությունը կարելի է ապահովել միայն կուսակցական կյանքի լենինյան նորմերի և ղեկավարման սկզբունքների հետևողական ու ճիշտ կիրառմամբ: Իսկ աշխատանքի լենինյան ոճը ենթադրում է բարձր պահանջկոտություն իր և ուրիշների նկատմամբ, բացառում ինքնագոհության, բյուրոկրատիզմի և ձևականության ամեն մի դրսևորում: Արժեքավորելով կուսակցական-կազմակերպական աշխատանքի հաջողությունները՝ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևը համագումարում ասաց. «Մենք ճիշտ կվարվենք, լենինաբար կվարվենք, եթե պատշաճը հատուցելով ձեռք բերվածին, ուշադրությունը կենտրոնացնենք մեզանում դեռևս գոյություն ունեցող թերությունների վրա, չլուծված խնդիրների վրա: Պահանջվում է, որ յուրաքանչյուր կոմունիստ, սկզբնական կուսակցական կազմակերպություն, կոմիտե իր ավանդը ներդնի համագումարի որոշումների կատարման գործում, դրանք մարմնավորելով կոնկրետ առաջադրանքների և պլանների մեջ»:*

*Ելնելով ՍՄԿԿ XXV համագումարի կարևորագույն դրույթներից, Հայաստանի կոմկուսակցության Կենտկոմը, քաղաքային և շրջանային կոմիտեները, սկզբնական կուսկազմակերպությունները մշակում են արդի պահանջներից բխող միջոցառումներ: Այստեղ մեծ անելիքներ ունեն կուսկազմակերպությունների վերստուգիչ հանձնաժողովները:*

*Ինչպես հայտնի է, ՍՄԿԿ XXV և Հայաստանի կոմկուսակցության XXVI համագումարներին նախորդեցին քաղաքային և շրջանային կուսկազմակերպությունների կոնֆերանսները, որտեղ ընտրվեց վերստուգիչ հանձնաժողովների նոր կազմ: Դրանց 47 նախագահներից 30-ը նախկին կազմից են, իսկ 17-ը՝ նոր: Հանձնաժողովների անդամների 50 տոկոսից ավելին նոր է ընտրված: Սա, ինչ խոսք, դրական երևույթ է: Հարկ է նկատել, որ նոր ընտրված ընկերների մի մասը, թերևս, չունի կուսակցական աշխատանքի անհրաժեշտ փորձ ու գիտելիքներ և օգնության կարիք է զգում: Այդ իսկ պատճառով մեր նպա-*

տակն է սույն հոդվածում պարզաբանել վերստուգիչ հանձնաժողովների առջև ծառացած խնդիրները, ցույց տալ դրանց լուծման ուղիները՝ ելնելով ՍՄԿԿ XXV համագումարի պահանջներից։

Քաղաքային և շրջանային կուսկազմակերպությունների վերստուգիչ հանձնաժողովներն ընտրվում են համապատասխան կուսակցական կոնֆերանսների կողմից, գործում են ինքնուրույն ու հաշվետու են միայն իրենց ընտրող կազմակերպության առաջ։ Նրանց խնդիրները պարզ ու հստակ շարադրված են ՍՄԿԿ Կենտկոմի քարտուղարության՝ 1968 թ. սեպտեմբերի 17-ին հաստատած «Վերստուգիչ հանձնաժողովների կողմից կուսակցական մարմինների ֆինանսական տնտեսության վերստուգումները անցկացնելու մասին» հրահանգում։

Վերստուգիչ հանձնաժողովները կոչված են օգնելու կուսակցական կազմակերպություններին՝ բյուջետային-ֆինանսական կարգուկանոնի պահպանման գործում։ Ուսումնասիրությունները, սակայն, ցույց են տալիս, որ որոշ կազմակերպություններում նրանք իրենց պարտականությունները կատարում են անբավարար, խախտում ՍՄԿԿ Կենտկոմի մշակած համապատասխան սկզբունքը։ Այսպես, երբեմն նրանք միջամտում են կուսակցական մարմնի ապարատի գործերին, սկզբնական կուսկազմակերպությունում, անդամավճարների մուծման վիճակի ստուգման հետ մեկտեղ, զբաղվում են կուսշարքերի համալրման, կուսակցական մարմինների որոշումների ու տնտեսական պլանների կատարման հարցերով, որոնք նրանց ֆունկցիան չեն։

Վերստուգիչ հանձնաժողովը, ըստ ընդունված կանոնի, գործում է ինքնուրույն, իր կողմից նախապես հաստատված պլանով։ Սակայն մի շարք հանձնաժողովների ղեկավարներ աշխատանքային պլանը հաստատման են ներկայացնում ոչ թե հանձնաժողովին, այլ՝ համապատասխան կուսակցական կոմիտեի բյուրոյին։ Կան փաստեր, երբ հանձնաժողովի անդամները կարծում են, թե իրենք կուսակցական կոմիտեի բաղկացուցիչ մասն են և փաստաթղթերն ստորագրում են նրա անունից։ Մեր կարծիքով, ասվածը մանրուք չէ, այլ կարևոր իրողություն՝ հանձնաժողովների ֆունկցիաների ըմբռնման առումով։

Վերստուգիչ հանձնաժողովների անմիջական պարտականությունը, առաջին հերթին, կուսակցական վերադաս մարմինների հաստատած կուսակցական բյուջեի կատարման հսկումն է։ Նրանք պարտավոր են հետևել ֆինանսական միջոցների ծախսման օրինականությանը, դրամական և նյութական արժեքների ճիշտ հաշվառմանը և այլն։ Վերոհիշյալ հրահանգին համապատասխան՝ քաղաքային ու շրջանային կուսկազմակերպությունների վերստուգիչ հանձնաժողովները պարտավոր են վերստուգումներ կատարել եռամսյակը մեկ, կազմել մանրամասն ակտ և հայտաբերած թերությունների մասին հայտնել համապատասխան կուսակցական կոմիտեին, միջոցառումներ մշակել դրանք վերացնելու համար։

Քաղաքային ու շրջանային կուսկոմիտեները ներկայումս լրիվին ֆինանսավորվում են կուսակցական բյուջեից։

Պետք է նկատել, որ ոչ բոլոր վերստուգիչ հանձնաժողովներն են հետևողականորեն կատարում վերոհիշյալ հրահանգի պահանջները։ Շատ տեղերում վերստուգումները կազմակերպվում են ուշացումով, երբեմն մակերեսորեն կամ արդյունքները չեն ակտավորվում։ Լինում են դեպքեր, երբ հանձնաժողովներն անհրաժեշտ գնահատական չեն տալիս ֆինանսական խախտումներին, ֆինանսա-տնտեսական գործունեության թերություններին, հետևողականություն ու սկզբունքայնություն չեն ցուցաբերում դրանց վերացման գործում։ Այդ ամենի հետևանքով մի շարք կազմակերպություններում շարունակվում են ֆինանսական խախտումները տրանսպորտի պահպանման, փոստ-հեռագրային, նյութա-տեխնիկական միջոցների և դրամական միջոցների ծախքերի կատարման ասպարեզում։

Քաղկոմների և շրջկոմների կուսակցական բյուջեի կատարման ընթացքն ստուգելիս՝ հանձնաժողովները երբեմն հարկ եղած ուշադրությունը չեն նվիրում դրա առանձին հոդվածներին, ինչպիսիք են կապիտալ շինարարության, հիմնական նորոգման, գրականության ձեռքբերման և այլ ծախքերը։ Մինչդեռ



նրանք պարտավոր են ստուգել, թե արդյոք առկա՞ են հաստատված նախագծանախահաշվային փաստաթղթերը, ճի՞շտ են վճարվում շինմոնտաժային աշխատանքների համար, ժամանակի՞ն է կատարվում վերջնահաշիվը կապալային շինարարական կազմակերպությունների հետ, պահպանվո՞ւմ են շինարարական և նորոգման աշխատանքների սահմանված ժամկետները։ Հանձնաժողովները պետք է հետևեն կուսակցական աշխատողների համար կառուցված բնակելի տներում բնակարանների ճիշտ բաշխմանը։ Քիչ չեն դեպքերը, երբ որոշ կուսակցական կոմիտեներում լրիվ չեն ծախսվում քաղլուսկաբինետների ու գրադարանների պահպանման և նրանց համար գրականության ձեռք բերման, ագիտացիայի ու պրոպագանդայի ծավալման նպատակով նախատեսված գումարները։ Թերածախսման դեպքեր տեղի են ունենում նաև կուսակցական ապարատի թափուր պաշտոնները երկար ժամանակ չզբաղեցվելու պատճառով։

Որպես կանոն, հանձնաժողովները բոլոր ստուգումների արդյունքների մասին պետք է կազմեն մանրամասն ակտ և ներկայացնեն համապատասխան կուսակցական կոմիտեներին՝ քննարկելու և որոշում ընդունելու համար։ Ընդ որում, բյուրոյի նիստին վերստուգիչ հանձնաժողովի նախագահի կամ անդամներից որևէ մեկի մասնակցությունը պարտադիր է։ Դժբախտաբար, միշտ չէ, որ պահպանվում է այս կարգը։ Շատ են դեպքերը, երբ առանձին քաղաքային ու շրջանային կոմիտեներ, քննարկելով իրենց եռամսյա, կիսամյա և տարեկան հաշվետվությունները, դրանք ներկայացնում են ՀԿԿ Կենտկոմ, առանց բյուջեի կատարման վերաբերյալ վերստուգիչ հանձնաժողովների ակտերի ու եզրակացության։ Նման խախտումներ կատարել են Երևանի քաղկոմը և նրա շրջանային կուսկոմիտեները։ Հարկ է չկրկնել այս թերությունները և հետագայում ճիշտ ղեկավարվել ՍՄԿԿ Կենտկոմի սահմանած կարգով։

Վերստուգիչ հանձնաժողովների ուշադրությունը պետք է սևեռված լինի կուսակցականների կողմից անդամավճարների մուծման կանոնադրական պարտականությունների կատարմանը։ Հիշեցնենք, որ անդամավճարների ժամանակին մուծումը ոչ թե սոսկ ֆինանսական հարց է, այլ կուսակցության անդամների կոմունիստական գիտակցականության, կուսակցական կարգապահության, պատասխանատվության չափանիշ։ Հետևաբար, վերստուգիչ հանձնաժողովներն անդամավճարների մուծման գործում եղած ոչ մի խախտում ու թերացում չպետք է անհետևանք թողնեն։ Դրանով իսկ նրանք իրենց ներդրումը կանեն կուսակցական կարգապահության ամրապնդման, կոմունիստների ակտիվության բարձրացման գործում։

Անժխտելի է, որ կուսակցական կոմիտեների և վերստուգիչ հանձնաժողովների արդյունավետ գործունեության շնորհիվ վերջին տարիներին նկատելիորեն բարելավվել է անդամավճարների մուծման և գանձման գործը, նվազել են այդ ասպարեզում կանոնադրական պահանջների խախտման դեպքերը։ Սակայն այս բնագավառում ևս դեռ լուրջ թերություններ ու թերացումներ կան։ Ստուգումները ցույց են տալիս, որ առանձին կոմունիստներ խախտում են կանոնադրական պահանջները, մեծ ուշացումներով, երբեմն մի քանի անգամ զգուշացնելուց հետո են մուծում անդամավճարները, ոմանք էլ անդամավճար չեն մուծում ստացված հավելյալ վարձատրությունից՝ համատեղության կարգով աշխատելու կամ արտադրական պլանները գերակատարելու համար ստացվող պարգևատրումներից, հոնորարներից և ուղղակի այլ եկամուտներից։ Նմանօրինակ խախտումներ առավելապես կատարում են երիտասարդ կոմունիստները, որոնցից ոմանք այդ պատճառով նույնիսկ դուրս են մնում կուսակցության շարքերից։ Դա նշանակում է, որ նրանց հետ տարվող անհատական բացատրական, դաստիարակչական աշխատանքը դեռևս անբավարար է։

Առանձին սկզբնական կուսկազմակերպություններում անփույթ են լրացվում և պահվում անդամավճարների մուծման ցուցակները, նրանցում կատարվում են ջնջումներ, ուղղումներ։ Շատ են դեպքերը, երբ կոմունիստներն անդամավճարները մուծելիս չեն ներկայացնում կուստոմսերը և անգամ չեն ստորագրում ցուցակներում։ Անդամավճարները ժամանակին չմուծելու դեպքերը չեն դառնում սկզբունքային քննարկման առարկա, կուսկազմակերպու-

թյունները երբեմն ներողամիտ են լինում կանոնադրական պահանջները կոպիտ կերպով խախտողների նկատմամբ։ Այսպիսի վիճակը, անշուշտ, խախտում է կուսակցական կարգապահական հիմքերը, և դրա դեմ պետք է սկզբունքային պայքար մղել։

Քաղաքային և շրջանային կուսակցական վերստուգիչ հանձնաժողովների խնդիրն է՝ խիստ վերահսկողություն սահմանել, որպեսզի սկզբնական կուսկազմակերպությունների բյուրոներն ու քարտուղարները բացատրական լայն աշխատանք տանեն կոմունիստների շրջանում և նրանց կողմից ապահովեն անդամավճարների ժամանակին մուծումը։ Ըստ «ՍՄԿԿ անդամների և անդամության թեկնածուների անդամավճարների մասին» հրահանգի՝ վերստուգիչ հանձնաժողովները պարտավոր են սկզբնական կուսկազմակերպություններում տարեկան առնվազն մեկ անգամ ստուգել անդամավճարների մուծման վիճակը։ Ուսումնասիրություններից պարզվել է, որ 1976 թ. առաջին կիսամյակում վերստուգիչ հանձնաժողովների մեծ մասը կատարել է այդ պահանջը։ Այս առումով մի շարք վերստուգիչ հանձնաժողովներ ունեն ուսանելի փորձ։ Գովելի է Ամասիայի, Անիի, Մարտունու, Հոկտեմբերյանի, Թալինի, Թումանյանի և էջմիածնի հանձնաժողովների գործունեությունը։ Նրանք ստուգումներն անցկացնում են կուսկոմիտեի աշխատողների և կուսակցական ակտիվի հետ։ Աշխատանքի կազմակերպման նման ձևը, հանձնաժողովի անդամների սակավաթվության պայմաններում, հնարավորություն է ընձեռում տարվա ընթացքում ուսումնասիրել բոլոր կազմակերպությունները և, այդպիսով, ապահովել հրահանգի պահանջների հետևողական կատարումը։

Մինչդեռ ՀԿԿ երևանի կազմակերպության Սովետականի շրջանի, Լենինականի քաղաքի, Աղիզբեկովի, Մասիսի, Սիսիանի, Ստեփանավանի շրջանների կուսկազմակերպությունների վերստուգիչ հանձնաժողովներն անդամավճարների գանձման ստուգման ասպարեզում թերանում են՝ իրենց պարտականությունները կատարելիս։

Մի շարք շրջաններում յուրաքանչյուր սկզբնական կուսկազմակերպությունում ստուգումներն անցկացվում են տարեկան 2—3 անգամ։ Այդպես վարվել են մասնավորապես Դիլիջան և Կիրովական քաղաքների, Անիի, Արթիկի, Ախուրյանի, Աշտարակի, Վարդենիսի, Եղեգնաձորի, Կալինինոյի կուսկազմակերպությունների վերստուգիչ հանձնաժողովները։ Մեր կարծիքով, դա ևս ճիշտ չէ։ Իհարկե, չի բացառվում կրկնակի ստուգումը, սակայն դա պետք է անել այն կազմակերպություններում, որտեղ նախկին ստուգման ժամանակ հայտաբերվել են թերություններ և ժամկետ է սահմանվել դրանց վերացման համար։

Հարկ է նշել, որ երբեմն ստուգումներն անցկացվում են մակերեսորեն։ Ստուգման ժամանակ հանձնաժողովների անդամները, ըստ էության, չեն խորանում հարցերի մեջ, ակտ չեն կազմում կամ կազմածն էլ թերի է լինում։ Նման ստուգումները միայն խանգարում են գործին։ Լավ է քիչ ստուգել, բայց՝ բարձր որակով։ Եթե ստուգված կազմակերպությունների աշխատանքի թերությունները զգալի են, ապա, որպես կանոն, անհրաժեշտ է ստուգման արդյունքները քննարկել կուսբյուրոների նիստում, իսկ անհրաժեշտության դեպքում՝ նաև կուսակցական ժողովում։ Ընդ որում, շատ ցանկալի և անհրաժեշտ է, որպեսզի հանձնաժողովի նախագահը կամ անդամներից մեկն ու մեկը հանդես գա, հանգամանորեն բացատրի կուսակցության կանոնադրության պահանջները, հասնի այն բանին, որ շուտափույթ վերացվեն հայտաբերված թերությունները։

Մեր ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ Աշտարակի, Գորիսի, Գուգարքի, Նոյեմբերյանի և մի շարք այլ կուսկազմակերպություններում գանձված անդամավճարները ժամանակին չեն մուծում խնայդրամարկղ։ Դա կանոնադրության կոպիտ խախտում է, որը երբեմն չարաշահման տեղիք է տալիս։ Այս կարգի խախտումներ կատարողի նկատմամբ պետք է լինել անաչառ, կիրառել կանոնադրական պահանջների բոլոր միջոցները։

Շատ ցանկալի է, որ վերստուգիչ հանձնաժողովներն ստուգեն նաև խնայդրամարկղները, պարզեն՝ արդյոք մուծված գումարները ժամանակի՞ն են փո-



խանցվում կուսակցության բյուջեի պետբանկի ընթացիկ հաշվին։ Մինչդեռ նրանք այդպիսի ստուգումներ գրեթե չեն կատարում։

Վերստուգիչ հանձնաժողովները լիովին կարդարացնեն կուսակցության մեծ վստահությունը և հսկայական օգնություն ցույց կտան կուսկազմակերպություններին, եթե հետևողականորեն զբաղվեն անդամավճարների գանձման ստուգմամբ, այդ գործը դնեն ամուր հիմքերի վրա։

Վերստուգիչ հանձնաժողովների կարևոր պարտականություններից մեկը կուսակցական մարմիններում ու հրատարակչություններում, թերթերի ու հանդեսների խմբագրություններում աշխատավորներից ստացված նամակների, դիմումների ու գանգատների քննարկմանն ու ընթացք տալուն հետևելն է։ ՍՄԿԿ XXV համագումարը մեծ ուշադրություն նվիրեց աշխատավորների նամակներին, շեշտեց դրանց հասարակական-քաղաքական կարևոր նշանակությունը, դրանք համարեց մասսաների հետ կուսակցության կապի ձևերից մեկը։ Համագումարը նշեց, որ նամակների քանակի ավելացումն ու բովանդակությունն արտացոլում են սովետական մարդկանց գիտակցականության, հասարակական ակտիվության, քաղաքական հասունության աճը, նրանց ջերմ հոգատարությունը սոցիալիստական հայրենիքի հետագա ծաղկման, անսահման վստահությունը կոմունիստական կուսակցության քաղաքականության և նրա լենինյան կուրսի ճշմարտացիության նկատմամբ։ Այս ասպարեզում ձեռք բերված հաջողությունների հետ մեկտեղ, հանրապետության կուսակցական որոշ մարմիններում դեռևս կան թերություններ։ Բնակչության նամակների ու գանգատների ընդունման ու քննարկման կազմակերպման գործում չկա հստակություն, անբավարար են կատարվում դրանց վերաբերյալ կուսակցության ցուցումները։ Քաղաքային ու շրջանային կուսկազմակերպությունների նախորդ կոնֆերանսներում քննադատական դիտողություններ արվեցին առանձին սկզբնական կուսկազմակերպությունների, աշխատավորների դեպուտատների քաղաքային ու շրջանային սովետների, արդյունաբերական ձեռնարկությունների և տնտեսական մարմինների ղեկավարների հասցեին։ Նշվեց, որ նրանք երբեմն ձևական, բյուրոկրատական վերաբերմունք են ցույց տալիս աշխատավորների նամակների ու գանգատների քննարկման նկատմամբ, ձգձգում են քննարկման ժամկետները, ընդունում ոչ կոնկրետ որոշումներ, հաճախ դիմումները քննարկման են ուղարկում ստորադաս մարմիններին, երբեմն՝ նույնիսկ այն կազմակերպություններին և անձանց, որոնց դեմ տրված է դիմումը կամ գանգատը։ Դրա պատճառով շատ դեպքերում նույն անձնավորություններից ստացվում են կրկնվող նամակներ ու գանգատներ։ Այդ բնույթի է 1975 թ. Հայաստանի կոմկուսի Կենտկոմում ստացված նամակների, դիմումների ու գանգատների ավելի քան 15 տոկոսը։ Չի նվազել նաև ՍՄԿԿ Կենտկոմին և կենտրոնական մյուս մարմիններին հասցեագրված այն դիմումների ու գանգատների քանակը, որոնք ուղարկվել են հանրապետության վերադաս մարմիններին քննելու և ընթացք տալու համար։

ՍՄԿԿ Կենտկոմը վերջերս որոշում ընդունեց «ՍՄԿԿ XXV համագումարի որոշումների լույսի տակ աշխատավորների նամակների հետ տարվող աշխատանքի հետագա կատարելագործման մասին»։ Կենտկոմը նշեց, որ կուսակցության XXV համագումարի նախապատրաստումն ու անցկացումը բարձրացրին աշխատավորների քաղաքական ակտիվությունը և աշխատանքային խանդավառությունը։ Դրանք դրսևորվեցին ձեռնարկությունների, կոլտնտեսությունների, սովխոզների կոլեկտիվների և սովետական առանձին քաղաքացիների՝ համագումարին և ՍՄԿԿ Կենտկոմին ուղղված նամակներում, հեռագրերում և աշխատանքային զեկույցներում։ ՍՄԿԿ Կենտկոմը, առաջնորդվելով կուսակցության XXV համագումարի որոշումներով, առաջարկեց կուսակցական մարմիններին՝ անհրաժեշտ միջոցներ ձեռնարկել աշխատավորների նամակների հետ տարվող աշխատանքի հետագա բարելավման համար, կարճ ժամանակամիջոցում ընթացք տալ համագումարի հասցեով ստացված նամակներին, ուշադիր և համակողմանի քննարկել առաջադրված հարցերը, խիստ հսկողություն սահմանել դրանց լուծման նկատմամբ, մշակվող միջոցառումներում

ավելի լրիվ օգտագործել բանվորների, ինժեներների, կոլտնտեսականների, գիտության և կուլտուրայի աշխատողների առաջարկությունների ու ցանկությունները։ Խնդիր դրվեց՝ կուսակցական մարմինների, նրանց պլենումների և բյուրոների, աշխատավորների դեպուտատների սովետների գործկոմների և սեսիաների, մինիստրությունների և գերատեսչությունների կոլեգիաների նիստերում քննարկման առարկա դարձնել տեղերում ստացված դիմում-բողոքներին ընթացք տալու վիճակը, այդ գործում լայնորեն ներգրավել կուսակցական-սովետական ակտիվը։ Կենտկոմը պահանջեց աշխատանքի պրակտիկա դարձնել դիմումների և նամակների կոմպլեքսային ուսումնասիրությունը, դրանց վերլուծության հիման վրա անել անհրաժեշտ հետևություններ՝ ընթացիկ և հեռանկարային խնդիրները ճիշտ լուծելու համար։

Աշխատավորների դիմում-բողոքների հետ տարվող դրական աշխատանքի լավ օրինակ կարող է ծառայել ՀԿԿ Կենտկոմի ընդհանուր բաժնի հաշվառման դրվածքը։ Այստեղ ամեն ամիս ամփոփվում են Կենտկոմի հասցեով ստացված բոլոր նամակները, դիմումները և գանգատները, ցույց է տրվում դրանց բնույթը։ Դա շատ է օգնում Կենտկոմի ղեկավարությանը՝ անելու անհրաժեշտ հետևություններ, մշակելու համապատասխան միջոցառումներ կուսակցական ու պետական այդ կարևոր գործն ամուր հիմքերի վրա դնելու համար։ Մի շարք կուսակցական մարմիններում դիմումների մեծ մասին ընթացք են տալիս քարտուղարները, իսկ կարևոր և ընդհանուր բնույթ կրող դիմումները քննարկվում են բյուրոյի նիստերում և կոնկրետ միջոցներ են ձեռնարկվում՝ ժամանակին պատասխանելու դիմողի հարցադրումներին։ Ստուգումները միաժամանակ ցույց են տալիս, որ ոչ բոլոր կուսակցական կոմիտեներում է բարվոք վիճակում դիմում-բողոքների ստացման և ընթացք տալու գործը։ Շատ դեպքերում հարցի լուծումը հանձնարարվում է կոմիտեների այլ աշխատողների, մինչդեռ, ըստ սահմանված կարգի, դրա համար պատասխանատու է քարտուղարը։ Առանձին կազմակերպություններում հարկ եղած ուշադրություն չի նվիրվում նաև կենտրոնական մարմիններից ստացված դիմում-բողոքների գրանցմանն ու ընթացք տալուն։

Որո՞նք են թերությունների հիմնական պատճառները։ Մեր կարծիքով, առաջին հերթին, գաղափարա-դաստիարակչական աշխատանքի անբավարար կազմակերպումն է աշխատավորների շրջանում, նրանց կողմից պետական և աշխատանքային օրենսդրության վերաբերյալ գիտելիքների ոչ լրիվ ըմբռնումը, սովետական և տնտեսական կազմակերպությունների ղեկավարների երբեմն դրսևորած բյուրոկրատիզմի, քաշքշուկի և անհոգի վերաբերմունքի դեպքերը, այդ գործերին հանրապետության պարբերական մամուլի, ռադիոյի և հեռուստատեսության ոչ բավարար միջամտությունը և այլն։ Կուսակցության Լենինականի քաղկոմում, Ազիզբեկովի, Արարատի, Եղեգնաձորի, Մարտունու, Ստեփանավանի, Շամշադինի շրջկոմներում դիմումների և բողոքների մեծ մասը հասցեագրվում է տեղի սովետական և տնտեսական կազմակերպություններին՝ քննարկելու և ընթացք տալու համար։ Ընդ որում, ուղարկված դիմում-բողոքների պահանջների կատարման նկատմամբ վերահսկողություն չի սահմանվում և այդ է պատճառը, որ նրանց մի մասը մնում է անհետևանք։ Վերստուգիչ հանձնաժողովները պետք է խիստ վերահսկողություն սահմանեն այս կարևոր կուսակցական և պետական նշանակություն ունեցող հարցի նկատմամբ։ Նրանց պարտքն է տարին 1—2 անգամ ստուգել կուսակցական կոմիտեների և սկզբնական կուսկազմակերպությունների գործունեությունը դիմում-բողոքներին ընթացք տալու ասպարեզում, անմիջապես միջամտել գործին, օգնել հայտաբերված թերությունների անհապաղ վերացմանը։ Ցանկալի է, որ Հայաստանի կոմկուսակցության Կենտկոմի ընդհանուր բաժնի դրական աշխատանքի փորձն ընդօրինակեն բոլոր կուսակցական մարմինները։

Վերստուգիչ հանձնաժողովի պարտականությունն է նաև ստուգել, թե ինչպես է կուսակցական կոմիտեներում կազմակերպված աշխատավորության ընդունելությունը։ Սա էական հարց է։ Աշխատավորությունը խոր հարգանքով է վերաբերվում մեր կուսակցական մարմիններին, նրանց ղեկավարներին։



Այցելելով կուսակցական կոմիտե՝ նրանք հուսով են, որ իրենց առաջադրած խնդիրները և պահանջները կքննարկվեն օբյեկտիվորեն, դրանց կտրվեն սպառիչ պատասխաններ։ Ուստի, ընդունելության սահմանված օրերի ու ժամերի մշտական ապահովումը պարտադիր է բոլոր կուսակցական մարմինների ղեկավարների համար։ Այս գործում դրական օրինակներ ունեն Կիրովականի և Դիլիջանի կուսքաղկոմները և մի շարք շրջկոմներ։ Սակայն քիչ չեն դեպքերը, երբ շրջկոմներում ու քաղկոմներում խախտվում են ընդունելության մշտական օրերը և ժամերը, բացակայում են ղեկավար ընկերներին փոխարինողները։ Անկազմակերպվածության նման և այլ դեպքերը մարդկանց մոտ հարուցում են դժգոհություն և, եթե այն կրկնվում է մի քանի անգամ, ապա՝ թերահավատություն։

Վերջերս մի շարք կուսակցական կոմիտեներում մշակվել են ընդունելության կազմակերպման նոր ձևեր։ Կիրառվում է հասարակական ընդունարանի պրակտիկան, քաղկոմի կամ շրջկոմի անդամները հերթով ընդունում են աշխատավորներին, հնարավորության սահմաններում լուծում են հարցերը, իսկ անհրաժեշտության դեպքում՝ զեկուցում կուսակցական կոմիտեների ղեկավարությանը, վերահսկողություն իրականացնում առանձին հարցերին ընթացք տալու նկատմամբ։ Որոշ կոմիտեներում բաժնի վարիչները կատարում են նախնական ընդունելություն, որը հնարավորություն է ընձեռում զգալիորեն կրճատել և թեթևացնել կոմիտեի քարտուղարի գործը։ Առանձին կոմիտեներում սահմանված է այսպիսի կարգ՝ քարտուղարի բացակայության ժամանակ նրան փոխարինում է մեկ ուրիշը։ Աշխատանքի նման կազմակերպումը բացառում է այն դեպքերը, երբ քաղաքացին հեռանում է առանց իր առաջադրած հարցի լուծումն ստանալու։

Մի քանի խոսք վերստուգիչ հանձնաժողովների աշխատանքի կազմակերպման մասին։ Ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ երբեմն հանձնաժողովներն աշխատանքի կոնկրետ պլան չեն կազմում և այն չեն քննարկում իրենց նիստերում։ Մինչդեռ աշխատանքի պլանի կազմումը և հաստատումը ձևականություն չեն. պլանը մոբիլիզացնում է հանձնաժողովի յուրաքանչյուր անդամին՝ անթերի կատարելու իր պարտականությունները։ Անհրաժեշտ է, որպեսզի հանձնաժողովները պարբերաբար ստուգեն պլանի կատարման ընթացքը և աշխատանքի վիճակը քննարկեն իրենց նիստերում։

Վերստուգիչ հանձնաժողովը կոլեգիալ օրգան է, ուստի, անհրաժեշտ է հաճախակի հավաքել նրա անդամներին, խորհրդակցել, մշակել միջոցառումներ՝ կուսակցական-կազմակերպական աշխատանքի ֆինանսա-բյուջետային գործունեությունը բարելավելու համար։ Այդ նպատակով վերստուգիչ հանձնաժողովի անդամները պետք է հաճախակի մասնակցեն կուսակցական կոմիտեների բյուրոների, պլենումների նիստերին, ելույթներ ունենան, բացատրեն վերստուգիչ հանձնաժողովների պահանջները, կանոնադրական դրույթները, ակտիվորեն մասնակցեն կոմիտեներին առաջադրվող կազմակերպական հարցերի լուծմանը։ Ցանկալի և անհրաժեշտ է, որպեսզի հանձնաժողովների նախագահներն ու անդամները պարբերաբար ելույթ ունենան շրջանային ու հանրապետական մամուլում, ռադիոյով և հեռուստատեսությամբ, լուսաբանեն վերստուգիչ հանձնաժողովների դրական աշխատանքի փորձը։

Վերջերս ՀԿԿ Կենտկոմում տեղի ունեցավ խորհրդակցություն, որին մասնակցում էին կուսակցական կազմակերպությունների վերստուգիչ հանձնաժողովների նախագահները և Կենտկոմի բաժինների մի շարք ղեկավար աշխատողներ։

Պետք է հուսալ, որ կուսակցական վերստուգիչ հանձնաժողովները հետայսու կբարելավեն իրենց գործունեությունը, կկատարելագործեն աշխատանքի ոճը, կհարստացնեն բովանդակությունը։ Նրանք ջանք չեն խնայի՝ արդարացնելու կուսակցական կազմակերպությունների մեծ վստահությունը, կնպաստեն ՍՄԿԿ XXV համագումարի առաջադրած սոցիալ-տնտեսական խնդիրների լուծմանը։

# ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԻ ԲԱՐՕՐՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ

**Ռ. Ա. ԱՐԶՈՒՄԱՆՅԱՆ**
ՀԿԿ Լենինականի քաղկոմի առաջին քարտուղար

*Կոմունիստական շինարարության արդի փուլում մեր երկրում լուծվում են սոցիալ-տնտեսական, կազմակերպական և գաղափարա-քաղաքական բազմաթիվ պրոբլեմներ: Այժմ ավելի են աճում կուսակցական կազմակերպությունների դերն ու պատասխանատվությունը տասներորդ հնգամյակի առաջադրանքների կատարման համար աշխատավորների ուժերի մոբիլիզացման, աշխատանքի և կառավարման մեթոդների կատարելագործման, ժողովրդական տնտեսության կուսակցական ղեկավարման բարելավման, մարդկանց կոմունիստական դաստիարակության գործում: Այդ հույժ պատասխանատու խնդիրների լուծման համար կուսկազմակերպությունները պետք է ծավալեն բանիմաց, արդյունավետ գործունեություն, լինեն առավել մարտունակ:*

*Կուսակցական մարմինների, սկզբնական կուսկազմակերպությունների ակտիվ գործունեությամբ, հարցերի լուծման կարողությամբ են պայմանավորված մեր կուսակցության քաղաքականության հետևողական իրականացումը, ժողովրդական տնտեսության անշեղ զարգացումը, կուլտուրական շինարարության վերելքը: Այդ ամենն ապահովելու նպատակով է, որ նրանք պարբերաբար քննարկում են բազմապիսի հարցեր, ընդունում տարբեր որոշումներ: Այդ պրոբլեմների լուծման համար շատ կարևոր է որոշումների կատարման ստուգման խելամիտ կազմակերպումը: Որոշումները կուսակցության անդամների կոլեկտիվ մտքի արտահայտությունն ու արգասիքն են: Դրանց կատարման ապահովումը յուրաքանչյուր կուսկազմակերպության առաջնահերթ խնդիրն է:*

*Կատարման ստուգումը, սովորեցնում է Վ. Ի. Լենինը, կառավարման ամենակարևոր պայմանն է: Ուստի դիրեկտիվների կատարման հսկողությունը մշտապես պետք է գտնվի կուսկազմակերպությունների ուշադրության կենտրոնում: Մեր օրերում կոմունիստական ծավալուն շինարարության բարդ խնդիրների հաջող լուծման, սոցիալիստական տնտեսավարության գիտական սկզբունքների հետևողական կենսագործման, պլանավորման ու կառավարման նոր մեթոդների ներդրման համար անհրաժեշտ է անթերի և ժամանակին կատարել կուսակցության և կառավարության որոշումներն ու դիրեկտիվները:*

*Կուսակցությունը կատարման ստուգումը միշտ էլ համարել է կազմակերպական աշխատանքի կարևոր բաղկացուցիչ մասը: Ահա թե ինչու ՍՄԿԿ XXV համագումարը վերստին հիմնավորեց որոշումների կատարման հսկողության և վերահսկողության կենսական անհրաժեշտությունը: Համագումարին տված ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ Լ. Ի. Բրեժնևը նշեց. «Ընդունված որոշումների կատարման վերահսկողությունն ու ստուգումը կազմակերպական աշխատանքի կարևորագույն մասն են: Դա յուրաքանչյուր կուսակցական, սովետական և տնտեսական ղեկավարի, յուրաքանչյուր կուսակցական մարմնի, յուրաքանչյուր սկզբնական կուսկազմակերպության գործն է»* (ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետվությունը և կուսակցության հերթական խնդիրները ներքին ու արտաքին քաղաքականության բնագավառում, *էջ 114):*

*Բարձր պահանջկոտությունը, մշտական և սիստեմատիկ հսկողությունը, կատարման փաստացի ստուգումը զգաստացնում և դաստիարակում են կադրերին, բարձրացնում նրանց պատասխանատվությունը հանձնարարված գործի*



*նկատմամբ, ամրապնդում կուսակցական ու պետական կարգապահությունը: Հսկողությունից դուրս մնացած նույնիսկ լավագույն աշխատողներին կարող են համակել ինքնահանգստացման տրամադրությունը, սեփական թերությունները չնկատելու միտումը: Եվ, որպեսզի դրանք բացառվեն, կուսկազմակերպությունները պետք է մշտապես հսկեն կադրերի գործունեությանը, ժամանակին բացահայտեն նրանց սխալներն ու թերությունները, ուղղեն մարդկանց, սովորեցնեն ղեկավարման արվեստը:*

*Վ. Ի. Լենինը շեշտում էր, որ կատարման ստուգումը ինքնանպատակ չէ, այլ կենդանի, կազմակերպական աշխատանք, որի էությունը ոչ այնքան մեղավորների հայտաբերումն է, որքան ընդունված որոշումների անվերապահ կատարումը, թերությունների ժամանակին կանխումը: Այդ նկատառումով էլ անցած տարի կուսակցության Լենինականի քաղկոմի պլենումը քննարկեց «Վերադաս ու սեփական որոշումների կատարման և հսկողության սիստեմի կատարելագործման ասպարեզում տարվող աշխատանքի վիճակը՝ ՀԿԿ Կենտկոմի հունվարյան (1975 թ.) պլենումի որոշումների լույսի ներքո»:*

*Պլենումը հանրագումարի բերեց որոշումների կատարման ստուգման ասպարեզում կուսկազմակերպությունների ծավալած գործունեությունը, ընդհանրացրեց լավն ու ուսանելին և, միաժամանակ, ելնելով կուսակցության առաջադրած պահանջներից, համակողմանի վեր հանեց այդ գործում եղած թերությունները: Պարզվեց, որ վերահսկողության անբավարար դրվածքը, որոշումների կատարման ստուգման բացակայությունը հանգեցնում են անցանկալի հետևանքների: Դրանք պարարտ հող են ստեղծում անազնիվ արարքների, չարաշահումների, մեր հասարակությանը խորթ ու անհարիր երևույթների առաջացման համար: Պլենումն անհանդուրժելի համարեց, երբ առանձին հիմնարկ-ձեռնարկությունների ղեկավարներ, սկզբնական կուսկազմակերպություններ գործնական քայլեր չեն անում՝ հետևողականորեն կատարելու ինչպես սեփական, այնպես էլ վերադաս մարմինների որոշումները: Պատահել են դեպքեր, երբ ընդունված որոշման կենսագործման համար, կոնկրետ կազմակերպական միջոցներ ձեռնարկելու փոխարեն, նրանք գերադասել են նույն հարցը կրկին քննարկել: Իսկ դա ձևականության, անպատասխանատվության բնորոշ օրինակ է: Այս առնչությամբ քննադատվեցին քաղաքային սովետի, մսի-պահածոների կոմբինատի, կաթի, հացի գործարանների և այլ կազմակերպություններ, որոնք ընդունել են տարբեր որոշումներ, սահմանել ժամկետներ, հանձնարարություններ տվել համապատասխան մարդկանց, սակայն մոռացել են կիրառել կատարման ստուգման և վերահսկողության լենինյան սկզբունքը, գործնական քայլեր չեն արել՝ վերացնելու եղած թերությունները:*

*Ընդունած որոշումների կատարման բնագավառում պլենումը բացահայտեց նաև այլ կարգի թերություններ և գործնական միջոցառումներ մշակեց վիճակը բարելավելու համար: Սկզբնական կուսկազմակերպություններին հանձնարարվեց կայացնել հիմնավորված, կոնկրետ որոշումներ, ուր ցույց տրվեն թերությունների վերացման գործնական ուղիները, մշտապես ուշադրության կենտրոնում պահելով դրանց կատարման ստուգման կազմակերպումը:*

*Քաղաքային կոմիտեի ձեռնարկումները տվեցին որոշակի արդյունք: Դրանք, առաջին հերթին, նպաստեցին ներկուսակցական աշխատանքի մակարդակի, կուսկազմակերպությունների մարտունակության բարձրացմանը, արտադրության կուսակցական ղեկավարման ուժեղացմանը: Այժմ աշխատանքում արմատավորվել են նոր ձևեր, նոր մեթոդներ, ստեղծվել են վերահսկողության գործը պատշաճ հիմքերի վրա դնելու նախադրյալներ: Քաղկոմում և մի շարք սկզբնական կուսկազմակերպություններում մշակվել է որոշումների կատարման վերահսկողության հստակ սիստեմ: Վերադաս մարմինների և քաղկոմի բյուրոյի որոշումներն ընդհանուր բաժնում սիստեմավորվում են հսկողական քարտերում, նշվում են կատարման ժամկետները և պատասխանատու անձինք: Վերահսկողություն իրականացնող անձը տվյալ որոշմանը վերաբերող նյութերը պահում է իր մոտ և հետևում, որ դրանք կատարվեն սահմանված ժամկետում: Որոշումների կենսագործման նպատակով սկզբնական կուսկազմակերպություններում իրականացվող միջոցառումներին (քննարկում-*

ներ, խորհրդակցություններ, սեմինար պարապմունքներ) մասնակցում են կուսքաղկոմի ներկայացուցիչները։ Այնուհետև սահմանված ժամկետում որոշումներով տրված կոնկրետ հանձնարարությունների կատարմանը վերաբերող նյութերը ներկայացվում են քաղաքային կոմիտե։ Այստեղ, համակողմանի ուսումնասիրությունից հետո, երբ պարզվում է, որ ընդունված որոշումը կատարվել է, քաղկոմի բյուրոն այն հանում է հսկողությունից։ Հաճախ ձգձգվում է որոշումը հսկողությունից հանելու ժամկետը։ Նման դեպքերում քաղկոմը գործնական օգնություն է ցույց տալիս որոշումն իրականացնող մարմիններին ու անձանց՝ հաղթահարելու առաջացած օբյեկտիվ կամ սուբյեկտիվ դժվարությունները։

Մենք ձգտում ենք մշտապես կատարելագործել որոշումների կատարման հսկողության ձևերն ու մեթոդները։ Այսպես, 1976 թ. սկզբներին քաղկոմի բյուրոյում քննարկվեց «Սոցիալիստական կարգապահության ամրապնդման ասպարեզում լոկոմոտիվային դեպոյի արհմիութենական կազմակերպության կատարած աշխատանքի մասին» հարցը։ Պարզվեց, որ չնայած կատարված դրական աշխատանքին, արհմիութենական կազմակերպության գործունեության մեջ տեղ են գտել լուրջ թերություններ։ Անուշադրության է մատնվել մարդկանց կոմունիստական ու աշխատանքային դաստիարակությունը, կոմունիստական աշխատանքի դպրոցները գործում են անբավարար, թույլ է կարգապահությունը։ 1975 թ. վարչական տույժ է տրվել 106 մարդու, որոնցից 10-ին՝ խոտանի, 34-ին՝ աշխատանքից անհարգելի բացակայելու համար։ Զգալի տոկոս է կազմում հոսունությունը, նկատվում են գործալքումներ, արհմիութենական ժողովներն անցնում են ցածր մակարդակով, չեն ծավալվում քննադատությունն ու ինքնաքննադատությունը։

Թվարկված և այլ թերությունների վերացման նպատակով ընդունվեց համապատասխան որոշում։ Բայց մի՞թե որոշմամբ ու սոսկ նախատինքով հնարավոր է շտկել վիճակը։ Անհրաժեշտ էին քաղկոմի ակտիվ միջամտությունը, գործնական օգնությունը, ինչպես և անմիջական մասնակցությունը արհմիութենական կազմակերպության աշխատանքի բարելավմանը։ Բյուրոն կազմակերպական բաժնի և երկաթուղային հանգույցի կուսկոմիտեին հանձնարարեց լրջորեն զբաղվել այդ կազմակերպության գործերով։ Քաղկոմի աշխատողները եղան տեղում, զրուցեցին մարդկանց հետ, նրանց ծանոթացրին բյուրոյի որոշմանը, սեմինար-խորհրդակցություն հրավիրեցին կուսակցական ու արհմիութենական ակտիվի, ինչպես նաև հանգույցի մեջ մտնող հիմնարկ-ձեռնարկությունների տնտեսական ղեկավարների համար՝ արհմիութենական աշխատանքի կազմակերպման ձևերի ու մեթոդների վերաբերյալ։ Համակողմանի օգնությունը մեծապես նպաստեց լոկոմոտիվային դեպոյի արհմիութենական կազմակերպության գործունեության աշխուժացմանն ու բարելավմանը։ Հուլիսին անդրադարձանք այդ որոշման կատարմանը։ Նշվեց, որ արհմիութենական կազմակերպությունում տեղի են ունեցել լուրջ փոփոխություններ։

Քաղաքային կոմիտեն, սահմանված կարգին համապատասխան, պարբերաբար անցկացնում է սկզբնական կուսկազմակերպությունների գործունեության կոմպլեքսային ստուգում։ Քաղկոմի բյուրոյի նիստերում քննարկվում են հիմնարկ-ձեռնարկությունների ֆինանսատնտեսական աշխատանքների վիճակը, կուսկազմակերպությունների հաշվետվությունները։ Նման դեպքերում արծարծվում են նաև որոշումների կատարման հարցերը, պարզվում են, թե տնտեսական մարմինները, կուսկազմակերպությունները ինչպիսի որոշումներ են ընդունել, միջոցառումներ մշակել ու իրականացրել կամ ինչ խոչընդոտներ կան այդ գործում։ Այդ ուսումնասիրություններն ու քննարկումները հնարավորություն են ընձեռում վերահսկողությունից դուրս չթողնելու կուսակցական ու տնտեսական մարմինների գործունեության և ոչ մի բնագավառ։ Այն միաժամանակ մեծ չափով նպաստում է կուսկազմակերպությունների և տնտեսական ղեկավարների պատասխանատվության բարձրացմանը։

Հսկողությունը կատարման ստուգման լավ ու փորձված միջոց է, գործնական արդյունքները՝ դրա արդյունավետության չափանիշը։ Ինչպես նշել է Վ. Ի. Լենինը, մասսաները կհասկանան և կգնահատեն միայն պրակտիկ աշխատան-



քը, պրակտիկ հաջողությունները։ Լենինյան այս դրույթի իրականացման համար անհրաժեշտ է, կատարման ստուգումը կազմակերպելիս, ամենից առաջ ընտրել արդյունավետ միջոցներ, որոնք ապահովեն ներգործունությունը մարդկանց վարքագծի վրա, նպաստեն իրավիճակի բարելավմանը։ Նման միջոցներից է կոմունիստների և աշխատավորության բարձրացրած հարցերի առթիվ ընդունված որոշումների ժամանակին կատարումը։

Կոմունիստները, աշխատավորները պահանջում են տնտեսական ու սովետական մարմիններից, կուսքաղկոմից ու սկզբնական կուսկազմակերպություններից՝ լուծել իրենց հուզող հարցերը։ Դրանց առնչությամբ ընդունվում են համապատասխան որոշումներ։ Գործն այստեղ չպետք է թողնել կեսճանապարհին, ամեն կերպ հարկ է լուծել, այլապես պաշտոնատար անձը կամ կազմակերպությունը կկորցնեն վստահությունը, կհեղինակազրկվեն։ Ուստի, եթե որոշում ես ընդունել, խոստացել, ջանա անպայման կատարել։ Այդ դեպքում արդեն, ինչպես սովորեցնում էր Վ. Ի. Լենինը, մասսաները կգան քո հետևից, կհավատան քո խոսքին, կապավինեն քո ուժին և պատրաստակամությամբ կնվիրաբերվեն ձեռնարկածդ գործին։

Աշխատավորական կոլեկտիվներում հաճախ էին արծարծվում առևտրի արդյունավետ կազմակերպման, սպասարկման կուլտուրայի բարձրացման հարցերը։ Խորապես ուսումնասիրելով աշխատավորության առաջարկությունները՝ դրանք հանգամանորեն քննարկեցինք քաղաքային կոմիտեի բյուրոյում, մշակեցինք կոմպլեքսային միջոցառումներ՝ առևտրական օբյեկտների մասնագիտացման, սպասարկման կուլտուրայի բարձրացման, կադրերի ընտրության ու դաստիարակության գործի բարելավման նպատակով։ Ձեռնարկված միջոցների շնորհիվ ներդրվեցին սպասարկման առաջավոր եղանակներ, կատարելագործվեցին առևտրի կազմակերպման ձևերը։ Հատկապես մեծ ուշադրություն նվիրվեց առևտրական օբյեկտների մասնագիտացմանը։ Այսօր արդեն 110 օբյեկտներ մասնագիտացված են, 14-ը գործում են բնակչության պահանջարկի կոմպլեքսային ապահովման սկզբունքով։ Ընթացիկ տարվա մայիսին քաղաքային կոմիտեի բյուրոն հավանություն տվեց հղկող հաստոցների գործարանի սկզբնական կուսկազմակերպության նախաձեռնությանը՝ մրգեր ու բանջարեղեն վաճառող բանվորական բրիգադների կազմակերպման վերաբերյալ։ Այդ նախաձեռնությունը գտավ նոր հետևորդներ։ Ստեղծվեցին այդպիսի վեց օբյեկտներ, ուր գործարանների բանվորներն իրենց աշխատանքից դուրս, հոժարակամ մասնակցում են առևտրի կազմակերպմանը, ապրանքների իրացման պրոցեսի վերահսկմանը, որը միտում է՝ բացառել ամեն մի ապօրինություն ու չարաշահում առևտրի ցանցում, բարելավել բնակչության սպասարկումը։ Վերոհիշյալ և մի շարք այլ միջոցառումներ արժանացան բնակչության ջերմ հավանությանը։ Այլ խոսքով, կարողացանք լուրջ բեկում մտցնել բնակչության սպասարկման գործում, կատարել աշխատավորական կոլեկտիվների առաջարկությունները, ինչպես և այդ առթիվ մեր ընդունած որոշումները։

Քաղաքային կոմիտեն կուսակցական հաշվետու-ընտրական և ընթացիկ ժողովներում արված առաջարկություններն ամփոփում և քննարկում է բյուրոյի նիստերում, համապատասխան կազմակերպություններին հանձնարարություններ տալիս դրանց կատարման համար։ Քննադատական դիտողությունների վերաբերյալ բյուրոյի ընդունած որոշումների վերահսկողությունն իրականացնում են քաղկոմի բաժինները, որոնք ապահովում են և անհրաժեշտ օգնությունը։ Այդ ամենի շնորհիվ այս տարի զգալիորեն բարելավվել է դպրոցների, բուժհիմնարկությունների գործունեությունը, ջեռուցումը, քաղաքի բարեկարգումը, ինչպես և բնակչության կոմունալ-կենցաղային սպասարկումը։

Քաղկոմի պլենումներում, ակտիվի խորհրդակցություններում, կուսակցական աշխատողի օր միջոցառման ժամանակ քաղաքային կոմիտեն կուսակցական ակտիվին ինֆորմացիա է տալիս ընդունված որոշումների կատարման մասին։ Կուսակցական աշխատողի օրը կուսկազմակերպությունների քարտուղարները հանդես են գալիս նորանոր առաջարկություններով ու դիտողություններով, որոշումների կատարման վերաբերյալ հաղորդումներով։ Այլ խոսքով, այդ օրը տեղի է ունենում փորձի փոխանակություն, ընդհանրացվում են որո-

շումների կատարման ստուգման կազմակերպման լավագույն, ուսանելի ձևերն ու եղանակները։

Որոշումների ժամանակին և լրիվ կենսագործում, յուրաքանչյուրի անձնական պատասխանատվության սահմանում — այս է մեր մի շարք սկզբնական կուսկազմակերպությունների գործունեության հիմնական բովանդակությունը։ Տեքստիլ կոմբինատի, երկաթուղային հանգույցի, կարի, Լուկաշինի անվան մանվածքային ֆաբրիկաների և այլ ձեռնարկությունների սկզբնական կուսկազմակերպությունների հաջողությունների գրավականը նաև կուսակցական վերադաս մարմինների, ինչպես և իրենց որոշումների կատարման վերահսկողության հմուտ կազմակերպումն է։ Այդ կազմակերպություններում պրակտիկա է դարձել՝ ժողովներում կոմունիստներին ինֆորմացիա տալ ընդունված որոշումների կատարման ընթացքի և արդյունքների մասին։ Կուսկազմակերպությունները, նրանց կոմիտեներն ու բյուրոները քննարկում են արտադրության արդյունավետության ու որակի բարձրացման, գիտատեխնիկական առաջընթացի արագացման, սոցիալիստական մրցության կազմակերպման, աշխատավորների և կոմունիստների քաղաքական դաստիարակությանը վերաբերող հարցեր, ընդունում հիմնավորված, կոնկրետ որոշումներ։

Որոշումների կատարումը և դրա ստուգումը կազմակերպելու գործում կուսակցական կոմիտեներին ու բյուրոներին օգնում են արտադրամասային կուսկազմակերպություններն ու կուսխմբերը։ Այս առումով բնորոշ է կարի ֆաբրիկայի առաջին տեղամասի կուսկազմակերպության բյուրոյի (քարտուղար՝ Ռ. Գալոյան) աշխատանքը։ Կուսբյուրոն պարբերաբար անդրադառնում է որոշումների կատարմանը, ջանում իրականացնել մշակած ամեն մի միջոցառում, պայքարում թերությունների ու թերացումների դեմ։ Այստեղ սկիզբ է առել մի լավ նախաձեռնություն — աշխատել առանց խոտանողի։ Եվ կուսբյուրոն ամեն ամիս քննարկում է այդ նախաձեռնության արմատավորման ընթացքը։ Մարտ ամսին քննարկելով թողարկվող արտադրանքի որակի բարձրացման վերաբերյալ ընդունված որոշման կատարման ընթացքը՝ բյուրոն խիստ քննադատեց ագրեգատների վարպետներ Լ. Սահակյանին ու Ռ. Ադամյանին և, գործը չգլխավորելու պատճառով, նրանց չերաշխավորեց՝ աշխատելու այդ տեղամասերում։

Վերջին տարիներս սկզբնական կուսկազմակերպությունները և քաղկոմի բյուրոն բազմիցս քննարկել են արդյունաբերության զարգացմանը վերաբերող ղանազան հարցեր, անդրադարձել արտադրության արդյունավետության և որակի բարձրացման, գիտատեխնիկական առաջընթացի արագացման, ձեռնարկությունների համաչափ աշխատանքի ապահովման, պետական պլանների կատարման խնդիրներին, ընդունել համապատասխան որոշումներ։ Քաղկոմի բյուրոն հավանություն է տվել տեքստիլ կոմբինատի բանվորների՝ «Մրցություն-համագործակցություն» և հայրենասիրական այլ նախաձեռնությունների, հանձնարարել սկզբնական կուսկազմակերպություններին՝ լայնորեն արմատավորել դրանք։

Որոշումներ ընդունելն ու հանձնարարություններ տալը դեռևս հարցի մի կողմն են, հարկավոր է ամրապնդել դրանք կազմակերպական ակտիվ գործունեությամբ, դրանց կատարման նկատմամբ սահմանել հսկողություն, մշտապես օգնել որոշումների կենսագործմանը։ Այդպես էլ վարվում ենք։ Քաղաքի արդյունաբերության աշխատողները տասներորդ հնգամյակի սկզբից լավ մեկնարկ վերցրին։ Նախընթաց բոլոր ամիսներին ու եռամսյակներին նրանք կատարեցին ու գերակատարեցին պետական առաջադրանքները, իսկ սեպտեմբերի 23-ին՝ ժամկետից յոթ օր շուտ, համախառն արտադրանքի ինն ամսվա պլանը։ Պլանից դուրս տրվեց ավելի քան ութ միլիոն, իրացվեց վեց միլիոն ռուբլու արտադրանք։ Ընդ որում, դրա ծավալը, նախորդ տարվա նույն ժամանակամիջոցի համեմատությամբ, աճեց 7, աշխատանքի արտադրողականությունը՝ 1,3 տոկոսով։

Դիրեկտիվների և որոշումների կատարման, վերահսկողության կատարելագործման հարցերը սերտորեն առնչվում են կադրերի հետ տարվող աշխատանքին։ Կուսքաղկոմը ելնում է այն իրողությունից, որ գիտատեխնիկական



վիթխարի առաջընթացի արդի պայմաններում անհրաժեշտ են միայն մասնագիտական և տեսական կայուն գիտելիքներ ունեցող, նորը խորապես ըմբռնող, նախաձեռնող, կառավարման լենինյան սկզբունքներին ու ոճին լավատեղյակ կադրեր։ Հասարակական մեծ հեղինակություն են վայելում և խրախուսվում այն ղեկավարները, որոնք բանիմաց են, ինքնաքննադատաբար են մոտենում իրենց գործունեությանը, չեն հանդուրժում թերությունները, սկզբունքային են, հետամուտ որոշումների կատարմանը։

Այլ է վերաբերմունքը հնացած, նորի զգացումից զուրկ, յոլա գնացող, թերությունները հանդուրժող ղեկավարների նկատմամբ։ Հիշենք այսպիսի մի օրինակ։ Կենցաղային էլեկտրասարքավորումների գործարանը տևականորեն չէր կատարում պետական առաջադրանքները, այստեղ ցածր էր նաև աշխատանքի արտադրողականությունը։ Քաղկոմը որոշեց պարզել պատճառները։ Ուսումնասիրությունը ցույց տվեց, որ գործարանում թույլ է աշխատանքային կարգապահությունը, մեծ տոկոս են կազմում աշխատաժամերի կորուստները, բանվորական ուժի հոսունությունը, ցածր է աշխատատար պրոցեսների մեքենայացման աստիճանը։ Կուսկազմակերպությունը քանիցս որոշումներ է ընդունել թերությունների վերացման, արտադրության առաջընթացի ապահովման նպատակով։ Ցավոք, ձեռնարկության ղեկավարներն ու կուսբյուրոն գրեթե ոչինչ չեն արել այդ որոշումները կատարելու համար։ Նրանք չեն մշակել արտադրանքի որակի կառավարման կոմպլեքսային սիստեմ, անուշադրության են մատնել Լվովի մարզի արդյունաբերական առաջավոր ձեռնարկությունների փորձի վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի որոշումը։ Հետևանքը եղավ ցածրորակ արտադրանքը. 1975 թ. խոտանից առաջացած կորուստները կազմել են 32 հազար ռուբլի։ Քաղկոմի բյուրոն գործարանի դիրեկտոր Հ. Սերոբյանին ազատեց աշխատանքից և տուժարկեց։ Խիստ նկատողություն հայտարարվեց կուսբյուրոյի քարտուղար Հ. Բալիկյանին։

Ահա մի այլ օրինակ։ 1975 թ. սեպտեմբերին քաղկոմի բյուրոն քննարկեց գուլպայի ֆաբրիկայի գլխավոր ինժեներ Ռ. Մացակյանի հաշվետվությունը արտադրանքի որակի բարելավման և հումքի ռացիոնալ օգտագործման համար կատարված աշխատանքի մասին։ Խիստ կշտամբեցինք ֆաբրիկայի ղեկավարությանը և, առաջին հերթին, գլխավոր ինժեներին այն բանի համար, որ վճռական միջոցներ չեն ձեռնարկել՝ վերացնելու թողարկվող արտադրանքի որակի բարելավման և հումքի ռացիոնալ օգտագործման վերաբերյալ քաղկոմի 1975 թ. մայիսի 29-ի որոշման մեջ նշված թերությունները։ Ֆաբրիկան շարունակել է թողարկել ցածրորակ արտադրանք, չի կատարել ինչպես արտադրանքի թողարկման, նույնպես և որակական ցուցանիշների առաջադրանքները, տվել է հումքի գերածախս, վատ է օգտագործել մեքենա-սարքավորումները. այդ հարցերի վերաբերյալ ահազանգել է նաև սկզբնական կուսկազմակերպությունը։ Այստեղ անուշադրության են մատնվել նաև ժողովրդական սպառման առարկաների արտադրության ավելացման և որակի բարելավման վերաբերյալ կուսակցության ու կառավարության որոշումները։ Քաղկոմի բյուրոն նպատակահարմար չգտավ Ռ. Մացակյանին թողնել գլխավոր ինժեների պաշտոնում։

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի հունվարյան (1975 թ.) պլենումում սահմանվեցին կուսակցական-կազմակերպական աշխատանքի բարելավման և վերահսկողության գործում կուսակցական, սովետական, հասարակական մյուս կազմակերպությունների խնդիրները։ Խոստովանենք, որ, չնայած դրական որոշակի աշխատանքին, այնուամենայնիվ, լիովին չենք կատարել Կենտկոմի պահանջը։ Ցավոք, ունենք հիմնարկ-ձեռնարկություններ և կազմակերպություններ, որոնց ղեկավարներն իրենց իրավունք են վերապահում՝ ժամանակին ու լրիվ չկատարել ինչպես սեփական, նույնպես և վերադաս մարմինների որոշումները և, ասես, սովորույթ են դարձրել կոնկրետ կազմակերպական աշխատանքը փոխարինել հարցի կրկնակի քննարկմամբ։ Դեռևս 1975 թ. քաղկոմի ութերորդ պլենումը որոշումների կատարման առնչությամբ լուրջ թերություններ բացահայտեց քաղսովետի գործկոմի առանձին բաժինների գործունեության մեջ։ Պլենումն անհանդուրժելի համարեց, որ կապիտալ շինարարության բաժինը և կոմունալ տնտեսության վարչությունն անուշադրության են մատնել

հանգստի գոտիների, արդյունաբերական ջրագծի կառուցման, բնակելի տների շինարարական աշխատանքների որակի բարելավման վերաբերյալ քաղսովետի գործկոմի որոշումները, և հարկ է եղել վերստին անդրադառնալու այդ հարցերին։ Նման վերաբերմունքն անհանդուրժելի էր, և քաղկոմի բյուրոն 1976 թ. հուլիսին քննարկեց քաղկոմի ութերորդ պլենումի որոշման կատարման ընթացքը քաղսովետի գործկոմում։ Պարզվեց, որ որոշ գործ արվել է, սակայն գործկոմի բաժիններում և վարչություններում անբավարար են որոշումների կատարման ստուգումն ու վերահսկողությունը, չեն գործադրվում դրա արդյունավետ ձևերն ու մեթոդները։ Քաղկոմի բյուրոն նրանց հանդիմանեց այն բանի համար, որ բազմաթիվ որոշումներ են ընդունել բնակելի զանգվածների բարեկարգման, բնակֆոնդի պահպանման, շինարարական աշխատանքի որակի, սպասարկման ծառայությունների բարելավման, ջրամատակարարման կարգավորման վերաբերյալ, սակայն դրանց կատարման գործում էական տեղաշարժեր չեն նկատվում։ Պատճառներից մեկն այն է, որ ընդունված առանձին որոշումներ չեն արտացոլում իրավիճակը և չեն նշում թերությունների վերացման ուղիները։ Մի շարք հարցերի քննարկումը պարզապես կրել է ձևական բնույթ։ Քաղկոմը քաղսովետի գործկոմից, նրա վարչություններից ու բաժիններից պահանջեց մշակել և իրականացնել որոշումների, հանձնարարականների, կարգադրությունների կատարման հստակ սիստեմ, հատուկ ուշադրություն նվիրել քննարկվող հարցերի ընտրությանը, այդ ամենի կատարման ասպարեզում ապահովել հանձնաժողովների, դեպուտատական խմբերի արդյունավետ աշխատանքը։

Որոշումների կատարման և դրանց նկատմամբ գործնական վերահսկողության կազմակերպման կարևոր պայմաններից մեկը քաղաքային կոմիտեն համարում է քննադատության և ինքնաքննադատության համակողմանի ծավալումը։ Քննադատությունն ու ինքնաքննադատությունը մեր առաջընթացի զորեղ գործոնն են, կուսակցական աշխատանքի հիմնաքարը, թերությունների վերացման, սխալների կանխման, որոշումների կենսագործման փորձված միջոցը։ Այդ ասպարեզում նկատվող որոշակի առաջընթացը, այնուամենայնիվ, հիմքեր չի տալիս ասելու, թե առողջ քննադատությունն ու ինքնաքննադատությունը դարձել են մեր բոլոր սկզբնական կուսկազմակերպությունների գործունեության առանցքը։ Քաղաքային կոմիտեն մտահոգված է առանձին կազմակերպություններում և կոմունիստների մոտ նկատվող այն մտայնության հաղթահարմամբ, թե քննադատել նշանակում է վարկաբեկել, հեղինակազրկել տվյալ անձնավորությանը կամ կազմակերպությանը։ Անշուշտ, խոսքն այստեղ առողջ, սկզբունքային, կոմունիստական քննադատության մասին է, քննադատություն, որը զերծ է սուբյեկտիվիզմից, նեղ շահադիտական միտումներից։

Որոշումների կատարման-վերահսկման սիստեմի կատարելագործումն ինքնին ենթադրում է գիտական մոտեցում այդ աշխատանքի կազմակերպման նկատմամբ, որը և որոշումների կատարման արդյունավետության բարձրացման հիմնական գրավականն է։ Քաղաքային կոմիտեն ձեռնամուխ է եղել որոշումների կատարման հսկողության համակարգում տեխնիկական միջոցների լայն օգտագործմանը։ Ընդհանուր բաժնում տեղակայված են հատուկ քարտարաններ, վահանակներ. դրանք ապահովում են վերահսկողության հաջող կազմակերպումը։

Որոշումների կատարման ստուգումն ու վերահսկողությունը կուսակցական-կազմակերպական աշխատանքի կարևոր բնագավառներից են, մեր առաջընթացի, կադրերի ակտիվության ու նախաձեռնության զարգացման, նրանց դաստիարակության լավագույն միջոցը։ Կուսակցությունը տասներորդ հնգամյակը համարել է արդյունավետության և որակի հնգամյակ։ Այս կարևոր խնդրի իրականացումը հնարավոր է նաև կուսակցական մարմինների և կուսկազմակերպությունների՝ որոշումների կատարման պատշաճ կազմակերպման միջոցով։

Որոշումների անշեղ կատարումը կուսակցական կյանքի օրենքն է, կենսական անհրաժեշտությունը։

# ՊՐՈԲԼԵՄԱՅԻՆ ՏԵՍԱԿԱՆ ՍԵՄԻՆԱՐՆԵՐ

## ԱՇԽԱՏԱՆՔԻ ՈՐԱԿԸ ԵՎ ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏՈՒԹՅՈՒՆԸ

Վ. ՕԼԻԳԻՆ-ՆԵՍՏԵՐՈՎ

ՏԱՍՆԵՐՈՐԴ ՀՆԳԱՄՅԱԿԸ կոչված է լինելու արդյունա-
վետության և որակի հնգամյակ՝ հանուն սովետական
էկոնոմիկայի և ժողովրդական բարեկեցության հետագա աճի։ Զարգացած
սոցիալիստական հասարակարգի արտադրական և գիտատեխնիկական հզոր
պոտենցիալը հնարավորություն է ընձեռում ավելի ու ավելի լրիվ օգտագոր-
ծելու սոցիալիզմի առավելությունները, հետևողականորեն իրականացնելու ժո-
ղովրդի կյանքի նյութական ու կուլտուրական մակարդակի բարձրացման կուր-
սը՝ հանրային արտադրության դինամիկ ու համամասնական զարգացման և
դրա արդյունավետության բարձրացման, գիտատեխնիկական առաջընթացի
արագացման, աշխատանքի արտադրողականության բարձրացման, ժողովր-
դական տնտեսության բոլոր օղակներում աշխատանքի որակի բարելավման
հիման վրա։ Տասներորդ հնգամյակը նոր փուլ է ծավալվող գիտատեխնիկական
հեղափոխության պայմաններում, սոցիալ-տնտեսական զարգացման, կոմու-
նիզմի նյութատեխնիկական բազայի կառուցման բնագավառում կուսակցու-
թյան տնտեսական կուրսի իրականացման գործում, նոր փուլ է սոցիալիզմի հա-
սարակական հարաբերությունների և սոցիալիստական ապրելակերպի զար-
գացման գործում։

Տասներորդ հնգամյակում կոմունիստական կուսակցության առաջադրած
տնտեսական և սոցիալական բազմապիսի խնդիրների հաջող լուծման հիմնա-
կան ուղին աշխատանքի արտադրողականության աճն է, ողջ հանրային ար-
տադրության արդյունավետության շեշտակի բարձրացումը։ Արտադրության
արդյունավետության բարձրացման կարևորագույն գործոնը՝ աշխատանքի
որակի բարելավման անհրաժեշտությունը, պայմանավորված է կոմունիստա-
կան շինարարության արմատական նպատակներով ու խնդիրներով։ «Էկոնո-
միկայի բոլոր ճյուղերի, յուրաքանչյուր մինիստրության և ձեռնարկության
աշխատանքի կողմնորոշումը դեպի արդյունավետության և որակի վճռական
բարձրացում, ...հիմա ամենակարևորն է»,— ընդգծեց ընկեր Լ. Ի. Բրեժնևը
ՍՄԿԿ XXV համագումարում։

Սույն կոնսուլտացիայում քննարկվում են «աշխատանքի որակ» հասկա-
ցության բովանդակությունը, աշխատողների, արտադրական կոլեկտիվների
աշխատանքային գործունեության բարելավման նշանակությունը հանրային
արտադրության արդյունավետության բարձրացման համար։

***

Սոցիալիստական կարգի հաղթանակի հետ մեկտեղ արմատապես փոխվում է աշխատանքի, մարդկանց արտադրական գործունեության սոցիալ-տնտեսական բովանդակությունը։ Սոցիալիզմի օրոք «ուրիշի համար հարյուրամյակներ աշխատելուց, շահագործողների համար հարկադրական աշխատանք կատարելուց հետո, առաջին անգամն է հնարավորություն ստեղծվում իր համար աշխատելու, այն էլ այնպիսի աշխատանքի հնարավորություն, որը հենվում է նորագույն տեխնիկայի ու կուլտուրայի բոլոր նվաճումների վրա» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 26, էջ 495)։ Աշխատանքը դառնում է ազատ, ստեղծագործական, այդ պատճառով իսկ՝ ավելի հրապուրիչ։ Փոխվում է աշխատողի վերաբերմունքը գործի հանդեպ։ Դա արտահայտվում է այն բանում, որ նրա հոգում ի հայտ է գալիս ներքին շահագրգռություն իր աշխատանքի որակի բարելավման նկատմամբ։

Արտադրամիջոցների սոցիալիստական հանրային սեփականության հաստատմամբ աշխատանքը ևս դառնում է հանրային. այն պլանավորվում և օգտագործվում է ողջ հասարակության մասշտաբներով՝ հօգուտ իրենց՝ աշխատավորների։ Սոցիալիստական (պետական և կոլտնտեսային-կոոպերատիվ) ձեռնարկությունների շրջանակներում արտադրապրոցեսում իրականացվում է բանուժի ուղղակի միացումը արտադրամիջոցների հետ, հաստատվում են շահագործումից ազատ աշխատողների համագործակցության և ընկերական փոխօգնության հարաբերություններ։ Արտադրության և շրջանառության ոլորտում բանվորների, ինժեներների, տեխնիկների, կառավարման ապարատի աշխատողների ֆունկցիաները պայմանավորված են աշխատանքի պլանաչափ հասարակական բաժանմամբ և կոոպերացմամբ։ Սոցիալիստական հասարակությունը կենտրոնացված կարգով պլանավորում է աշխատանքային ռեսուրսների բաշխումը ըստ արտադրական և ոչ արտադրական ոլորտների, այդ գործունեության արդյունավետության բարձրացումը, կարգավորում դրա որակը։

Սոցիալիստական ժողովրդական տնտեսության ամեն մի տեղամասում աշխատանքը կոչված է ապահովելու էկոնոմիկայի և աշխատավորների բարեկեցության հետագա աճը, ուստի և դրա որակը աշխատանքի տվյալ տեսակի արդյունավետության ընդհանրացված բնութագիրն է։ Սոցիալիզմի պայմաններում յուրաքանչյուր աշխատանքի որակը և արտադրական ողջ կոլեկտիվների գործունեության արդյունավետությունը պայմանավորված են ամենից առաջ այն բանով, թե նրանց աշխատանքը որքանով է նպաստում հասարակության և նրա բոլոր անդամների պահանջմունքների բավարարմանը։ Դրա հետ մեկտեղ աշխատանքի որակն արտացոլում է յուրաքանչյուրի կողմից իր գործի հասարակական նշանակության ըմբռնման, հասարակության հանդեպ նրա պատասխանատվության մակարդակը։

Ինչպես նշում է Լ. Ի. Բրեժնևը, աշխատանքի որակը շատ տարողունակ հասկացություն է։ Այն ստեղծվում է արտադրա-տնտեսական բազում գործոններից, ընդգրկելով բարոյական պրոբլեմների լայն շրջան։ Աշխատանքի որակի ապահովումը, որն ի վերջո դրսևորվում է դրա արդյունավետության մեջ, պահանջում է գործի հմուտ, գիտական կազմակերպում, արտադրամիջոցների առավելագույն արդյունավետ օգտագործում։ Քննարկելով հարցի տնտեսական այդ կողմը, չի կարելի անտեսել աշխատանքի որակի բարելավման սոցիալական բնույթը, դրա նշանակությունը՝ աշխատողներին բանվորական հպարտության զգացումով համակելու, աշխատանքի նկատմամբ նոր, կոմունիստական վերաբերմունք ձևավորելու համար։

Նշենք, որ «աշխատանքի որակ» և «գործի որակ» հասկացությունները լինելով համադասական, ունեն նաև որոշ տարբերություններ։ Նախ՝ եթե գործը նպատակահարմար մարդկային գործունեության պրոցես է, ապա, խոսելով աշխատանքի որակի մասին, միշտ նկատի ունենք ո՛չ միայն բուն գործը, այլև դրա սոցիալ-տնտեսական արդյունքները։ Երկրորդ, գործի համեմատությամբ աշխատանքը բնութագրվում է աշխատանքային գործունեության կազմակերպ-



ման պայմանների, գործոնների շատ ավելի լայն կոմպլեքսով։ Այսպիսով, եթե գործի որակը պայմանավորված է գերազանցապես դրա անմիջական հատկություններով (բարդությամբ, որակյալությամբ, արտադրողականությամբ, ինտենսիվությամբ և այլն), ապա աշխատանքի որակը չի հանգում զուտ արտադրական, տեխնոլոգիական պրոբլեմների, թեև դրա հիմքը ևս տեխնիկայի ու նյութական արտադրության պրոցեսի կազմակերպման առաջընթաց զարգացումն է։ Առաջնությունը տալով արտադրության արդյունավետության բարձրացման, աշխատանքի որակի բարելավման խնդրին, կուսակցությունը պահանջում է ուշադրություն նվիրել դրան նպաստող բոլոր գործոններին— արտադրության տեխնիկական հիմքի նորացում, մարդկանց մեջ աշխատանքի նկատմամբ գիտակցական, կոմունիստական վերաբերմունքի դաստիարակում, աշխատավոր մասսաների ստեղծագործական նախաձեռնությունների ծավալում։

Աշխատանքի որակը գործի որակից ավելի լրիվ է արտացոլում սոցիալիստական տնտեսավարության սկզբունքը— հօգուտ հասարակության նվազագույն ծախսումներով հասնել առավելագույն արդյունքների։ Այսպիսով, աշխատանքի որակն ընդգրկում է նաև գործի որոշակի չափ, հանդիսանում գործի ծախսումների ու արդյունքների միասնություն։

Աշխատանքի որակի մշտական բարելավումը զարգացած, հասուն սոցիալիզմի էկոնոմիկայի էական հատկանիշն է, հիմնական խնդիրը։ Այն մեծապես պայմանավորված է մեր էկոնոմիկայի արդի արդյունավետությամբ, քանի որ որոշ իմաստով սոցիալիստական տնտեսավարության առկա մակարդակի ընդհանրացնող բնութագիրն է։ Դրա հետ մեկտեղ աշխատանքի որակի բարձրացումը հնարավորություն է ընձեռում ավելի լրիվ օգտագործելու սոցիալիստական կարգի առավելություններն ու հնարավորությունները՝ դրա արտադրական և գիտատեխնիկական հզոր պոտենցիալով։

Սովետական էկոնոմիկայի զարգացմանն ու բարդացմանը զուգընթաց հետզհետե ավելի մեծ նշանակություն է ստանում վերջնական արդյունքների պայմանավորվածությունը միջակա օղակներով։ Զգտելով հասնել վերջնական նպատակներին՝ չի կարելի, անշուշտ, շրջանցել միջակա փուլերը։ Սակայն միջակա արդյունքները մի աստիճան են սոսկ, առաջադրված խնդիրներին հասնելու միջոց, ուստի, վերջնական արդյունքն է ժողովրդական տնտեսության բոլոր օղակներում ձեռնարկվող գործողությունների արդյունավետության, աշխատանքի որակի չափանիշը։ Այսպիսով, յուրաքանչյուր ձեռնարկության, կոլտնտեսության, սովխոզի գործունեության մեջ գլխավորը վերջնական արդյունքն է։ Սոցիալիստական հասարակարգը շահախնդիր է թողարկել ոչ թե ամեն տեսակ, այլ միշտ որոշակի արտադրանք՝ խիստ սահմանված հատկություններով, առկա ռեսուրսների արդյունավետ օգտագործմամբ։ Այսպիսով միայն կարելի է առավել լրիվ բավարարել մեր հասարակության ու նրա անդամների հարաճուն պահանջմունքները։

Աշխատանքի որակի բարձրացման համար անհրաժեշտ է արտադրության մեջ խստագույնս պահպանել պլանային, տեխնոլոգիական, աշխատանքային կարգապահությունը։ Հանուն որակի մղվող պայքարում անհամատեղելի են անփութությունը, թափթփվածությունը, գործի հանդեպ անբարեխիղճ վերաբերմունքը։ Գրոհայնությունը, խոտանված արտադրատեսակների վերամշակումը, տեխնոլոգիական ռեժիմի խախտումները ո՛չ միայն մեծացնում են նյութական ծախսումները, այլև հանգեցնում ժամանակի անդառնալի կորուստների, խաթարում արտադրության ընդհանուր ռիթմը։ Դրանք նաև բարոյական մեծ վնաս են հասցնում։ Կարգապահության և պատասխանատվության բարձրացման համար միաժամանակ անհրաժեշտ է մշտապես բարելավել կոլեկտիվի անդամների համատեղ գործունեության բոլոր կողմերն ու բաղադրատարրերը— արդյունավետ պլանավորում, արտադրության խելամիտ կազմակերպում, ներգործուն խթանում։

Գործի լավ կազմակերպման օրինակ կարող է ծառայել արտադրանքի որակի կոմպլեքսային կառավարման սիստեմը, որը կիրառվում է արդյունաբերու-

թյան շատ ճյուղերում։ Այժմ միավորումների և ձեռնարկությունների համար կենտրոնացված կարգով սահմանվում են արտադրանքի իրացման ծավալի պլանային առաջադրանքներ, որտեղ նշվում է որոշակի արտադրատեսակը, արտադրության ծավալը, տեսականությունը և այլն։ Ընդսմին, հաշվի են առնվում ինչպես բնա-իրային, այնպես էլ արժեքային ցուցանիշները։ Տեխնիկական մակարդակի և արտադրանքի որակի բարձրացման միջոցառումների մշակման փուլում դրանք կապակցվում են ստանդարտացման և մետրոլոգիայի բարելավման միջոցառումների հետ։ Այս ամենն արտադրատեսակների տեխնիկա-շահագործական անհրաժեշտ հատկություններն ապահովող արտադրական ստորաբաժանումների և ծառայությունների գործունեության ելակետային բազան է, որն ապահովում է դրանց դերի, հուսալիության, օգտագործման տևականության, տեխնոլոգիական, միասնականացման և նորմալացման պահանջվող մակարդակը, գեղագիտական հատկությունները և այլն։ Որակի ցուցանիշները, որոնք անմիջականորեն առնչվում են գնագոյացման հետ, հաշվի են առնվում նաև տնտհաշվարկը կազմելիս, խթանման միջոցները մշակելիս։ Բարձրագույն կատեգորիայի որակի արտադրանքի տեսակարար կշիռն այժմ անդրադառնում է ձեռնարկությունների խրախուսման ֆոնդերի չափի վրա։ Որակի կառավարման կոմպլեքսային սիստեմը հնարավորություն է ընձեռում կենտրոնացված պլանային սկզբունքը շաղկապելու կոլեկտիվների ստեղծագործական լայն նախաձեռնության հետ։

«Արտադրանքի որակի կառավարման կոմպլեքսային սիստեմի մշակման ու արմատավորման ասպարեզում Լվովի մարզի արդյունաբերության առաջավոր ձեռնարկությունների կուսակցական կազմակերպությունների և կոլեկտիվների աշխատանքի փորձի մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ հատկապես կարևորվում է տեխնիկական, տնտեսական, սոցիալական և կազմակերպական միջոցառումների փոխկապակցումը։ Այդ հնարավորություն է ընձեռում, հենվելով աշխատավորների լայն մասնակցության վրա, ակտիվորեն ազդելու արտադրանքի որակի ձևավորման բոլոր փուլերի՝ նախագծման, արտադրության և շահագործման վրա։ Պետական որականիշի արժանացած արտադրատեսակների քանակը 1976 թ. հունվարի մեկին հասավ 27,6 հազարի, 1970 թ. 1.742-ի դիմաց, այսինքն՝ ավելացավ մոտ 16 անգամ։ Անհնար է բարձրացնել աշխատանքի որակը՝ սոցիալ-տնտեսական նշանակություն ունեցող հարցերի վրա չհրավիրելով հանրային արտադրության մասնակիցների ուշադրությունը, չպատվաստելով նրանց իրենց իսկ վստահված արտադրամիջոցների հանդեպ սրտացավ, պետական վերաբերմունք, իրենց գործունեության արդյունքների նկատմամբ խոր շահագրգռություն։

Նման պետական հոգածությամբ է տոգորված «Պրավդա» թերթի 1975 թ. հունվարի 7-ի համարում հրապարակված Գորկի քաղաքի մի խումբ բանվորների՝ «Աշխատանքի որակը. ինչպե՞ս այն բարձրացնել» խորագրով նամակը, ուր շեշտվում է. «...մեր կարծիքով, աշխատանքի որակը առաջին հերթին պայմանավորված է բանվոր մարդու խղճով, նրա գիտակցականությամբ, իր հասարակական պարտքի ըմբռնման աստիճանով»։ Աշխատանքի նկատմամբ նոր, կոմունիստական վերաբերմունքը որակի բարձրացման հզոր խթան է։ Երբ մարդիկ գործը կատարում են ներքին մղումով, արդյունքը միշտ ավելի լավ է լինում։

Երկրով մեկ տարածվել է Մոսկվայի Վլադիմիր Իլյիչի անվան գործարանի նորարարների կոչը սոցիալիստական մրցություն ծավալել՝ «Որակի հնգամյակին՝ բանվորական երաշխիք» նշանաբանով։ Կոչի նախաձեռնողները որոշել են պայքարել աշխատանքի բարձր որակի համար, դրանով իսկ վերացնելով փոխպահանջներ ներկայացնելու հնարավորությունը։ Ամբողջովին և սահմանված ժամկետների կրճատմամբ կատարելով արտադրական առաջադրանքները՝ ամեն մի աշխատող նպաստում է ողջ արտադրության անխափան ռիթմին, հետևաբար և՝ վերջնական արտադրանքի որակի բարձրացմանը։ Մրցողները ձգտում են համապատասխան տեխնոլոգիական գործողությունները կատարել պետական որականիշ ունեցող արտադրատեսակներին ներկայացվող պահանջների մակարդակով։ Հետզհետե ավելի ու ավելի շատ աշխատողներ են



պայքարում անձնական մակնիշով աշխատելու իրավունքի համար, կատարելագործում են պրոֆեսիոնալ վարպետությունը, տիրապետում հարակից մասնագիտությունների, իրենց արտադրական փորձը հաղորդում ընկերներին։

Բազմաթիվ կոլեկտիվներ պաշտպանեցին մոսկվացիների նախաձեռնությունը, որը հավանության արժանացավ ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների սովետի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի՝ «Արտադրության արդյունավետությունը և աշխատանքի որակը բարձրացնելու, 1976 թվականի ժողովրդատնտեսական պլանը հաջողությամբ կատարելու համամիութենական սոցիալիստական մրցության մասին» որոշման մեջ։ Մոբիլիզացնելով արտադրության ռեզերվները, ձգտելով տալ բարձրորակ, նվազագույն ծախսումներով ավելի շատ արտադրանք, Վորոնեժի Կիրովի անվան սինթետիկ կաուչուկի գործարանի կոլեկտիվում կնքվում են մրցության պայմանագրեր՝ բարձրորակ աշխատանքի համար։ Սարատովի առանցքակալների գործարանի աշխատավորներն ստեղծում են գերազանց որակի համընդգրկող բրիգադներ։ Լեռնագործները մրցում են «Ավելի քիչ ծախսումներ՝ ավելի շատ ածուխ» լոզունգով։ Աշխատանքի արդյունավետության և որակի համար ծավալված մասսայական շարժման մեջ վառ դրսևորվում են ընկերական փոխօգնությունը, կոլեկտիվիզմը, որոնք բնորոշ են սոցիալիստական արտադրահարաբերություններին։

Մոսկվայի Ի. Ա. Լիխաչովի անվան ավտոգործարանի ինժեներները, կոնստրուկտորները, տեխնոլոգները մշակում և իրականացնում են անհատական ստեղծագործական պլաններ, որոնցում հիմնավորվում են տեխնիկական լուծումները, սահմանվում միջոցառումներ բանվորներին, բրիգադներին, արտադրական տեղամասերին գործնական օգնություն ցույց տալու նպատակով։ Այս ամենը նպաստում է կոլեկտիվների ստանձնած լարված պարտավորությունների , 1976 թ. պլանի և ողջ հնգամյա պլանի ժամկետից շուտ կատարմանը, թողարկվող արտադրանքի որակի բարելավմանը։ Նրանց նշանաբանն է՝ «Բանվորական նախաձեռնությանը՝ ինժեներական աջակցություն»։

Լենինգրադի «Կրասնի վիբորժեց» գործարանի աշխատավորներն առաջադրել և իրականացնում են մի լոզունգ՝ ձգտել ոչ միայն բարձրացնել իրենց կոլեկտիվի աշխատանքի արդյունավետությունը, այլև ամեն կերպ նպաստել այն ձեռնարկությունների հաջող աշխատանքին, որոնց առաքում են իրենց արտադրանքը, անշեղորեն բարձրացնել միջճյուղային կոոպերացման արդյունավետությունը։

Այժմ, երբ որակի բարելավման խնդիրները դարձել են առաջնային, անհրաժեշտաբար բարձրացել են պահանջները ձեռնարկությունների, կոլտնտեսությունների, սովխոզների աշխատողների գիտելիքների, փորձի, պրոֆեսիոնալ վարպետության նկատմամբ։ Աշխատանքի բարձր որակը ձեռք է բերվում ոչ միայն արտադրության տեխնիկական ու կազմակերպական կատարելագործման, այլև աշխատողների որակավորման աճի շնորհիվ։ Այդ մեծապես պայմանավորված է նրանով, թե աշխատողները որքան են տիրապետում էկոնոմիկային, դրա տեխնիկային-տեխնոլոգիային։

Այսպիսով, աշխատանքի որակը յուրաքանչյուր աշխատողի ինչպես պրոֆեսիոնալ վարպետության, գործարար որակավորման, նույնպես և գիտակցականության, քաղաքացիական հասունության չափանիշ է։



Ընդլայնված սոցիալիստական վերարտադրության աղբյուրը ժողովրդական տնտեսության մեջ արդեն կիրառվող և նոր արտադրամիջոցների ու աշխատանքային ռեսուրսների բարելավումն ու գործադրումն է։ Յուրաքանչյուր ձեռնարկությունում, յուրաքանչյուր աշխատատեղում սոցիալիստական էկոնոմիկայի արդյունավետության բարձրացման ռեզերվների գործադրումը աշխատանքի որակի բարձրացման բանալին է։ «Ժողովրդատնտեսական պլաններում հիմնական շեշտը կդրվի արտադրության ինտենսիվացումը խորացնելու վրա՝ գիտատեխնիկական առաջադիմության և խնայողության համակողմանի ռեժիմի հիման վրա,— ՍՄԿԿ XXV համագումարին տված իր զեկուցման մեջ նշեց

Ա. Ն. Կոսիգին։— Տնտեսական աճի ինտենսիվ գործոնների դերի ուժեղացմանը կուսակցության Կենտրոնական կոմիտեն և կառավարությունը մեծ ուշադրություն էին նվիրում նախորդ տարիներին. դա առաջնահերթ նշանակություն է ստանում տասներորդ հնգամյակում»։

Սոցիալիզմը նյութական արտադրությունն անմիջականորեն ենթարկում է մարդկային անհատի և ամբողջ հասարակության համակողմանի, ներդաշնակ զարգացման շահերին։ Այստեղ չի կարող լինել այնպիսի արտադրություն, երբ հասարակության որոշ անդամներ հարստանում են մյուսների հաշվին։ Սոցիալիստական արտադրության զարգացման բարձրագույն նպատակն է ապահովել հասարակության բոլոր անդամների լիակատար բարեկեցությունը և ազատ համակողմանի զարգացումը։ Ուստի, սոցիալիզմի պայմաններում արտադրության արդյունավետությունն արտահայտվում է աշխատավորական զանգվածների հարաճուն պահանջմունքների բավարարման աստիճանով, լիակատարությամբ։

Քանի որ սոցիալիստական հասարակարգում նրա անդամների պահանջմունքների բավարարումը յուրաքանչյուր պահի ապահովվում է առկա նյութական և այլ ռեսուրսներով, սոցիալ-տնտեսական առաջընթացի թելադրանքով հարկ է լուծել երկակի բնույթի պրոբլեմներ։ Մի կողմից՝ անհրաժեշտ է ձևավորել մարդկանց նպատակային, առողջ, խելամիտ պահանջմունքները, մյուս կողմից՝ ավելի ու ավելի անհրաժեշտ են դառնում եղած նյութական հնարավորությունների ռացիոնալ, արդյունավետ օգտագործումը, ամեն մի առանձին «եզակի» պահանջմունքի բավարարումը՝ հանրային աշխատանքի, ժամանակի նվազագույն ծախսումներով։

Սոցիալ-տնտեսական առումով, աշխատանքի որակի բարձրացումը նպաստում է մեր երկրում ստեղծված արտադրա-տեխնիկական հզոր պոտենցիալի ավելի արդյունավետ օգտագործմանը՝ ազգային եկամտի մեծացման, հասարակական ու անձնական պահանջմունքների անմիջական բավարարմանը ծառայող վերջնական արդյունքի արտադրման համար։ Այն արտահայտվում է նյութական բարիքների սպառողական հատկությունների բարելավման, դրանց արտադրածախքերի կրճատման մեջ, դրանով իսկ անմիջականորեն ազդելով հասարակության ու նրա անդամների պահանջմունքների լիակատարության և բավարարման աստիճանի վրա։

Հանրային արտադրության զարգացման և բարեկեցության բարձրացման հիմնական աղբյուրն ազգային եկամուտն է։ Սովետական իշխանության տարիներին դրամական արտահայտությամբ այն մեծացել է ավելի քան 60 անգամ։ Բնակչության մեկ շնչին ընկնող ազգային եկամտի արտադրությամբ Սովետական Միությունն առաջ է անցել զարգացած կապիտալիստական շատ երկրներից։ Դրա աճի տեմպերը համոզիչ բնութագրում են սոցիալիստական էկոնոմիկայի զարգացման բարձր դինամիզմը։ Նոր, տասներորդ հնգամյակում ազգային եկամուտը կաճի ևս 24—28 տոկոսով։ Անհրաժեշտ է նշել, որ պահանջմունքների ռեալ բավարարումը ուղղակի պայմանավորված է արտադրված ազգային եկամտի իրեղեն բովանդակությամբ։ Աշխատանքի որակի բարձրացումը ևս, որի արդյունքն է թողարկվող արտադրանքի սպառողական հատկությունների բարելավումը, ազգային եկամուտը կուտակման և սպառման ֆոնդերի առկա բաշխման շրջանակներում անգամ, նպաստում է ինչպես արտադրական, նույնպես էլ անձնական պահանջմունքների ավելի լրիվ բավարարմանը։

Որքան էլ մեծ լինի արտադրանքի բարձր որակի նշանակությունը, արդի պայմաններում դեռևս շատ կարևոր է նաև արտադրվող արտադրատեսակների քանակի մեծացումը։ Առաջիկա տասնհինգ տարում մեր երկիրը գործնականորեն պետք է կրկնապատկի իր նյութական ռեսուրսները։ Դա նոր հնարավորություններ կստեղծի սովետական մարդկանց բարեկեցության հետագա բարձրացման, նրանց աշխատանքի ու կենցաղի պայմանների բարելավման, առողջապահության, կրթության, կուլտուրայի զգալի առաջընթացի, սոցիալիստական ապրելակերպի կատարելագործման համար։ Սոցիալական այս խնդիրների



լուծումը կնպաստի սովետական մարդկանց ներդաշնակ զարգացմանը, հետևաբար և՝ նրանց աշխատանքային գործունեության որակի բարձրացմանը։

Կուսակցության տնտեսական ստրատեգիայի առանցքը, որի վրա խարսխված են և՛ տասներորդ հնգամյակը, և՛ տևական հեռանկարը, ինչպես հայտնի է, երկրի տնտեսական հզորության հետագա ուժեղացումն է, արտադրաֆոնդերի ընդլայնումն ու արմատական նորացումը, էկոնոմիկայի հիմքի՝ ծանր արդյունաբերության կայուն, հաշվեկշռված աճի ապահովումը։ Տասներորդ հնգամյակում նախատեսվում է արդյունաբերական արտադրանքի արտադրությունը մեծացնել 35—39 տոկոսով, ընդ որում, արտադրամիջոցների արտադրությունը՝ 38—42, սպառման առարկաներինը՝ 30—32 տոկոսով։ Խնդիր է դրվում նաև զգալիորեն բարձրացնել ժողովրդական տնտեսության հիմնական ֆոնդերի օգտագործման մակարդակը, ապահովել արտադրակարողությունների աճը՝ առաջին հերթին ձեռնարկությունների տեխնիկական վերազինմամբ, սարքավորումների նորացման և կազմակերպա-տեխնիկական միջոցառումների իրականացմամբ՝ ավելի քիչ ծախսումներով և ավելի սեղմ ժամկետներում բարձրորակ արտադրանք թողարկելու նպատակով։

Սոցիալիստական էկոնոմիկայի արդյունավետության բարձրացման գլխավոր բաղադրատարրերից մեկը կապիտալ շինարարության բարելավումն է, արդյունաբերության, տրանսպորտի, գյուղատնտեսության զարգացմանը հատկացվող միջոցների ավելի արդյունավետ օգտագործումը։ Տասներորդ հնգամյակի համար պլանավորվող՝ արտադրության աճի ցուցանիշներին հարկ կլինի հասնել կապիտալ ներդրումների նախորդ հինգ տարիներից ավելի պակաս աճի տեմպերով։ 1976—1980 թվականներին դրանց ընդհանուր աճը կկազմի 24—26 տոկոս՝ 1971—1975 թվականների 42 տոկոսի փոխարեն։ Այդ կպահանջի զգալիորեն բարձրացնել աշխատանքի որակը շինարարության մեջ, ամենաարագ կերպով գործարկել և յուրացնել նոր արտադրակարողություններ՝ շինարարության պլանավորման, նախագծման ու կազմակերպման բարելավման, աշխատանքների տևողության կրճատման և արժեքի իջեցման միջոցով։

Ճյուղերի դինամիկ և հաշվեկշռված զարգացումը միայն հնարավորություն կընձեռի ապահովելու անհրաժեշտ վերջնական արդյունքը՝ սովետական մարդկանց աճող պահանջմունքների առավել լրիվ բավարարումը։ Ահա ինչու արդյունաբերության կառուցվածքի շարունակվող կատարելագործման ընթացքում արտադրության ընդհանուր ծավալում մեծանում է գլխավոր ճյուղերի՝ մեքենաշինության, քիմիական և նավթաքիմիական արդյունաբերության, էլեկտրաէներգետիկայի և այլ ճյուղերի արտադրանքի տեսակարար կշիռը։ Միաժամանակ անհրաժեշտ կլինի զգալիորեն բարելավել այն ճյուղերի աշխատանքը, որոնցով անմիջականորեն պայմանավորված է ժողովրդական սպառման ապրանքների արտադրությունը։ Թեթև արդյունաբերության մեջ արագացված տեմպերով զարգանում է բարձրորակ գործվածքների, տրիկոտաժի, կարի արտադրանքի, կոշկեղենի նոր տեսակների արտադրությունը, սննդարդյունաբերության մեջ բարձրանում են սննդամթերքների որակը, բիոլոգիական արժեքը և համեղության հատկությունները, ընդլայնվում է դրանց տեսականին և այլն։ Կոլտնտեսությունների և սովխոզների աշխատողները պետք է հասնեն այն բանին, որ հուսալիորեն երաշխավորեն երկրի մատակարարումը պարենով և գյուղատնտեսական հումքով։

Պրակտիկան վկայում է, որ ժողովրդական տնտեսության այս կամ այն օղակում աշխատանքի որակը կարելի է բարելավել միայն էկոնոմիկայի մի շարք ճյուղերի աշխատողների համատեղ ջանքերով, այլապես օղակներից մեկում եղած թերությունները կարող են ի չիք դարձնել մյուս օղակների ջանքերը։ Ժողովրդական սպառման ապրանքների արտադրությունը, մասնավորապես, պահանջում է բարձրացնել համապատասխան սարքավորումներ, հումք, նյութեր մատակարարող հարակից ճյուղերի աշխատանքի որակը։

Հարկավոր է նշել նաև աշխատանքի որակի բարձրացման անհրաժեշտությունը արտադրության և սպառման կապող օղակի՝ շրջանառության ոլորտում։

նյութատեխնիկական մատակարարման և պատրաստի արտադրանքի վաճառահանման հարցերի թերագնահատումը կարող է բարդացնել արտադրական ողջ պրոցեսը և հետագայում բացասաբար անդրադառնալ տնտեսական գործունեության ընդհանուր վերջնարդյունքի վրա։

Ուստի, անհրաժեշտ կլինի այսուհետ ևս զարգացնել ու կատարելագործել նյութատեխնիկական մատակարարման ընդհանուր պետական սիստեմը, բարձրացնել մատակարարման մարմինների դերն ու պատասխանատվությունը ռացիոնալ տնտեսական կապերի կարգավորման գործում։

Աշխատանքի որակի բարելավումը մեծ նշանակություն ունի նաև տնտեսության այնպիսի ճյուղի համար, ինչպիսին է առևտուրը։ Այստեղ, ինչպես և հասարակական սննդի, կենցաղային սպասարկման բնագավառում, հարկ է լինում անմիջապես առնչվել սպառողի, նրա պահանջների հետ։ Ուստի, առևտրի աշխատողները կոչված են ակտիվորեն ներգործելու արդյունաբերական և գյուղատնտեսական արտադրության վրա, խոչընդոտելով պահանջարկ չունեցող ապրանքների թողարկմանն ու առաքմանը շուկա, յուրաքանչյուր քաղաքում և գյուղում ապահովելու մասսայական պահանջարկ ունեցող արտադրանքի անհրաժեշտ տեսականին։ Առևտուրը խթանում է նաև բնակչության խելամիտ պահանջմունքների, գեղագիտական ճաշակի ձևավորմանը։

Արտադրական բոլոր ճյուղերում աշխատանքի որակի բարելավման, հետևաբար նաև սոցիալիստական էկոնոմիկայի արդյունավետության բարձրացման հիմքը գիտատեխնիկական պլանաչափ առաջընթացն է։ Տասներորդ հնգամյակում իրականացվելու են արտադրության տեխնիկական վերազինման, գործող ձեռնարկությունների սարքավորումների արդիականացման խոշոր միջոցառումներ։ Դա նպաստավոր պայմաններ կստեղծի հանրային աշխատանքի արտադրողականության հետագա վերելքի համար, որը արտադրական գործունեության արդյունավետության և որակի կարևորագույն ցուցանիշն է։

Աշխատանքի արտադրողականության մեջ անմիջականորեն արտացոլվում է իրականացվող ծախսումների օգտակար արդյունքը։ Արտադրողականության աճը, ինչպես հայտնի է, հանգեցնում է այն բանին, որ պակասում է ստեղծվող արտադրանքի մեկ միավորի վրա ծախսվող կենդանի աշխատանքը, իսկ անցյալ աշխատանքի ծախսումներն ավելանում են, բայց այնպես, որ ծախսվող աշխատանքի ընդհանուր քանակը կրճատվում է։ Աշխատանքի որակի բարձրացումը նպաստում է ինչպես կենդանի, այնպես էլ արտադրամիջոցների մեջ առարկայացած անցյալ աշխատանքի օգտագործման բարելավմանը, այդպիսով, հնարավորություն է ընձեռում՝ մեծացնելու աշխատանքային, նյութական և ֆինանսական ծախսումների յուրաքանչյուր միավորին ընկնող օգտակար արդյունքը։

Տասներորդ հնգամյակում աշխատանքի արտադրողականության բարձրացման հաշվին ստացվելու է երկրի ազգային եկամտի աճի 85—90 տոկոսը, մինչդեռ նախորդ՝ իններորդ հնգամյակում, այդ գործոնի հաշվին ապահովվել էր եկամտի աճի 80 տոկոսը։ 1976—1980 թվականներին աշխատանքի արտադրողականությունը կաճի մոտավորապես 27 տոկոսով։ Կենդանի աշխատանքի օգտագործման բարելավմամբ կտնտեսվի 26 մլն մարդու աշխատանք։ Աշխատանքի արտադրողականության աճի յուրաքանչյուր տոկոս այժմ հնարավորություն է ընձեռում լրացուցիչ ստանալու ավելի քան 5 մլրդ ռուբլու արդյունաբերական արտադրանք։ Աշխատանքի արտադրողականության բարձրացումն արտահայտվում է ո՛չ միայն արտադրանքի թողարկման ավելացման, այլև դրա աշխատատարողության, արտադրածախքերի կրճատման մեջ։

Ավելի ու ավելի մեծ նշանակություն է ստանում անցյալ մարդկային աշխատանքը մարմնավորող սարքավորումների, հումքի, վառելիքի, էներգիայի ռացիոնալ օգտագործումը։ Արդեն այժմ արդյունաբերական արտադրանքի արտադրության վրա կատարվող բոլոր ծախսումների չորս հինգերորդից ավելին բաժին է ընկնում հումքին, նյութերին, վառելիքին, էլեկտրաէներգիային։ Թողարկվող արտադրանքի համար կատարվող նյութական ծախսումների կրճատման յուրաքանչյուր տոկոս հավասար է մոտ 4 մլրդ ռուբլով ազգային եկամտի



լրացուցիչ մեծացմանը։ Արդյունաբերության մեջ արտադրաֆոնդերի յուրաքանչյուր ռուբլուց միայն մեկ կոպեկով ֆոնդահատույցի բարձրացումը տալիս է 3 մլրդ ռուբլու խնայողություն։

Աշխատանքի որակի բարելավումը, նպաստելով արտադրանքի ֆոնդատարողության, նյութատարողության և էներգատարողության կրճատմանը, ըստ էության, մեծացնում է ժողովրդական տնտեսության արտադրական պոտենցիալը։ ՍՄԿԿ XXV համագումարը կոչ արեց ճշգրիտ հաշվել և արդյունավետ օգտագործել յուրաքանչյուր ռուբլին, աշխատանքի յուրաքանչյուր ժամը, արտադրանքի յուրաքանչյուր տոննան, լիովին արմատախիլ անել անտնտեսվարությունն ու փնթիությունը։ Տասներորդ հնգամյակում մենք պետք է առնվազն 4—5 տոկոսով կրճատենք արդյունաբերության ապրանքային արտադրանքի մեկ ռուբլու վրա կատարվող ծախսումները, բարձրացնենք սոցիալիստական արտադրության շահութաբերությունը, միջին հաշվով 3—5 օրով արագացնենք շրջանառու միջոցների շրջանառությունը, թույլ չտանք, որ գոյանան նյութերի ու սարքավորումների ավելորդ պաշարներ։

Տնտեսության պլանային սիստեմի ժամանակ աշխատանքի որակը յուրաքանչյուր աշխատատեղում մեծապես պայմանավորված է կառավարման գիտական մակարդակով, համապետական առաջնահերթ ծրագրերի կատարման նպատակով ուժերի ու ռեսուրսների հմուտ համակենտրոնացմամբ, ճյուղային և տերիտորիալ պլանավորման ճկուն զուգակցմամբ, հեռանկարային ու ընթացիկ պրոբլեմների փոխկապակցված լուծմամբ, էկոնոմիկայի հաշվեկշռվածության ապահովմամբ։ Կոմունիստական կուսակցությունն արտադրանքի որակի և աշխատանքի որակի բարձրացմանն է նպատակամղում պլանավորման ու կառավարման ողջ մեխանիզմը, նյութական ու բարոյական խրախուսման ողջ սիստեմը, ինժեներների և կոնստրուկտորների, բանվորների ստեղծագործությունը։ Այդ խնդրին պետք է շարունակ սևեռված լինի կուսակցական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունների ուշադրությունը։

Էկոնոմիկայի զարգացման հանգուցային պրոբլեմների վրա ջանքերի կենտրոնացմամբ, գիտատեխնիկական առաջընթացի արագացմամբ, տնտեսությունը պլանային ձևով վարելու մեխանիզմի ու մեթոդների կատարելագործմամբ միայն հնարավոր է արմատապես բարձրացնել ժողովրդական տնտեսության արդյունավետությունն ու որակական մակարդակը, ապահովել դրա զարգացման բարձր տեմպերն ու ինտենսիվ բնույթը, առաջընթաց նոր քայլեր կատարել սովետական աշխատավորների բարեկեցության բարձրացման ճանապարհին։

Աշխատանքի որակի բարելավման համար ծավալվող պայքարը ռեալ հնարավորություններ է ստեղծում արտադրության արդյունավետության աճի համար։ Սակայն այդ պայքարում կարևոր է տեսնել նաև մյուս կողմը. առաջադրված նպատակներին հասնելու մեթոդներն ու միջոցներն են դրանք, աշխատանքի որակի բարելավման բուն փորձը։ Դրանք հույժ կարևոր են տնտեսական շինարարության մեջ։

Կենսագործելով ՍՄԿԿ XXV համագումարի պատմական որոշումները՝ սովետական մարդիկ կանգնել են աշխատանքային հերթափոխի։ Նրանք մշտապես հոգում են աշխատանքի որակի և արտադրության արդյունավետության բարձրացման համար, հանուն սոցիալիստական էկոնոմիկայի հաջող զարգացման, հանուն մեր ընդհանուր բարօրության։

## ՌԵՖԵՐԱՏՆԵՐԻ ՄՈՏԱՎՈՐ ԹԵՄԱՆԵՐ

1. Արտադրության ինտենսիվացումը ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման կարևորագույն ուղղությունն է։
2. Գիտատեխնիկական առաջընթացն աշխատանքի որակի բարելավման և արտադրության արդյունավետության բարձրացման հիմքն է։
3. Աշխատանքի բարձր որակի տնտեսական և սոցիալական էությունը։
4. Աշխատանքային կոլեկտիվների աշխատանքի որակի չափանիշներն ու ցուցանիշները։

«Политическое самообразование» № 10, 1976.

# ՆՇԱՆԱՎՈՐ ՏԱՐԵԹՎԵՐ

## ԺՈՂՈՎՐԴԻ ՍԻՐԵԼԻՆ

(ՍԵՐԳՈ ՕՐՋՈՆԻԿԻՁԵԻ ԾՆՆԴՅԱՆ 90-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ)



ԱՅՍՕՐ, ԵՐԲ սովետական ժողովուրդը կոմունիստական կուսակցության իմաստուն ղեկավարությամբ իրականացնում է երկրի սոցիալ-տնտեսական հոյակապ ծրագիրը, ստեղծում կոմունիզմի նյութատեխնիկական բազան, խորին երախտագիտությամբ է հիշում անմոռաց անուններն այն աննկուն լենինյանների, ովքեր հսկայական ավանդ մուծեցին պրոլետարական հեղափոխության և սոցիալիստական հասարակարգի հաղթանակի գործում: Այդպիսի ականավոր գործիչներից էր նաև բոլշևիկյան գվարդիայի ներկայացուցիչ, Լենինի հավատարիմ աշակերտ ու զինակից Գրիգորի (Սերգո) Կոնստանտինովիչ Օրջոնիկիձեն:

Գ. Կ. Օրջոնիկիձեն անցել է ռուսաստանյան երեք հեղափոխությունների բովով, բազմիցս ձերբակալվել և աքսորվել, ենթարկվել ցարիզմի դաժան հալածանքներին, բայց մնացել է անկոտրում, ցուցաբերել հոգու արիություն: Նա մինչև ուղն ու ծուծը հավատարիմ է մնացել մարքսիզմ-լենինիզմի ուսմունքին, իր գիտակցական ողջ կյանքն անմնացորդ նվիրաբերել բոլշևիկյան կուսակցության շարքերի միասնության ամրապնդմանը, աշխատավորների ազատագրության ու երջանկության ապահովման գործին, նրանց պայծառ ապագայի կերտմանը:

***

Սերգո Օրջոնիկիձեն լենինյան տիպի սկզբունքային ու անաղարտ կոմունիստ էր, միշտ դրսևորում էր անսահման հոգատարություն՝ ընկերների, աշխատավոր մարդկանց, ատելություն ու անհաշտ վերաբերմունք՝ թշնամու նկատմամբ: Նրա կյանքը եղել է կոմունիզմի իդեալների համար պայքարի վառ օրինակ:

Սերգո Օրջոնիկիձեն ծնվել է 1886 թ. հոկտեմբերի 27-ին, Քութաիսի նահանգի Գորեղա գյուղում: Նախնական կրթությունն ստացել է ծննդավայրի ծխական դպրոցում, ապա ավարտել Խարագաուլի գյուղի երկդասյա ուսումնարանը և Թիֆլիսի բուժական դպրոցը:

Տակավին պատանի, երբ սովորում էր բուժական դպրոցում, Սերգո Օրջոնիկիձեն նետվում է բանվորական-քաղաքական պայքարի հորձանուտը, ակտիվ մասնակցում սոցիալ-դեմոկրատական խմբակների աշխատանքին, խորությամբ ուսումնասիրում մարքսիզմ-լենինիզմը և տասնյոթամյա հասակում (1903 թ.) զինվորագրվում բոլշևիկյան կուսակցությանը, մինչև կյանքի վերջը հավատարիմ մնում նրա գործին ու գաղափարներին:

Սերգո Օրջոնիկիձեն ակտիվ գործունեություն է ծավալում ռուսական առաջին հեղափոխության տարիներին: Մշտապես գտնվելով քաղաքական պայքարի ավանգարդում՝ նա բանվորների շրջանում պրոպագանդում է լենինյան գաղափարները, անձնվիրաբար կատարում կուսակցական բազմաբնույթ հանձնարարություններ, մասնակցում տպագրական գործի հիմնադրմանը, կազմակերպում քաղաքական ցույցեր ու գործադուլներ, ստեղծում մարտական դրուժինաներ: Ամենուրեք՝ Թիֆլիսում թե Բաքվում, Բաթումում, Քութաիսում թե Սուխումիում, նա ճանաչվում է որպես կուսակցության աննկուն մարտիկ ու գործիչ: Բաքվում հեղափոխական աշխատանք է տանում կուսակցական այնպիսի նշանավոր գործիչների հետ, ինչպիսիք են Ստ. Շահումյանը, Ի. Ստալինը, Ս. Սպանդարյանը, Պ. Ջափարիձեն և ուրիշներ:

Կուսակցության ստրատեգիայի և տեխնիկայի հարցերում Օրջոնիկիձեն միշտ գտնվում էր լենինյան դիրքերում, հետևողականորեն պաշտպանում առաջնորդի գաղափարական-քաղաքական հայացքները, կազմակերպական սկզբունքները, դատապարտում մենշևիկների տակտիկական գիծը, նրանց պառակտիչ, օպորտունիստական քաղաքականությունը: Հեղափոխության հաղթանակից հետո՝ 1919 թ. բնութագրելով Օրջոնիկիձեին՝ Վ. Ի. Լենինը նկատել է. «...նա ամենահավատարիմ և ամենագործունյա հեղափոխական է, ես ինքս նրան գիտեմ 10 տարուց ավելի» (Երկեր, հ. 35, էջ 460):

Առաջին անգամ Օրջոնիկիձեն Լենինին հանդիպում է 1911 թ. հունվարին, Փարիզում, և նրանց միջև հաստատվում է ջերմ բարեկամություն: Սերգոն ուսանում է Փարիզի մերձակա Լոնժյումո բնակավայրում Վ. Ի. Լենինի հիմնադրած կուսակցական դպրոցում: Հետագայում, առաջնորդի հանձնարարությամբ,որպես արտասահմանյան կազմակերպական հանձնաժողովի (ԶՕԿ) ներկայացուցիչ, Ռուսաստանում նա ակտիվ մասնակցում է համակուսակցական VI կոնֆերանսի նախապատրաստմանը: Նա հսկայական ջանքեր է գործադրում կուսակցական կազմակերպությունների քաղաքական ու կազմակերպական ամրապնդման համար: Պրագայի VI կոնֆերանսը քանհինգամյա Սերգոյին ընտրում է Կենտկոմի ռուսական բյուրոյի կազմում: Ռուսաստանի արդյունաբերական խոշոր կենտրոններում Օրջոնիկիձեն իրեն հատուկ կրքոտությամբ պարզաբանում ու պրոպագանդում է կոնֆերանսի որոշումները, անհաշտ պայքար մղում լենինյան կուսակցության ամեն երանգի հակառակորդների դեմ: Օրջոնիկիձեի հեղափոխական ակտիվ գործունեությունն աննկատ չի մնում ցարական սատրապներից, և նա աքսորվում է Սիբիր: Այստեղ ևս (1912—1917 թթ.) Սերգոն շարունակում է պայքարը ինքնակալության դեմ, դրսևորում բոլշևիկյան աներեր կամք, անսահման նվիրվածություն՝ հեղափոխության գործին:

***

Սերգո Օրջոնիկիձեն Հոկտեմբերյան հեղափոխության ամենաակտիվ մասնակիցներից և հմուտ կազմակերպիչներից էր:Նրա քաղաքական ու կազմակերպչական տաղանդն առավել ցայտուն ի հայտ եկավ հեղափոխության թեժ մարտերում, նոր կյանքի հաստատման անողոք պայքարում:

Օրջոնիկիձեն քաղաքացիական պատերազմի տարիներին ինտերվենտների դեմ մղվող համաժողովրդական պայքարի ականավոր կազմակերպիչներից էր, Հոկտեմբերյան հեղափոխության նվաճումների երդվյալ պաշտպանը: Այդ ծանր տարիներին նա ժամանակավոր արտակարգ կոմիսար էր Ուկրաինայում և գլխավորում էր պարենավորման կարգավորման դժվարին գործը: Այստեղ ևս նա փայլուն կերպով է կատարում կուսակցության հանձնարարությունը: Այդ է վկայում Վ. Ի. Լենինի հեռագիրը Օրջոնիկիձեին. «Սրտանց շնորհակալ եմ պարենավորման ասպարեզում եռանդուն միջոցառումների համար: Շարունակեցեք... ամբողջ ջանքերով ձեռք բերել պարեն, շտապ կազմակերպել հացի մթերումն ու հանձնումը, որպեսզի հասցնեք մատակարարումը կարգավորել մինչև ճանապարհների փակվելը: Ամբողջ հույսը Ձեզ վրա է, այլապես զարնան մոտերքը սովն անխուսափելի է» (Երկեր, հ. 35, էջ 358): Օրջոնիկիձեն զբաղվում էր ո՛չ միայն պարենավորման կարգավորմամբ: Նա խորամուխ էր լինում սովետական բոլոր կազմակերպությունների գործունեության մեջ, ստեղծում կարմիրգվարդիական ջոկատներ՝ Դոնում բուն դրած հակահեղափոխական բանդաների դեմ պայքարելու համար, դրանով իսկ նպաստում սովետական կարգերի ամրապնդմանը: Նույնպիսի գործունեություն է ծավալում նաև Հյուսիսային Կովկասում, Կուբանում, Անդրկովկասում: Նրա նախաձեռնությամբ ստեղծվում է Հյուսիսկովկասյան Սովետական Հանրապետությունը, կազմակերպվում թշնամական տարրերի ջախջախումը այդ երկրամասում:

***

Սերգո Օրջոնիկիձեի տաղանդը՝ որպես պետական հմուտ ղեկավարի ու անզուգական կազմակերպչի, ողջ փայլով դրսևորվեց մեր երկրի ժողովրդական տնտեսության վերականգնման ու ինդուստրացման, մասնավորապես առաջին հնգամյակների տարիներին: Նա բանիմացությամբ գլխավորում է կենտրոնական վերահսկիչ հանձնաժողովն ու բանգյուղտեսչությունը, ժողովրդական տնտեսության բարձրագույն խորհուրդն ու ծանր արդյունաբերության ժողկոմատը: Աշխատելով այդ պատասխանատու պոստերում՝ Օրջոնիկիձեն անմիջականորեն զբաղվում էր երկրի էկոնոմիկայի զարգացման, սովետական ապարատի կատա-

րելագործման, սոցիալիստական օրինականության պահպանման բազմաբնույթ հարցերով, ուսումնասիրում արդյունաբերության, շինարարության արմատական խնդիրները, անմիջականորեն մասնակցում արտադրության նոր ճյուղերի կազմակերպմանը, անձամբ զբաղվում նոր ձեռնարկությունների գործարկման ու հների տեխնիկական վերազինման խնդիրներով:

Սոցիալիստական շինարարության դժվարին պայմաններում Օրջոնիկիձեն վճռականորեն պաշտպանում և իրականացնում էր երկրի ինդուստրացման լենինյան քաղաքականությունը: Նրա անվան հետ են կապված ժողովրդական տնտեսության, սոցիալիստական ինդուստրացման բնագավառում ձեռք բերված շատ նվաճումներ: Ժողովրդական տնտեսության զարգացման գործում նա հույժ կարևորում էր ծանր արդյունաբերության դերը «...որպես ժողովրդական տնտեսության բոլոր մնացած ճյուղերի վերակառուցման բազա...» (Գ. Կ. Օրջոնիկիձե, Ընտիր հոդվածներ և ճառեր, Երևան, 1950, էջ 460):

Գ. Կ. Օրջոնիկիձեն արտադրության մարդկանց, հրամանատարների և մասնագետների ուշադրությունը սևեռում էր ձեռնարկությունների տեխնիկական զինվածության, աշխատատար պրոցեսների մեքենայացման, արտադրանքի որակի բարելավման վրա: Նա պահանջում էր յուրաքանչյուր մարդու մեջ դաստիարակել հարգանք իր աշխատանքի հանդեպ, կշտամբում էր բոլոր նրանց, ովքեր չէին հոգում սեփական արտադրանքի մակնիշի համար, հանդես էին բերում անփութություն, թողարկում ցածրորակ արտադրանք:

Որպես ծանր արդյունաբերության ժողկոմ, Ս. Օրջոնիկիձեն խրախուսում էր այդ ճյուղում ծնունդ առած նորն ու առաջավորը, ուսանելի նախաձեռնությունը: Արդյունաբերության և տրանսպորտի ստախանովականների համամիութենական առաջին խորհրդակցության բացման առթիվ արտասանած ճառում (1935 թ. նոյեմբեր) նա ըստ ամենայնի արժեքավորում է ստախանովյան շարժման առաջմղիչ դերը: Այդ շարժման նշանակությունը նա տեսնում էր աշխատանքի արտադրողականության բարձրացման մեջ և բոլոր տնտեսավարների, ինժեներների ու տեխնիկների խնդիրն էր համարում «...բոլշևիկյան կուսակցության ղեկավարությամբ գլխավորել այդ շարժումը...» (նույն տեղը, էջ 488): Օրջոնիկիձեն համոզված էր, որ ստախանովյան շարժման լայն արմատավորումը նորանոր հաղթանակներ կբերի սոցիալիզմի կառուցման ճանապարհին, որովհետև «...աշխատանքի արտադրողականության այն աճը, որ տալիս են ստախանովականները, մեր երկիրը դարձնում է ուժեղ, հարուստ, հզոր, անպարտելի, որ դրանից բանվորն ինքը հսկայական չափերով ավելացնում է իր վաստակը, դառնում ունևոր և բարձրացնում իր կուլտուրական մակարդակը» (նույն տեղը, էջ 499):

Ժողովրդական տնտեսության վիթխարի վերակառուցման աշխատանքներում ամենուրեք նկատվում էին Օրջոնիկիձեի պրպտուն միտքն ու հոգատար ձեռքը, նրա սրատես աչքը: Նա ուշադրությամբ ունկնդրում էր մարդկանց, արագ կողմնորոշվում, թե ո՞ր գործը ում կարելի է վստահել, քաջալերում էր իր խելամիտ խորհուրդներով, հոգատար վերաբերմունքով, ընկերաբար ուղղում սխալները, բոլորին ներշնչում հաղթանակի նկատմամբ այն մեծ վստահությունը, որով առլեցուն էր ինքը: Նա մասնավորապես կարևորում էր երիտասարդ կադրերի դերը, համարձակ առաջ քաշում նրանց, վստահում պատասխանատու գործեր: «Առաջ քաշել նոր, երիտասարդ ինժեներների,— ասում էր նա,— նրանց դնել իրենց տեղերը— մեծ խնդիր է, որ պետք է կատարեն կուսակցությունը և տնտեսավարները» (նույն տեղը, էջ 309): Մի ուրիշ առիթով Օրջոնիկիձեին խորհուրդ էր տալիս՝ ուժեղացնել կուսակցական աշխատանքը ինժեներների ու տեխնիկների շրջանում, ուշադրությունը սևեռել տեխնիկական երիտասարդությանը առավել չափով կուսակցության մեջ ներգրավելու վրա (տե՛ս նույն տեղը, էջ 346):

Իր անձնական օրինակով, իր խոսք ու խորհրդով Ս. Օրջոնիեիձեն դաստիարակում էր մարդկանց կուսակցության մեծ գործի, սոցիալիզմի հաղթանակի նկատմամբ անսահման նվիրվածության ոգով:

Սոցիալիստական արդյունաբերության գլխավոր հրամանատարն արտադրությունը ղեկավարում էր ո՛չ միայն իր մարտական դիտակետից: Նա լինում էր տեղերում՝ կառույցներում, ձեռնարկություններում, ուսումնասիրում բանվորների աշխատանքային ու կենցաղային պայմանները, պարզում թերությունների ու թերացումների պատճառները, նրանց հետ մտորում արտադրության զարգացման կոնկրետ ուղիների ու եղանակների, թաքնված ռեզերվների հայտաբերման ու օգտագործման շուրջ:

Ժողովրդի գործին անմնացորդ նվիրված Օրջոնիկիձեն հարազատ մնաց իր դավանանքին. չկա ավելի մեծ հայրենասիրություն, քան սովետական իշխանությանը, պրոլետարիատի գործին անձնվիրաբար ծառայելը:

***

Սերգո Օրջոնիկիձեն մեծ ինտերնացիոնալիստ էր, ժողովուրդների լենինյան բարեկամության անխոնջ ջատագով: Նա հաստատակամորեն պայքարում էր մեր երկրի ազգերի ու ազգությունների դաշնության, նրանց բարոյաքաղաքական միասնության ամրապնդման համար: Գործելով Ուկրաինայում, Հյուսիսային Կովկասում ու Կուբանում, Անդրկովկասում՝ նա հսկայական ջանքեր է գործադրել այդ երկրամասերում սովետական կարգերի հաստատման ու ամրապնդման, ժողովուրդների բարեկամության ու նրանց երջանիկ կյանքի ապահովման համար:

Օրջոնիկիձեն հայ ժողովրդի լավագույն և անկեղծ բարեկամն էր և մեծ ծառայություն ունի նրա սոցիալական ազատագրման ու սոցիալիստական վերափոխման գործում: Քաջածանոթ լինելով հայ ժողովրդի պատմությանը՝ նա մեծ ուշադրությամբ հետևում էր նորաստեղծ Սովետական Հայաստանի առաջընթացին, սրտանց ուրախանում նրա հաջողություններով: Գլխավորելով կուսակցության Անդրերկրկոմը՝ նա այցելել է Հայաստան, մոտիկից զբաղվել հանրապետության ժողովրդական տնտեսության ու մշակույթի վերելքի հրատապ հարցերով, մտերիմ զրույցներ ունեցել աշխատավորների հետ, ունկնդրել ու ընդառաջել նրանց: Օրջոնիկիձեն մարդկային հոգու մեծ հմայք ուներ, կարողանում էր թափանցել մարդկանց սրտերը, պաշտպանել լավն ու բարին: Ամեն ոք ազատ մուտք ուներ նրա մոտ, կարող էր սրտաբաց պատմել նրան իր հոգսերի ու խոհերի մասին: Լենինյան տիպի գործիչ էր Օրջոնիկիձեն. նրա կյանքի իմաստը կուսակցության ու ժողովրդի շահերին հավատարիմ ծառայելն էր:

***

Անմոռաց Սերգոյի ծննդյան 90-ամյակը աշխատանքային նոր վերելքով նշանավորեց նրա անունը կրող մեր շրջանի աշխատավորությունը: Շրջանն Օրջոնիկիձեի անվամբ է կոչվում 1962 թվականից: Անցած մեկուկես տասնամյակը եղել է տնտեսական ու կուլտուրական առաջընթացի արգասավոր ժամանակահատված. շահագործման են հանձնվել բնակելի նոր զանգվածներ, ավելի քան 300 հազար քմ մակերեսով բնակելի տներ, ասֆալտապատվել, կանաչապատվել ու բարեկարգվել են բազմաթիվ փողոցներ ու բակեր: Այդ տարիներին կառուցվել են 15, վերակառուցվել ու ընդարձակվել 10 դպրոցական շենքեր, ծնունդ են առել պիոներների և երկաթուղայինների մշակույթի հոյակերտ պալատները, «Ռոսիա» և «Էրեբունի» կինոթատրոնները, հինգ նոր բուժօբյեկտներ: Այժմ շրջանում գործում են գիտահետազոտական ու առողջապահական տասնյակ հիմնարկություններ, միջնակարգ ու միջնակարգ-մասնագիտական ուսումնական և նախադպրոցական հաստատություններ, սպորտային բազաներ:

Առաջընթացի լուրջ քայլեր է արել արդյունաբերությունը: Երեք հնգամյակների ընթացքում շրջանում կառուցվել ու գործարկվել են մաքուր երկաթի փորձարարական, «Հաստոցանորոգում», ատաղձագործական իրերի գործարանները, կահույքի № 1 ֆաբրիկան և մի շարք այլ ձեռնարկություններ: Ընդարձակվել ու վերակառուցվել են էլեկտրատեխնիկական, «Հաստոցանորմալ», «Հիդրոհաղորդակ», գեղարվեստական ժամացույցների, ալրաղաց գործարանները, մսի կոմբինատը և Սովետաշենի տրիկոտաժի արտադրամիավորումը, շինարարական ու տրանսպորտային բազմաթիվ այլ ձեռնարկություններ, արտադրամասեր, կառուցվել են վարչական շենքեր: Իրականացվել են գիտատեխնիկական առաջընթացի արագացման միջոցառումներ. տեղակայվել են բարձր արտադրողական ավտոմատ, կիսավտոմատ հաստոցներ, ագրեգատներ, հոսքային գծեր և շատ այլ սարքավորումներ: Ձեռնարկություններում յուրացվել է բազմաթիվ նոր արտադրատեսակների ու մոդելների արտադրություն, տնտեսվել են մեծ քանակությամբ մետաղ ու էլեկտրաէներգիա և այլ հումք ու նյութեր:

Ուշադրությունը կենտրոնացնելով կարևոր խնդիրների լուծման վրա՝ կուսշրջկոմը և արդյունաբերական ձեռնարկությունների կուսկազմակերպությունները կարողացել են մոբիլիզացնել աշխատավորության ջանքերը՝ պատվով դուրս գալու Կիևի Ջալիզնիչնի, Թբիլիսիի Հոկտեմբերյան, Բաքվի Նարիմանովի և Դոնի-Ռոստովի Երկաթուղային շրջանների աշխատավորության հետ ծավալված ավանդական մրցությունից: Շրջանի արդյունաբերական ձեռնարկությունների կոլեկտիվները ժամկետից շուտ՝ Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 58-րդ տարեդարձի նախօրյակին, կատարեցին իններորդ հնգամյակի պլանները: Նրանք պլանից դուրս իրացրին ավելի քան 58 մլն ռուբլու արտադրանք:

Աշխատանքային ու քաղաքական նոր վերելքով սկսեցին շրջանի կոլեկտիվները տասներորդ հնգամյակը: Կենսագործելով կուսակցության XXV համագումարի որոշումները՝ աշխատավորներն իրենց գիտելիքները, հմտությունն ու ջանքերը ուղղել են աշխատանքի որակի ու արդյունավետության բարձրացմանը: Արդյունաբերական բոլոր ձեռնարկությունները գերակատարել են արտադրանքի իրացման ու համախառն արտադրանքի թողարկման 1976 թ. ինն ամսվա պլանները, պլանից դուրս թողարկվել է 8,5 միլիոն, իրացվել 7.691 հազար ռուբլու արտադրանք: Նախորդ տարվա նույն ժա-

մանակաշրջանի համեմատությամբ զգալիորեն մեծացել է արտադրանքի ծավալը, բարձրացել է աշխատանքի արտադրողականությունը: Ապրանքային արտադրանքի ինքնարժեքի արտապլանային իջեցումից ստացվել է 790 հազար ռուբլու տնտեսում: Հատկանշական է, որ եթե 1975 թ. ինն ամսում արտադրանքի իրացման պլանը թերակատարել էին 4, համախառն արտադրանքի թողարկմանը՝ 7, աշխատանքի արտադրողականության բարձրացմանը՝ 9 ձեռնարկություն, ապա այս տարի շրջանը չունի արտադրանքի իրացման, համախառն արտադրանքի թողարկման, աշխատանքի արտադրողականության բարձրացման պլանը թերակատարող և ոչ մի ձեռնարկություն:

Լուրջ տեղաշարժեր են կատարվել արտադրանքի որակի բարելավման ասպարեզում: Ձեռնարկություններում լայնորեն ներդրվում է արտադրանքի որակի կառավարման կոմպլեքսային սիստեմի ստեղծման՝ Լվովի մարզի առաջավոր արդյունաբերական ձեռնարկությունների կոլեկտիվների և կուսկազմակերպությունների փորձը: Որակի կառավարման կոմպլեքսային սիստեմն արդեն ներդրվել է Սովետաշենի տրիկոտաժի արտադրամիավորումում: Այդ առումով որոշակի քայլեր են արել էլեկտրատեխնիկական, գեղարվեստական ժամացույցների գործարանները և մի շարք այլ ձեռնարկություններ: Պետական որականիշով թողարկվող արտադրատեսակների թիվն անցել է 30-ից:

Զգալիորեն բարեփոխվել է շինմոնտաժային և պատվիրատու կազմակերպությունների գործունեությունը: Շինմոնտաժային և նորոգման կազմակերպությունները ևս գերակատարել են իրենց պլանները: Արդյունավետ են օգտագործել կապիտալ ներդրումները: Հնգամյակի առաջին տարվա խնդիրները հաջողությամբ են լուծում Անդրերկաթուղու Երևանի հանգույցի, բեռնատար ավտոտրանսպորտային և այլ ձեռնարկությունների կոլեկտիվները:

Ձեռք բերած հաջողությունների համար շրջանը 1976 թ. առաջին և երկրորդ եռամսյակներում արժանացել է ՀԿԿ Երքաղկոմի և Երքաղսովետի գործկոմի փոխանցիկ կարմիր դրոշին:

Շրջանի աշխատավորները պարտավորվել են, արտադրության մեջ գիտության ու տեխնիկայի նվաճումների, աշխատանքի կազմակերպման առաջավոր մեթոդների ներդրումն արագացնելու, հիմնական արտադրաֆոնդերի օգտագործման արդյունավետությունը բարձրացնելու և ներքին ռեզերվներն ավելի լրիվ օգտագործելու միջոցով, տասներորդ հնգամյակի առաջին տարվա արդյունաբերական արտադրանքի իրացման և հիմնական արտադրատեսակների թողարկման պլանը կատարել դեկտեմբերի 24-ին: Բոլոր կոլեկտիվներում միջոցառումներ են իրականացվում արտադրանքի որակի բարձրացման առաջավոր մեթոդների արմատավորման, որակի կառավարման կոմպլեքսային սիստեմի ներդրման և յուրաքանչյուր աշխատողի աշխատանքի որակի բարձրացման համար:

Տասներորդ հնգամյակում շրջանում կգործարկվեն արդյունաբերական նոր կարողություններ, կընդարձակվեն և կվերակառուցվեն գործող ձեռնարկությունները, կմեծանա արդյունաբերական արտադրանքի թողարկման և կապիտալ ներդրումների ծավալը: Պետությունը հսկայական միջոցներ է հատկացրել մշակույթի, կրթական ու առողջապահական օբյեկտների, բնակելի տների կառուցմանը:

Օրջոնիկիձեի շրջանի աշխատավորներն այսուհետ ևս իրենց բոլոր ուժերը կներդնեն՝ բարձրացնելու աշխատանքի որակն ու արտադրության արդյունավետությունը, ջանք ու եռանդ չեն խնայի ՍՄԿԿ XXV համագումարի որոշումները հետևողականորեն կենսագործելու, տասներորդ հնգամյակի սոցիալ-տնտեսական ծրագիրը հաջողությամբ իրականացնելու համար:

Հարգանքի տուրք մատուցելով Սերգո Օրջոնիկիձեի պայծառ հիշատակին՝ մենք մեկ անգամ ևս ըստ արժանվույն ենք գնահատում այն մեծ ավանդը, որ նա ներդրեց լենինյան պատգամների իրականացման, ժողովուրդների ինտերնացիոնալ դաշինքի ամրապնդման, սոցիալիստական տնտեսության ստեղծման ու զարգացման գործում: Լենինյան փառապանծ գվարդիայի լավագույն մարտիկի կյանքը, անսպառ եռանդը, դժվարությունները հաղթահարելու կորովը, ուղղամտությունը, մասսաներին ղեկավարելու կազմակերպչական տաղանդը, մարդկանց նկատմամբ անսահման հոգատարությունն ու ջերմությունը կոմունիստին բնորոշ փայլուն օրինակ են գալիք սերունդների համար:

Մ. Ս. ԳՐԻԳՈՐՅԱՆ

ՀԿԿ Երևանի կազմակերպության Օրջոնիկիձեի շրջկոմի առաջին քարտուղար

# ԼԵԳԵՆԴԱՐ ԳԱՅԸ

## (ԾՆՆԴՅԱՆ 90-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ)



ՍՈՎԵՏԱԿԱՆ ԱԿԱՆԱՎՈՐ զորապետ, քաղաքացիական կռիվների լեգենդար հերոս Գայի— Հայկ Դմիտրիի Բժշկյանցի անունն անխզելիորեն կապված է Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հաղթանակի և նրա նվաճումների պաշտպանության համար մղված պայքարի պատմության հետ: Գայը քաղաքացիական կռիվների հերոսներից է, նորաստեղծ կարմիր բանակի ճանաչված զորահրամանատարներից մեկը:

Քաղաքացիական կռիվների թեժ մարտերում ձևավորվեցին սովետական բանակը և հրամանատարական կազմը, որի շարքերում էին ցարիզմի լուծը թոթափած ժողովուրդների ներկայացուցիչները, ինչպես և հայ ժողովրդի արժանավոր զավակներ Ալեքսանդր Մյասնիկյանը, Գասպար Ոսկանյանը, Գրիգոր Խախանյանը, Հայկ Բժշկյանցը և շատ ուրիշներ:

Հարուստ ու բովանդակալից են Գայի կյանքն ու գործը: Նրա անցած ուղուն հատկանշական են այն դեգերումները, որոնք բնորոշ էին հայ առաջադեմ մտավորականությանը դեռևս դարասկզբին: Մխրճվելով դասակարգային հակասություններով լեցուն կյանքի հորձանուտը՝ նրանք գնահատում էին հասարակական ուժերի սոցիալական օրիենտացիան և հաճախ, անցնելով վերագնահատումների դժվարին ճանապարհով, գտնում սոցիալական առաջընթացի առագաստը: Կողմնացույցը ռուսաստանյան սոցիալ-դեմոկրատական շարժումն էր՝ Վ. Ի. Լենինի ղեկավարած բոլշևիկյան կուսակցության գլխավորությամբ: Նրանցից շատերը զինվորագրվում էին այդ կուսակցությանը՝ լիովին հրաժարվելով ազգայնական գաղափարախոսությունից, անվերադարձ հեռանալով բուրժուանացիոնալիստական կուսակցություններից:

Անցյալ դարի վերջերին, իր ծննդավայր Թավրիզում ստանալով տարրական կրթություն, ուսուցիչ հոր միջոցով Գայը ծանոթացել է տեղի հայ մտավորականությանը հուզող սոցիալական պրոբլեմներին: 1901 թ. փոխադրվելով Թիֆլիս, նա ընդունվել է տեղի Ներսիսյան դպրոցը: Այստեղ, տարվելով ազգային դեմոկրատական հովերով, 1903 թ. դարձել է հնչակյան մանր բուրժուական կուսակցության անդամ: Շարունակելով ուսումը, հարստացնելով գիտելիքները, հաղորդակցվելով տեղի հեղափոխական շարժումներին, ուսումնասիրելով մարքսլենինյան գրականությունը՝ Բժշկյանցը 1903 թ. վերջերին հարում է բոլշևիզմին: Այդ ժամանակից էլ հաշվվում է նրա կուսակցական ստաժը: Ուսումնառության վերջին տարիներին Գայն ակտիվ մասնակցում է Թիֆլիսի սոցիալ-դեմոկրատական ու բանվորական շարժումներին, որի համար և 1904 թ. հեռացվում է դպրոցից:

Ռուսական առաջին հեղափոխության տարիներին Գայը Բաքվում էր. նա մասնակցում էր քաղաքի բազմազգ պրոլետարիատի դասակարգային պայքարին, ագիտացիոն, պրոպագանդիստական ու կազմակերպական աշխատանք տանում մասնավորապես Բալախանիի և Բիբի

Հեյբաթի բանվորների շրջանում: Հանդես գալով բանավոր խոսքով և մամուլում (Բանվոր կամ Բանվոր Հայկ կեղծանուններով), նա պաշտպանում էր հեղափոխության գործը, մերկացնում բուրժուական կուսակցությունների, հատկապես դաշնակցության հակաժողովրդական վարքագիծը: Ռեակցիայի տարիներին բանվոր էր Գայը Նոբելի նավթարդյունաբերական ձեռնարկություններից մեկում և արհմիութենական շարժման ակտիվ գործիչ: Ստ. Շահումյանի հանձնարարությամբ 1910 թ. նա մասնակցում է Բալախանիի նավթարդյունաբերության աշխատողների արհմիության ստեղծմանը, որի համար և հետապնդվում, ստիպված է լինում փախչել Թիֆլիս: Այստեղ Բժշկյանցը շուտով (1911 թ.) ձերբակալվում, նետվում է Մետեխի բանտը, իսկ հաջորդ տարին աքսորվում է Աստրախան, նրա նկատմամբ սահմանվում է ոստիկանական մշտական հսկողություն: Առաջին համաշխարհային պատերազմի սկզբներին ցանկություն է հայտնում կամավոր մեկնելու կովկասյան ռազմաճակատ և այդ պատրվակով ազատվելով աքսորից, նա գալիս է Թիֆլիս: Շուտով հայկական կամավորական ջոկատների կազմում Հայկ Բժշկյանցը մեկնում է ռազմաճակատ և ռուս զինվորների հետ կռվում թուրքական բանակների դեմ, վիրավորվում մի քանի անգամ: Կռիվներում ցուցաբերած անվեհեր քաջության ու անձնվիրության համար պարգևատրվում է չորս մեդալով ու շքանշաններով: Կարճատև ռազմական դասընթացներ ավարտելուց հետո նա ստանում է ավագ ենթասպայի կոչում, դառնում նախ՝ վաշտի, ապա՝ գումարտակի և գնդի հրամանատար: Այդ ժամանակ դրսևորվում են նրա հրամանատարական ընդունակությունները: Սակայն դժգոհ էր նա կովկասյան ռազմաճակատում ծավալվող իրադարձությունների ընթացքից, հայ ժողովրդի նկատմամբ իմպերիալիստական տերությունների վարած քաղաքականությունից, ինչպես և ազգայնական կուսակցությունների, հատկապես դաշնակցության հակաժողովրդական, արկածախնդիր վարքագծից: Ուստի, նա շարունակում էր պրոպագանդել բոլշևիկյան հայացքները՝ հայ ժողովրդի փրկությունը կապելով ինքնակալության տապալման և հաղթական սոցիալիստական հեղափոխության բախտի հետ:

Ահա ինչու, երբ 1916 թ. Գայը փոխադրվում է Մոսկվայի զինվորական հիվանդանոց՝ բուժվելու, անմիջապես կապեր է ստեղծում տեղի բոլշևիկների հետ: Փետրվարյան բուրժուա-դեմոկրատական հեղափոխության ժամանակ, բանվորների ու զինվորների դեպուտատների Մոսկվայի սովետի հեղափոխական զորքերի շտաբի հանձնարարությամբ, ակտիվ մասնակցում է ցարական ոստիկանության և պահնորդական բաժնի ու ռեակցիոն սպայության զինաթափմանը: Այսպիսով, Հայկ Բժշկյանցը նաև ռուսական երկրորդ հեղափոխության եռանդուն մասնակիցն էր, այս անգամ երկրի կարևորագույն կենտրոններից մեկում՝ Մոսկվայում

Հրաժարվելով կովկասյան ռազմաճակատ վերադառնալու մտքից՝ 1917 թ. նա փոխադրվում է Սամարղանդ (Թուրքեստան, որտեղ գտնվում էր նրա ընտանիքը) և, կապվելով բոլշևիկների Անդրկասպյան երկրային կոմիտեի հետ, ծավալում հեղափոխական ակտիվ գործունեություն:

Այստեղ էլ նա լսում է Հոկտեմբերյան սոցիալիստական հեղափոխության հաղթանակի լուրը, մասնակցում սովետական իշխանության հաղթական երթին, նախ՝ Թուրքեստանում, ապա՝ Վոլգայի շրջաններում, Ռուսաստանի հարավում, Բելոռուսիայում և այլուր:

Թուրքեստանում սովետական կարգերի հաստատումից հետո կուսակցության Անդրկովկասյան երկրային կոմիտեի և Թուրքեստանի հեղկոմի հանձնարարությամբ Բժշկյանցը կազմակերպում է կարմիր գվարդիական բազմազգ ջոկատ և սովետական այլ զինված ուժերի հետ մեկտեղ հաղթական կռիվներ մղում Բուխարայի էմիրի հակահեղափոխական բանդաների դեմ: 1918 թ. փետրվար—մարտ ամիսներին էր այդ: Իսկ երբ նա լսում է չեխոսլովակյան կորպուսի խռովության մասին, յուրայինների մի փոքրիկ խմբի հետ մեկնում է Սամարա (1918 թ. ապրիլ) և, կապվելով քաղաքի կուսակցական ու պետական ղեկավար օրգանների հետ, նրանց հանձնարարությամբ արագ կազմակերպում է կարմիր գվարդիական զորամասեր ու կուսակցական դրուժինաներ և գրոհի տանում նրանց չեխական կորպուսի զորքերի դեմ: Հայկ Բժշկյանցի կամ Գայի (ինչպես այդ ժամանակ արդեն սկսել էին նրան կոչել) զորքերը անօրինակ սխրանքներ էին գործում: 1918 թ. հունիսին, Սամարայի հեղկոմի նախագահ Վ. Կույբիշևի և առաջին կարմիր բանակի հրամանատար Մ. Տուխաչևսկու հավանությամբ, ցաք ու ցրիվ զորամասերից և կարմիր գվարդիական ջոկատներից Գայը կազմակերպում է առաջին կանոնավոր հրաձգային դիվիզիան, որն իր սխրագործությունների համար շուտով ստանում է «երկաթյա» անունը և վերանվանվում «24-րդ երկաթյա դիվիզիա». այն գործում էր առաջին կարմիր բանակի կազմում: 1918 թ. վերջերին, ջախջախելով և ետ մղելով չեխական խռովարարներին ու սպիտակ գվարդիական զորքերին, Միջին Վոլգայում, Գայի դիվիզիան թշնամուց ազատագրեց հարյուրավոր բնակավայրեր ու բազմաթիվ քաղաքներ: Քաղաքացիական կռիվների պատմությունն աննախընթաց սխրանքներով հարստացրեց երկաթյա դիվիզիան՝ իր փառապանծ հրամանատարի ղեկավարությամբ, մասնավորապես Վ. Ի. Լենինի ծննդավայր Սիմբիրսկի ազատագրման համար մղված մարտերում: Ինչպես ողջ սովետական ժողովուրդը, այնպես էլ նրա զինված ուժերը, զայրույթով էին լցված սոցիալիստական հայրենիքի թշնամիների դեմ, որոնք էսեռուհի Կապլանի միջոցով փորձել էին զրկել պրոլետարիատին իր առաջնորդից: Սովետական ազնիվ մարդիկ ամեն ինչ անում են առաջնորդի կյանքը փրկելու, նրան սփոփելու համար: 1918 թ. սեպտեմբերի 10-ին Գայի դիվիզիան պաշարեց, իսկ 12-ին ազատագրեց Սիմբիրսկը: Գայը Լենինին ուղարկեց իր սպեղանի-հեռագիրը. «Թանկագին Վլադիմիր Իլյիչ. Ձեր հարազատ քաղաքի գրավումը Ձեր մի վերքի պատասխանն է, իսկ մյուս վերքի պատասխանը կլինի Սամարան»: Ստանալով Գայի այս հեռագիրը՝ Վ. Ի. Լենինը պատասխանում է. «Սիմբիրսկի— իմ հայրենի քաղաքի գրավումն ամենաբուժիչ, ամենալավ վիրակապն է իմ վերքերի վրա: Ես չտեսնված կայտառություն և ուժ եմ զգում: Շնորհավորում եմ կարմիր բանակայիններին հաղթանակի առթիվ և բոլոր աշխատավորների անունից շնորհակալություն եմ հայտնում նրանց բոլոր զոհողությունների համար» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 28, էջ 102): Առաջնորդի այս ջերմ հեռագիրը մեծագույն ոգևորություն է առաջացնում 24-րդ երկաթյա դիվիզիայի շարքերում: Այդ պատմական հեռագրին հաջորդում են Յա. Սվերդլովի, գերագույն գլխավոր հրամանատար Ի. Վացետիսի, Սիմբիրսկի մարզկոմի և մարզգործկոմի հեռագրերը, ինչպես նաև ՌՍՖՍՀ Կենտգործկոմի որոշումը՝ դիվիզիային Աշխատանքային կարմիր դրոշով պարգևատրելու մասին: Հորդում է ոգևորության նոր ալիքը, որի մասին են վկայում դիվիզիայի պետ Գայի, կոմիսարներ Բ. Լիվշիցի ու Ն. Պանովի պատասխան հեռագրերը դիվիզիայի մարտիկների ու սպաների նորանոր սխրանքների մասին, որոնց Իլյիչին մշտապես իրազեկ էր պահում Արևելյան ռազմաճակատի ռազմահեղափոխական խորհրդի անդամ Պ. Կոբոզևը: Վերջինս հիացած էր սովետական զորապետ Գայի քաջությամբ, հեղափոխության գործին բոլորանվեր հավատարմությամբ:

Մի առիթով Պ. Կոբոզևը Գայի մասին գրել է. «Վլադիմիր Իլյիչ Լենինը չափազանց բարձր էր գնահատում նրան, որպես առաջին կարմիր բանակի իրոք առաջին ստեղծողներից մեկի»[1]:

[1] *Տե՛ս «Բանբեր Հայաստանի արխիվների», Երևան, 1971 թ., էջ 268):*

Մինչև 1918 թ. դեկտեմբերի 1-ը Գայի հրամանատարությամբ երկաթյա դիվիզիայի զորքերը մարտերով անցան մոտ 5.000 կմ տարածություն. ջախջախելով ու ետ շպրտելով սպիտակգվարդիական լավ զինված բանդաներին՝ ազատագրեցին Վոլգայի և Ուրալի շրջանների հարյուրավոր գյուղեր ու քաղաքներ:

Առաջին կարմիր բանակի հրամանատար Մ. Տուխաչևսկին 1918 թ. դեկտեմբերի 1-ին նշանակվեց այլ բանակի հրամանատար. նրա առաջարկով երկաթյա դիվիզիայի պետ Գայը նշանակվեց առաջին կարմիր բանակի հրամանատար: Նոր պարտավորություններ, նոր սխրանքներ... Գայի ղեկավարությամբ առաջին կարմիր բանակը ետ շպրտելով կոլչակյան բանդաներին՝ ազատագրեց նորանոր քաղաքներ ու բնակավայրեր: Այդ մարտերում ծանր վիրավորված Գայը փոխադրվում է Մոսկվա՝ բուժվելու: Ապաքինվելուց հետո մեկնում է հարավային ճակատ՝ մարտնչելու ընդդեմ Դենիկինի: Սկզբում նա ղեկավարում է 42-րդ հրաձգային դիվիզիայի ռազմական գործողությունները, ապա մասնակցում կարմիր հեծելազորի ստեղծմանը՝ անձամբ ձևավորելով առաջին կովկասյան հեծյալ դիվիզիան, իսկ 1920 թ. ապրիլին՝ երկրորդ հեծյալ կորպուսը: Մ. Տուխաչևսկու հրամանով Կովկասում նա ղեկավարում է Մամոնտովի և Պավլովի սպիտակգվարդիական զորքերի դեմ մղվող մարտերը, պարտության մատնում նրանց:

Թամանյան թերակղզում Գայը ձևավորում է փոքրիկ մի նավատորմիկ՝ դեսանտային գործողությունների համար, գլխավորում Ազովի հարավ և Սև ծովի հյուսիս-արևելյան ափերի մի մասի պաշտպանական ամրությունների ստեղծման ու ամրապնդման դժվարին գործը:

Մարտերում կոփված հանրաճանաչ կարմիր զորապետ էր արդեն Գայը, երբ, 1920 թ. գարնանը, սկսվեց Անտանտի հերթական արշավանքը սովետական նորաստեղծ պետության դեմ: Կուսակցությունն ու կառավարությունը ձեռնամուխ եղան պանական Լեհաստանի և բարոն Վրանգելի զորքերի ջախջախմանը: Ստեղծվեցին արևմտյան և հարավարևմտյան ռազմաճակատները, ուր կենտրոնացվեց կուսակցական ու ռազմական փորձված, լավագույն գործիչների մի մասը: Երկրորդ հեծյալ կորպուսի շտաբի հետ Գայը տեղափոխվեց արևմտյան ռազմաճակատ, որի հրամանատարն էր Մ. Տուխաչևսկին, ռազմահեղափոխական խորհրդի անդամները՝ Ի. Ունշլիխտը և Ալ. Մյասնիկյանը (վերջինս նաև ռազմաճակատի քաղվարչության պետն էր): Գիտակցելով արևմտյան ռազմաճակատի կարևորությունը՝ Գայը դիմել էր Մ. Տուխաչևսկուն և կարմիր բանակի շտաբին՝

խնդրելով իրեն այնտեղ ուղարկել: Մ. Տուխաչևսկին հեռագրով պատասխանում է իր մարտական ընկերոջն ու զինակցին. «Թանկագին Գա՛յ, կորպուսի շտաբի փոխադրումը Արևմտյան ռազմաճակատ լուծված է դրականորեն: Արագ պատրաստվիր: Միասին կխփենք լեհական շլյախտային: Քո Տուխաչևսկի»: Գալով արևմտյան ռազմաճակատ՝ Գայը հրաման է ստանում կարճ ժամանակում ձևավորելու 3-րդ հեծյալ կորպուսը և հուլիսի սկզբներին պատրաստ լինել՝ ճեղքելու լեհական ռազմաճակատը: Մի քանի օր անց, հուլիսի սկզբներին, նա իր զորքերը գրոհի է տանում և, ճեղքելով լեհական պաշտպանությունը, կարճ ժամանակում ազատագրում է Բելոռուսիայի և Լիտվայի մայրաքաղաքները, դրանով իսկ նպաստելով արևմտյան ռազմաճակատի մյուս զորքերի ընդհանուր հաջողությունների զարգացմանը: Նոր ուժով է փայլատակում Գայի ռազմական տաղանդը, դրսևորվում նրա քաջությունն ու խիզախությունը: Գայի ղեկավարած կորպուսի զինվորներն ու սպաները, մոտ ամիս ու կես տևած մարտերում անցնելով ավելի քան 1.300 կմ տարածություն, ազատագրում են շատ քաղաքներ ու գյուղեր: Սակայն արևմտյան ռազմաճակատի որոշ զորամասեր, ինչպես և Գայի 3-րդ հեծյալ կորպուսը, թիկունքից շատ էին հեռացել, ծանր կորուստներ էին կրել անհավասար կռիվներում: Եվ, չկարողանալով ճեղքել թշնամու թվական գերակշռություն ունեցող զորքերի պաշարումը, հնարավորություն չունենալով թիկունքից օգնություն ստանալու, չուզելով հանձնվել թշնամուն, ստիպված եղան անցնել գերմանական սահմանը և ներկալվել: Գերմանիայում ևս կարմիր զինվորները բարձր պահեցին սովետական մարդկանց և հայրենիքի պաշտպանների պատիվը:

Միայն 1920 թ. նոյեմբերին, դիվանագիտական անհրաժեշտ միջամտությունից հետո, սովետական կառավարությունը կարողացավ ետ բերել նրանց հայրենիք:

Ավարտվել էին քաղաքացիական կռիվները: Գայը որոշեց շարունակել ուսումը և հարստացնել իր ընդհանուր ու մասնագիտական գիտելիքները: 1920 թ. դեկտեմբերին նա ընդունվեց կարմիր բանակի ռազմական ակադեմիան, ուր սովորեց երկու տարի: ՀԿ(բ)Կ Կենտկոմի և Հայաստանի կառավարության հրավերով, ՌԿ(բ)Կ ԿԿ քաղբյուրոյի 1922 թ. սեպտեմբերի 28-ի որոշմամբ, նա գալիս է Հայաստան և նշանակվում ռազմական ժողկոմ, կարևոր դեր խաղալով ինչպես հանրապետության, նույնպես և Անդրկովկասի կարմիր բանակի զորամասերի ամրապնդման, նրանց մարտական ու քաղաքական պատրաստության կոփման գործում:

Այստեղ նա սերտորեն աշխատակցում է Ալ. Մյասնիկյանի, Ս. Օրջոնիկիձեի, Ս. Կիրովի, Ս. Լուկաշինի և այլոց հետ:

1923 թ. կեսերին նա կանչվում է Մոսկվա և նշանակվում 7-րդ հեծյալ դիվիզիայի հրամանատար, փոխադրվում Մինսկ, որտեղ կրկին կազմավորում է 3-րդ հեծյալ կորպուսը:

Գայի հրամանատարությամբ 7-րդ կորպուսում էր ծառայում նաև այն ժամանակ հեծյալ գնդի հրամանատար, հետագայում ականավոր զորավար, Սովետական Միության մարշալ Գ. Ժուկովը. ջերմ երախտագիտությամբ են համակված նրա հուշերն իր հրամանատարի մասին. «Գ. Դ. Գայի հրամանատարության տակ գտնված զորքերի գործողություններն իրավամբ կարելի է անվանել պատմականորեն առասպելական... Գայի հրամանատարությամբ գործած հին մարտիկները հուզմունքով ու սիրով էին հիշում իրենց հրամանատարին»: Բելոռուսիայում ևս բացի ռազմական գործից Գայն ակտիվ մասնակցում էր կուսակցական ու պետական կազմակերպությունների աշխատանքին՝ դրսևորելով կուսակցական ու պետական գործչի լավագույն հատկություններ:

Քաղաքացիական կռիվներում ցուցաբերած քաջագործությունների համար սովետական խիզախ զորավարն արժանացել է կառավարական բարձր պարգևների, մարտական շքանշանների:

Խաղաղ շինարարության տարիներին դրսևորվեցին Գայի մանկավարժական, գիտահետազոտական ու գրական աշխատանքի ակնեռև ունակություններն ու հմտությունը: 1927 թ. ավարտելով կարմիր բանակի ռազմական ակադեմիան՝ Գայը նշանակվում է նույն ակադեմիայի դասախոս: Այնուհետև, տասը տարի շարունակ, նա աշխատում է Ժուկովսկու անվան ռազմա-օդային ակադեմիայում, որպես պատերազմների պատմության ամբիոնի վարիչ, վայելելով գործընկերների, ակադեմիայի ունկնդիրների անկաշառ սերն ու հարգանքը: Ահա թե ինչ է գրել ակադեմիայի ղեկավարությունն անվանի պրոֆեսորի մասին. «Փորձված, վաստակավոր մարտական հրամանատար է... ակտիվ ու տոկուն կոմունիստ, լավ մանկավարժ, հեղինակավոր պրոֆեսոր պատերազմների պատմության բնագավառում, նա հիմնովին վերակառուցեց այդ գիտությունը մարքս-լենինյան մեթոդոլոգիայի ոգով: Կուսակցության հին անդամ է նա՝ լայնորեն ճանաչված իր հասարակական քաղաքական աշխատանքով»:

Կատարելապես տիրապետելով ռուսերենին ու հայերենին, (նա շատ լավ գիտեր նաև պարսկերեն, թուրքերեն, ադրբեջաներեն, ֆրանսերեն և այլ լեզուներ) Գայն իր հոդվածները, գեղարվեստական ստեղծագործությունները, գիտական հետազոտությունները գրում էր հենց այդ լեզուներով: Նրա բազմաթիվ աշխատություններ՝ Առաջին հարվածը Կոլչակին, Պայքար չեխոսլովակների կորպուսի դեմ միջին Վոլգայում, Դեպի Վարշավա, Գերմանական ճամբարում, Ռուս-ճապոնական պատերազմը և այլն լույս են տեսել ռուսերեն: Հայերեն հրատարակվել են նրա Կարմիր բանակի մասին, Տասներկու տարի առաջ, Գետանց և այլ գործեր:

Գայի Ռուս-ճապոնական պատերազմը գիրքը և, հատկապես, ակադեմիայում նրա կարդացած դասախոսությունների սղագրությունը՝ 1914—1918 թթ. առաջին համաշխարհային պատերազմը անտիպ աշխատությունը, լենինյան պատմագիտության խոր ըմբռնման և նրա սկզբունքների հմուտ կիրառման լավագույն օրինակ են: Հենվելով Վ. Ի. Լենինի այդ ժամանակաշրջանում գրած աշխատությունների վրա՝ նա գիտականորեն լուսաբանել է առաջին համաշխարհային պատերազմի ծագման պատճառները, բնույթը, մերկացրել պատերազմող կողմերի պլանները, խորապես վերլուծել պատերազմի ընթացքը: Չնայած աշխատության մեջ տեղ գտած առանձին վրիպումներին ու սխալներին, այն այդ պատերազմի գիտական պատմության հաջողված շարադրանք է, ուր հեղինակն իրավամբ եզրակացնում է՝ քանի դեռ կա իմպերիալիզմը, անխուսափելի են իմպերիալիստական նոր պատերազմները, ուստի, անհրաժեշտ է անսահման հոգածություն սոցիալիստական հայրենիքի պաշտպանունակության ամրապնդման համար:

Գայի մարդկային առաքինությունների վկայությունն է այն փաստը, որ իր աշխատությունները նա նվիրել է Վ. Վ. Կույբիշևին, Մ. Վ. Ֆրունզեին, մարտական մյուս ընկերներին, զինակիցներին, մարտերում զոհված շարքային զինվորներին:

Գայը հետևողական ինտերնացիոնալիստ էր: Նրա ջերմ, բոլշևիկյան խոսքը ոգեշնչում, հաղթական մարտերի էր տանում իր հրամանատարությամբ գործող բազմազգ զինվորներին: Երկաթյա դիվիզիայի՝ Պենզայում ձևավորված գնդերից մեկը, որի հրամանատարն էր հունգարացի կոմունիստ Դյուլա Անդրաշ Վարգան, կոչվում էր ինտերնացիոնալ գունդ, այն կազմված էր գերազանցապես արտասահմանյան կոմունիստներից, նախկին գերիներից: Գայն անձնական մտերմական կապեր ուներ նրանցից շատերի հետ: Գայի ղեկավարած երկաթյա դիվիզիան փառքով շարունակեց իր տաղանդավոր հրամանատարի ստեղծած մարտական ավանդույթները նաև սովետա-ֆիննական կռիվներում և մեծ Հայրենականի տարիներին:

Հետաքրքրական ու սիմվոլիկ է Գայի կազմած՝ իր դիվիզիայի «ծառայության ցուցակը», որտեղ ասված է. դիվիզիայի անունն է՝ 24-րդ, ազգանունը՝ երկաթյա, հայրանունը՝ Սիմբիրսկյան, ծննդյան թիվը՝ 1918, ծնել է նրան Հոկտեմբերյան հեղափոխությունը, ավարտել է քաղաքացիական կռիվների համալսարանը, թշնամուց 100 քաղաք ազատագրելու և այլ քաջագործությունների համար նա պարգևատրվել է բազմաթիվ շքանշաններով. այդ տեղեկությունների ճշտության մասին կարող են վկայել Սիմբիրսկի, Օրենբուրգի պրոլետարիատը և ցարական գեներալներ Կոլչակը, Դուտովը և Դենիկինը:

Գային սիրում, գնահատում էին իր մարտական ընկերները և այն քաղաքների ու բնակավայրերի աշխատավորությունը, որոնց ազատագրման անմիջական մասնակիցն էր նա: Հին բոլշևիկների միության, պարտիզանների ընկերության անդամ էր Գայը, բազմաթիվ քաղաքների պատվավոր քաղաքացի: Նրա անունով կոչվել են դպրոցներ, փողոցներ, հրապարակներ, նրա մասին երգեր են հյուսվել...: «Քաղաքացիական պատերազմի ահեղ տարիներին,— գրել է Ս. Մ. Բուդյոննին,— որպես մի վառ աստղ փայլեց հայ ժողովրդի փառապանծ զավակ, սովետական նշանավոր զորահրամանատար Գայ Դիմիտրիևիչ Գայի անունը»:

Երախտապարտ սովետական ժողովուրդը միշտ վառ կպահի անժամանակ կյանքից հեռացած Գայի՝ քաղաքացիական կռիվների լեգենդար հերոսի պայծառ հիշատակը:

Վ. Ն. ՆԵՐԿԱՐԱՐՅԱՆ
Պատմական գիտությունների
դոկտոր, պրոֆեսոր

## ՄԱՄՈՒԼԻ ՏԵՍՈՒԹՅՈՒՆ

# ՀՆԳԱՄՅԱԿԻ ՆՇԱՆԱԲԱՆԸ՝ ՈՒՇԱԴՐՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆՈՒՄ

**ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ կոմունիստական կուսակցության XXV համագումարում, խոսելով մեր կուսակցության տնտեսական ստրատեգիայի և տասներորդ հնգամյակի հիմնական առանձնահատկությունների մասին, ընկեր Բրեժնևն ասաց, որ տասներորդ՝ որակի հնգամյակի կարևորագույն խնդիրը մնում է ժողովրդի կյանքի նյութական ու կուլտուրական մակարդակի անշեղ բարձրացումը: Իսկ դրան հասնելու միջոցներն են՝ «հանրային արտադրության դինամիկ և համամասնական զարգացումը, նրա արդյունավետության բարձրացումը, գիտատեխնիկական առաջընթացի արագացումը, աշխատանքի արտադրողականության աճը, ժողովրդական տնտեսության բոլոր օղակներում աշխատանքի որակի համակողմանի բարելավումը»:**

**Կուսակցության այդ վեհ կանխագծումները ժողովրդին, լայն հասարակայնությանը լուսաբանելու, իրազեկ դարձնելու գործում մեծ անելիքներ ունեն շրջանային թերթերը: Աշխատանքի կազմակերպման բանիմաց նպատակասլացություն, երկրի և հանրապետության նվաճումների որակյալ ցուցադրում, աշխատանքի տարբեր տեղամասերի վիճակի խոր վերլուծություն, հաջողությունների ցուցադրման ու թերությունների գործարար քննադատության ճիշտ զուգակցում, տնտեսական, արտադրական, գաղափարական ու դաստիարակչական աշխատանքի արմատական պրոբլեմների, ժողովրդական տնտեսության կառավարման կենսական խնդիրների, ինչպես և բացասական երևույթների դեմ մղվող պայքարի հետ կապված նյութերի լուսաբանում— ահա այն խնդիրները, որ առաջադրվեցին մամուլի աշխատողներին Հայաստանի կոմունիստական կուսակցության XXVI համագումարում:**

**Հետայսու պարբերաբար կանդրադառնանք այն հարցին, թե շրջանային թերթերն ինչպես են լուսաբանում արդյունավետության ու որակի հարցերը:**




ԿԵՆՍԱԳՈՐԾԵԼՈՎ ՍՄԿԿ XXV և ՀԿԿ XXVI համագումարների որոշումները՝ հանրապետության աշխատավորները պատվով են կատարում ստանձնած պարտավորությունները, նվաճում նոր բնագծեր: Հնգամյակի առաջին տարվա պլաններն զգալիորեն գերակատարել են նաև Հոկտեմբերյանի շրջանի աշխատավորները, որոնց նվաճումներն ու հաջողությունները համակողմանիորեն արտացոլված են «Կոմունիզմի համար» լրագրի էջերում:

Դեռևս ՍՄԿԿ XXV համագումարի նախօրյակին լրագիրը շրջանի աշխատավորներին տոգորում էր կոմունիզմի կառուցման վեհ ծրագրի իրագործման պատրաստակամությամբ, մոբիլիզացնելով նրանց՝ ջանքեր չխնայել կուսակցության առաջադրանքները կենսագործելու, նոր կյանքի ծավալուն կառուցման գործում մշտապես առաջավորների շարքերում գտնվելու համար:

Համագումարի կանխագծումների իրականացմանն են ձեռնամուխ եղել շրջանի աշխատավորները: Եվ լրագիրը պարբերաբար, համակողմանի արծարծում է նոր հնգամյակի կարևորագույն պրոբլեմները՝ արդյունավետության և որակի բարձրացման բազմաթիվ հարցեր: Լրագրում պատշաճ ձևով լուսաբանված է շրջանի կուսկազմակերպությունների արդյունավետ գործունեությունը, նրանց կազմակերպական-քաղաքական ղեկավար դերը:

**Կուսակցական կյանք** բաժնում Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանակիր պահածոների գործարանի կուսկազմակերպության քարտուղար Մ. Մկրտչյանը (**Որակի և արդյունավետության նշանաբանով,** № 29) գրում է սոցմրցության կազմակերպման հարուստ փորձ ունեցող իրենց կոլեկտիվի մասին. այստեղ պայմաններ են ստեղծված առաջավորների փորձի լայն կիրառման, նորարարական և գյուտարարական առաջարկությունների արմատավորման համար. մեքենայացված են աշխատատար մի շարք պրոցեսներ, կիրառվում են նյութական խրախուսման միջոցները: Դրվատելով սոցմրցության արդյունավետ կազմակերպման փորձը՝ հոդվածագիրն անդրադարձել է գործարանում եղած մի շարք թերությունների: Այստեղ երբեմն անբավարար է թողարկվող արտադրանքի որակը,— գրում է նա:— Եվ դրա պատճառն ամենից առաջ այն է, որ հերթափոխերի պետերից ոմանք լրիվ չեն պատկերացնում պահածոների արտադրության տեխնոլոգիան, չունեն մասնագիտական համապատասխան որակավորում, լիովին չեն օգտագործվում արտադրական րողությունները: Հնգամյակը նոր գործերով նշանավորելու և որակյալ արտադրանք թողարկելու նպատակով սոցիալիստական մրցություն է ծավալվել գործարանի արտադրամասերի և հերթափոխերի միջև:

Մի այլ հոդվածում (**Պահածոյագործների վճռականությունը,** № 112) նույն գործարանի գյուղատնտեսական հումքի գլխավոր մասնագետ Ռ. Բարեղամյանը, նշելով տասներորդ հնգամյակի առաջին տարվա անելիքները, իրավամբ գրում է, որ բարձրորակ արտադրանքի թողարկման հիմնական նախապայմանը հումքի որակն է: Ահա ինչու նա գտնում է, որ անհրաժեշտ է գործարան հանձնել ստանդարտին համապատասխանող միրգ ու բանջարեղեն:

**Բարձրացնել աշխատանքի արդյունավետությունը** հոդվածում (№ 37) հեղինակը թվական տվյալներով ցույց է տվել «Լենինուղի» սովխոզի վնասները. իններորդ հնգամյակում բարձր է եղել սովխոզի մթերքների արտադրության ինքնարժեքը, թերակատարվել են խաղողի, պտղի, կաթի ու մսի պլանները. ձևական բնույթ է կրել սոցմրցությունը: Լրագիրը կոչ է արել սովխոզի կուսկազմակերպությանը՝ օգտագործել կուսակցական-կազմակերպական աշխատանքի բոլոր հնարավորությունները՝ ՍՄԿԿ XXV համագումարի առաջադրած խնդիրների լուծման համար:

**Մրցությունը գլխավորում են կոմունիստները** (№ 108) հոդվածում լրագիրն ընթերցողներին ծանոթացնում է «Գլխհայջրշին» վարչության Հոկտեմբերյանի № 11 շարժական մեքենայացված շարասյան կոլեկտիվի գործունեությանը. այստեղ էլ մրցության առաջավորները կոմունիստներն են: Եվ հեղինակը՝ Ս. Ալեքսանյանը, դրվատում է Ռ. Աբրահամյանի, Հ. Սարգսյանի, Թ. Ղազարյանի և ուրիշների հայրենանվեր աշխատանքը:

Աղուտ հողերի հարթեցման զգալի աշխատանք են կատարել շրջանի մեխանիզատորները: Պլանով սահմանված 200 հեկտարի դիմաց նրանք խոստացել են հարթեցնել 215 հեկտար հողատարածություն: Ամեն ինչ արվում է ոռոգման ցանցի կապիտալ աշխատանքները ժամանակին կատարելու համար: Կոլեկտիվը խոստացել է նախատեսված բնագծերը նվաճել ժամկետից շուտ և օբյեկտները շահագործման հանձնել բարձր որակով:

Լրագրի համարյա բոլոր համարներում հանդիպում ենք **Բարձր արդյունավետության և որակի համար** վերտառությանը: **Այստեղ ծնվում են նոր հաստոցներ** (№ 54) ռեպորտաժից տեղեկանում ենք, որ Հոկտեմբերյանի հաստոցաշինական գործարանի հաստոցներն առաքվում են 340—400 հասցեներով: Դրանք լայնորեն կիրարկվում են ժողտնտեսության գրեթե բոլոր ճյուղերում: Գործարանի դիրեկտոր Հ. Անդրեասյանը, հպարտությամբ նշելով, որ Հոկտեմբերյանը դառնում է հանրապետության հաստոցաշինական աչքի ընկնող կենտրոններից մեկը, պատմում է «2 Լ—53—Ու» նոր հաստոցի առավելությունների մասին: Նոր տիպի հաստոցներից երկուսը կներկայացվեն Պլովդիվում և Բուդապեշտում կազմակերպվող միջազգային ցուցահանդեսներում:

Հաստոցների ստեղծման գործում հոկտեմբերյանցիներին օգնել են Չարենցավանի կենտրոնական ձուլարանը, Երևանի Ձերժինսկու անվան հաստոցաշինական գործարանը և հանրապետության հաստոցաշինական-մեքենաշինական փորձարարական ինստիտուտը:

**Արժանացել է պետական որականիշի** թղթակցությունից (№ 87) տեղեկանում ենք, որ 1969—71 թթ. ծնունդ առած «Հոկտեմբերյանի ադանդերային» գինին ՍՍՀՄ պետական

ստանդարտների կոմիտեի կողմից արժանացել է պետական որականիշի: Գինու գործարանն ունի փորձառու մասնագետներ, որոնք պայքարում են բարձրորակ արտադրանքի և պլանային առաջադրանքների անթերի կատարման համար: Տասներորդ հնգամյակի առաջին տարում գործարանը կատարել է համախառն արտադրանքի, իրացման, առաքման և օգուտների պլանները: Նրա արտադրանքն առաքվում է մեր Միության տարբեր քաղաքներ:

Կրասնոդարի երկրամասի հողագործների՝ երկրին ավելի շատ գյուղատնտեսական մթերքներ տալու հայրենասիրական նախաձեռնությունը լայն արձագանք գտավ Հոկտեմբերյանի աշխատավորության շրջանում: Ջերմորեն պաշտպանելով կուբանցիների նախաձեռնությունը՝ կոլտնտեսականներն ու սովխոզի բանվորներն ստանձնեցին նոր, ավելի բարձր պարտավորություններ: Այդ ամենն արտացոլված է **Խոստումը գործ կդառնա, Պարտավորվել է բրիգադը** (№ 91), **Ոգեշնչման նոր աղբյուր, Մեր պատվի գործը, Նոր ձգտումով** (№ 90) և այլ հոդվածներում:

Հոկտեմբերյանի շրջանի աշխատավորները պատրաստակամությամբ արձագանքեցին նաև Կալինինոյի շրջանի աշխատավորների՝ կուտակել մեկ ու կես տարվա անասնակեր կոչին: Շրջանում հայտարարվեց կերի կուտակման շաբաթ: Լրագիրն ընթերցողներին ծանոթացրել է կերի հայթայթման ու կուտակման նպատակով ձեռնարկված միջոցներին, հանրային տնտեսությունների կատարած գործերին:

Զարգացման լայն հեռանկարներ ունեցող այս շրջանի համար մեծ նշանակություն ունեն որակյալ շինանյութերի արտադրությունն ու կառույցների ժամանակին շահագործման հանձնումը: Այս հարցերին է նվիրված շինանյութերի և իրերի կոմբինատի կուսկոմիտեի քարտուղար Թ. Աֆրիկյանի **Առաջընթացի ուղիով** (№ 117) հոդվածը:

**Ուժ ու կորով ստեղծարար բազկիդ, շինարա՛ր** (№ 94). այս խորագիրն են կրում լրագրի երկրորդ և երրորդ էջերը. «Գյուղշինի» № 8 տրեստի գլխավոր ինժեներ Ա. Առուշանյանը **Կկառուցենք արագ և որակով** հոդվածում, նշելով առաջին կիսամյակի իրենց հաջողությունները, անդրադարձել է նաև թերություններին: Կառույցները ժամանակին և որակով շահագործման հանձնելու համար նա առաջարկում է ստեղծել առաջավոր, հատկապես, զլոբինյան մեթոդով աշխատող բրիգադներ: Այստեղ զետեղված են նաև այդ մեթոդով աշխատող բրիգադայի բրիգադավար Ռ. Բաբայանի (**Կանաչ ճանապարհ նորին ու առաջավորին**), շինանյութերի և իրերի կոմբինատի դիրեկտոր Ա. Ալավերդյանի (**Կառույցներին կտանք ավելի շատ շինանյութեր**) և այլ թղթակցություններ:

Հոկտեմբերյանի շրջանի մեխանիզատորները մեծ ջանքեր են գործադրել գյուղատնտեսական կուլտուրաների արդյունավետության բարձրացման, աշխատատար պրոցեսների կոմպլեքս մեքենայացումն ապահովելու, հնգամյակի առաջին տարվա բերքահավաքը կազմակերպված անցկացնելու համար: Նրանք պարտավորվել են տեխնիկան բանեցնել անխափան, արմատավորել առաջավոր փորձը: Այդ մասին է պատմում Է. Շահինյանի **Շրջանի մեխանիզատորների խոսքը** թղթակցությունը (№ 73):

Ստուգայցերի միջոցով լրագիրը հաճախ բացահայտում է շրջանի արդյունաբերական ձեռնարկություններում, կոլտնտեսություններում ու սովխոզներում տեղ գտած այն թերությունները, որոնք խոչընդոտում են որակի և արդյունավետության բարձրացմանը (**Արդյունավետ օգտագործել ոռոգման ջուրը,** № 44, **Խոսքերով անասուն չես կերակրի,** № 105, **Հնձանները այցելուի նախօրեին,** № 108 և այլն): Այստեղ տպագրվում են նաև ակնարկներ արդյունավետության ու որակի համար պայքարող արտադրության առաջավորների մասին:

«Կոմունիզմի համար» լրագիրն իր հրապարակումներով նպաստում է աշխատավորության հասարակական-քաղաքական ակտիվության բարձրացմանը, ոգեշնչում նրանց աշխատանքային նորանոր սխրանքների:




ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅԱՆ արդյունաբերական խոշոր կենտրոններից է Ղափանի շրջանը: Այստեղ են գտնվում Քաջարանի Լենինի շքանշանակիր պղնձա-մոլիբդենային կոմբինատը, «Քաջարանշին» տրեստը, որոնք արժանացել են ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների սովետի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի «Իններորդ հնգամյակում կատարած աշխատանքային աբիության համար» հուշանշանին և փոխանցիկ կարմիր դրոշին, դրանց անունները գրանցված են ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության նվաճումների ցուցահանդեսի համամիութենական պատվոտախտակին: 1975 թվականի ժողովրդական տնտեսության պլանը ժամկետից շուտ կատարելու և իններորդ հնգամյակը հաջողությամբ ավարտելու, սոցմրցության մեջ բարձր ցուցանիշների հասնելու համար ՀԿԿ, ՀՍՍՀ Մինիստրների սովետի, ՀԱՄԽ-ի և ՀԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշով է պարգևատրվել նաև ողջ շրջանը: Բնականաբար, այս հասումներն արտացոլվել են շրջանային «Պղնձի համար» լրագրում: Չորս տասնամյակից ավելի է, ինչ այն համակողմանի լուսաբանում է Ղափանի և նրա շրջանային տնտեսությունների հասարակական-քաղաքական, տընտեսական ու կուլտուրական շինարարության առօրյան, բացահայտում և խարազանում տեղ գտած թերությունները, աջակցում կուսակցության առաջադրած խնդիրների լուծմանը: Թերթը հատկապես մեծ ուշադրություն է նվիրում ՍՄԿԿ XXV համագումարի որոշումների կենսագործմանը, տասներորդ հնգամյակի պլանային առաջադրանքների կատարմանը:

Լրագրի համարյա բոլոր համարներում **ՍՄԿԿ XXV համագումարի որոշումները գործողության մեջ, Կենսագործենք ՍՄԿԿ XXV համագումարի որոշումները** խորագրերի ներքո զետեղված են թղթակցություններ, որոնք ներկայացնում են շրջանի ո՛չ միայն մրցանակակիր, առաջատար ձեռնարկությունների հաջողությունները, դրանք ապահովող նորանոր միջոցառումները, այլև նշում այն թերացումներն ու թերությունները, որոնք խոչընդոտում են կոլեկտիվների ռիթմիկ աշխատանքը:

«Պղնձի համար»-ի ուշադրության կենտրոնում են որակի և արդյունավետության հարցերը: Նրա բազմաթիվ նյութեր, թեմատիկ էջեր վերտառված են **Արդյունավետություն և որակ** (№№ 37, 44, 51, 67, 104, 127):

Արդյունավետության և որակի բարձրացում— այս ամենակարևորն է էկոնոմիկայի բոլոր ճյուղերի, յուրաքանչյուր մինիստրության ու ձեռնարկության աշխատանքներում. կուսակցության համագումարում ընկեր Լ. Ի. Բրեժնևի արտասանած այս խոսքերը ոգևորությամբ համակեցին նաև Ղափանի աշխատավորությանը:

Լրագրի առանձին համարների (№№ 44, 71) երկրորդ և երրորդ էջերը նվիրվել են արդյունավետության ու որակի հարցերին: Դրանք շրջանի աշխատավորների՝ արտադրության առաջավորների, կուսակցական կազմակերպության քարտուղարների, գլխավոր ինժեներների, դիրեկտորների զեկույցներն են տասներորդ հնգամյակի առաջին տարվա արդյունքների մասին:

«Արդյունավետության և որակի հնգամյակին՝ բանվորական երաշխիք». այս նշանաբանով են աշխատում արդյունաբերական բազմաթիվ ձեռնարկություններ, որոնց նախաձեռնություններն ու գործնական միջոցառումները լրագրի միջոցով լայնորեն տարածվում են արտադրական մյուս կոլեկտիվներում: Արտադրության արդյունավետության բարձրացման, աշխատանքի որակի բարելավման տեսակետից զգալի տեղաշարժեր են նկատվում շրջանի արդյունաբերական ձեռնարկություններում, շինարարական ու տրանսպորտային կազմակերպություններում, կոլտնտեսություններում ու սովխոզներում: Լրագիրը բազմիցս անդրադարձել է Ղափանի լուսատեխնիկական, «Էլեկտրոն» գործարանների, Քաջարանի պղնձա-մոլիբդենային կոմբինատի, կահույքի ֆաբրիկայի և այլ ձեռնարկությունների հասումներին (№№ 34, 39, 56, 67, 109): Որակին, արդյունավետությանը վերաբերող հոդվածներում բացահայտվում են և թերությունները, քննադատվում թերացող կազմակերպությունները: Այսպես, լրագրի էջերում քննադատվել են կաթի, գարեջրի, հացի գործարանների, կենցաղ-սպասարկման կոմբինատի արտադրանքը, շինարարական առանձին կազմակերպություններ:

**Կուսակցական կյանք** խորագրի տակ զետեղված նյութերում (№№ 43, 63, 69, 80, 90, 116) լրագիրը լուսաբանել է շրջանի սկզբնական կուսկազմակերպությունների անելիքները ընթացիկ հնգամյակի առաջադրած խնդիրների լուծման գործում:

Որակի և արդյունավետության բարելավումն է Ղափան—Զանգելան ավանդական սոցիալիստական մրցության նպատակը: «Պղնձի համար»-ը լրագրային տարբեր ժանրերի նյութերով պարբերաբար արտացոլում է սոցմրցության ընթացքը, ներկայացնում առաջավորներին, հաղթողներին (№№ 41, 71, 89, 126): Լրագիրն անդրադառնում է նաև շրջանի մրցանակակիր բազմաթիվ կոլեկտիվների հաջողություններին, որոնց շնորհիվ Ղափանը ճանաչվել է որպես հանրապետության աչքի ընկնող արդյունաբերական կենտրոններից մեկը:

**Մեր նոր շքանշանակիրները** (№№ 67, 72, 100), **Պատմվածքներ կոմունիստի մասին** (№ 64), **Վարպետ-դաստիարակներ** (№ 115) և այլ նյութերում ներկայացված են շրջանի առաջավորները: Լայն է լրագրի հեղինակային ակտիվը. թղթակցում են ո՛չ միայն ժուռնալիստներն ու բանգյուղթղթակիցների ակումբի անդամները, այլև կոլտնտեսության նախագահները, սոցմրցության մասնակիցները, մեխանիզատորներ, տարբեր մասնագետներ, արտադրության հրամանատարներ, շարքային բանվորներ ու ծառայողներ:

Որակի բարելավման հարցերն են արծարծվում լրագրի այլ հոդվածներում ևս— **Կահույքագործների ձգտումը** (№ 34), **Միավորման արհեստանոցում** (№ 37), **Առաջադրված խըն-**

**դիրների անթերի կատարման համար** (№ 39), **Ավտոտրանսպորտայինները Գանձասարում** (№ 101) և այլն:

Հեղինակները ո՛չ միայն ներկայացնում են իրենց աշխատավայրերի լավն ու առաջավորը, ուսանելին, այլև քննադատում, բացահայտում են տնտեսության տարբեր օղակներում տեղ գտած թերությունները, օգնում՝ ժամանակին կատարելու ստանձնած պարտավորությունները և առավել որակյալ արտադրանք տալու պետությանը:

**Բարձրացնել շինարարության տեմպն ու որակը** (№ 51), **Արագ և խնայողաբար** (№ 76), **Նոր միջոցառումներ** (№ 92), **Շատ և բարձրորակ հաց բնակչությանը** (№ 114), **Մեծ խնդիրները առջևում են** (№ 67) և նման հոդվածներում արտացոլված են շրջանի ձեռնարկությունների, տնտեսությունների վիճակը, նշված են այն միջոցառումները, որոնք նպաստելու են թողարկվող արտադրանքի որակի ու արդյունավետության բարձրացմանը, նոր արտադրատեսակների յուրացմանը, նյութական ռեսուրսների իրացմանը, աշխատանքի գիտական կազմակերպման հետագա կատարելագործմանը: Լրագիրը մասսայականացնում է **որակի հասարակական հսկիչ** խմբերի գործունեության առաջավոր փորձը (№ 92):

Խրախուսելի են խմբագրության կազմակերպած տարբեր ստուգայցները (№№ 35, 63, 89, 97, 98, 104...), որոնք անմիջական օգնություն են ցույց տալիս շրջանի մի շարք տնտեսությունների:

Շինարարության մեջ բարձր արդյունավետության հասնելու համար անհրաժեշտ է կառուցել արագ, խնայողաբար և ժամանակակից տեխնիկական հիմքի վրա: Կուսակցության այս պահանջը լայն արձագանք է գտել նաև Ղափանի շրջանի շինարարական կազմակերպություններում: Այդ են վկայում «Դղնձի համար» լրագրի էջերում հրապարակված բազմաթիվ հոդվածներ (№№ 51, 74, 95, 32, 59, 61, 75, 76, 91): Ուշագրավ է զլոբինյան մեթոդի կիրառումը շրջանի «Քաջարանշին» տրեստի № 1 շինվարչությունում:

Որակի հարցը նույնքան հրատապ է նաև մանկավարժության բնագավառի աշխատողների համար, որոնք իրենց գործունեության ընթացքում պետք է ջանան գտնել դասավանդման առավել գիտական, արդյունավետ մեթոդներ: Այս առումով ուսանելի է Լեռնաձոր գյուղի մանկավարժական կոլեկտիվի առաջավոր փորձը, որին անդրադարձել է լրագիրը իր հերթական համարներից մեկում (№ 34): «Դղնձի համար»-ը նշանակալի տեղ է հատկացնում երիտասարդության դաստիարակության հարցերին. **Ուսուցչի ամբիոն** վերտառությամբ հրապարակվող նյութերը հաճախ են նվիրվում մանկավարժական կոլեկտիվների աշխատանքի որակին, ուսուցման ու դասավանդման կազմակերպման առաջավոր ձևերին (№№ 38, 64):

Մասսայական ինֆորմացիայի և պրոպագանդայի, մամուլի գործիչների խնդիրն է ավելի ներգործուն դարձնել ազդեցությունը էկոնոմիկայի, գիտության ու կուլտուրայի զարգացման, ողջ հասարակական կյանքի վրա: «Դղնձի համար» լրագիրը կարողացել է թղթակցական ակտիվի միջոցով արտացոլել շրջանի կյանքը, օգնել կուսկազմակերպություններին՝ **խթանելու** աշխատավորության կոմունիստական դաստիարակության գործը, հաջողությամբ լուծելու շրջանի տնտեսական ու կուլտուրական զարգացման հետագա խնդիրները:

Ցանկանք, որ «Դղնձի համար»-ը այսուհետ ես ավելի բազմակողմանի ու խոր լուսաբանի շրջանի կյանքը, պրոպագանդի առաջավոր փորձը, բացահայտի տարբեր բնագավառներում տեղ գտած թերությունները՝ օգնելով դրանց վերացմանը:




«ԵՐԿՐԻ ԱՌՋԵՎ կանգնած տնտեսական և սոցիալական բազմազան խնդիրները հաջողությամբ լուծելու համար այլ ուղի չկա, բացի **աշխատանքի արտադրողականության արագ աճից, ամբողջ հանրային արտադրության արդյունավետության խիստ բարձրացումից**»— ՍՄԿԿ XXV համագումարի առաջադրած այս խնդիրներն աշխատանքային խանդավառությամբ համակեցին Հրազդանի շրջանի բանվորներին, կոլտնտեսականներին, ողջ աշխատավորությանը:

«Հրազդան» շրջանային լրագրի էջերում լուսաբանվում են շրջանի բազմաբեղուն առօրյան, հայրենանվեր աշխատանքը կառույցներում, արտադրական ձեռնարկություններում, հանրային դաշտերում ու ֆերմաներում:

**Հնգամյակի հարվածային հերթափոխում, Անթերի կատարենք ՍՄԿԿ XXV համագումարի որոշումները, Որակի ղեկավարման կոմպլեքսային սիստեմ, Գարնանացան—76, Սոցիալիստական մրցության հաղթողները, Խոտհունձ—76-ը հարվածային ճակատ, Բերքահավաքին** **արագ տեմպեր, գերազանց որակ** և այլ խորագրերի ներքո զետեղված նյութերը հանգամանորեն պատմում են արտադրական բարձր ցուցանիշների հասած կոլեկտիվների, հնգամյակի առաջամարտիկների մասին:

Լրագրի էջերում տպագրվում են հաղորդումներ, թղթակցություններ, ռեպորտաժներ, հոդվածներ ու ակնարկներ: Կուսակցական աշխատանքի առաջավոր փորձն ընդհանրացնող ու պրոպագանդող հոդվածներում պատմվում է կուսկոմիտեների ղեկավար դերի մասին, ցույց տրվում, թե ինչպես են նրանք կազմակերպում հանրային արտադրության արդյունավետության ու աշխատանքի արտադրողականության բարձրացման, գիտատեխնիկական առաջընթացի արագացման, սոցմրցության ծավալման, աշխատավորների նյութական բարեկեցության բարձրացման գործը:

Հրազդանի շրջանի աշխատավորները, իններորդ հնգամյակի ինչպես եզրափակիչ տարին, նույնպես և ողջ հնգամյակն ավարտեցին արտադրական բարձր ցուցանիշներով: Այդ հաջողությունների գնահատականը եղավ համամիութենական սոցմրցության փոխանցիկ դրոշի նվաճումը:

«Հրազդանի կոմունիստները,— կարդում ենք «Правда» թերթի այս տարվա մարտի 23-ի առաջնորդողում,— կարողացել են գյուղի աշխատավորներին մոբիլիզացնել ռեզերվների որոնման, կերի բազայի բարելավման համար. նրանք մեքենայացնում են ֆերմաների աշխատանքները, արմատավորում անասունների ինտենսիվ բտում»:

Ընթերցողին հայտնի է դառնում, որ շրջանում գյուղի աշխատավորները հաջողությամբ եզրափակեցին տասներորդ հնգամյակի առաջին կիսամյակը, որ շրջանում կուտակվել է շատ անասնակեր, կատարվել է հացահատիկի մեկ հեկտարի բերքատվության առաջադրանքը, պետությանն է վաճառվել պլանից զգալիորեն ավելի հացահատիկ: Լրագիրը հաղորդում է, որ տասներորդ հնգամյակի առաջին բերքահավաքն սկսել են Բջնիի, Արզականի և Գյումուշի պետական ու կոլեկտիվ տնտեսությունների, Ջրառատի սովխոզի հացագործները (№№ 101, 108):

Լրագիրը տեղեկացնում է, որ բարձր բերք են աճեցրել նաև շրջանի ծխախոտագործները: Գյումուշում, Աթարբեկյանում, Քաղսիում, Սոլակում, Մեղրաձորում նրանք հաջողությամբ ավարտել են ծխախոտի քաղուշարի աշխատանքները: Արդեն երրորդ տարին է, ինչ Քաղսիի կոլտնտեսությունում շրջանացվել է «Սամսուն—36» բարձր բերքատու ծխախոտի տեսակը, 700 բ.մ.-ի վրա կատարվել ջերմոցային ցանք:

**Առաջադրանքները որոշակի են, խնդիրները՝ պարզ** (№ 90), **Կգործադրենք բոլոր ջանքերը** (№ 73), **800 տոննա սիլոս** (№ 87), **Նշված բնագծերը կնվաճվեն** (№ 91) և այլ վերտառությամբ նյութերը պատմում են անասնապահների աշխատանքի մասին: Անասնաբուծական մթերքների արտադրության և պետությանը դրանք վաճառելու գործում շրջանի անասնապահները հասել են մեծ հաջողությունների:

Անասնապահության բնագավառում 1976 թ. առաջին կիսամյակում առավել բարձր ցուցանիշների հասնելու համար ՀԿԿ Հրազդանի շրջկոմի և աշխատավորների դեպուտատների շրջսովետի գործկոմի փոխանցիկ դրոշին է արժանացել Հանքավանի սովխոզը:

Գիտատեխնիկական և առաջավոր փորձի լայն արմատավորմամբ միայն հնարավոր է հասնել արտադրական բարձր ցուցանիշների: Դրա լավագույն ապացույցն են շրջանի մի շարք տնտեսություններում՝ Քաղսիում, Սոլակում, Ֆանտանում, Մեղրաձորում և Ջրառատում ստեղծված կերախոհանոցները, ուր տեղադրված են կերը մանրացնող ու վերամշակող մեքենաներ, սարքավորումներ, կերախառնիչ հարմարանքներ (**Կերախոհանոցը որպես մթերքների արտադրության ավելացման կարևոր միջոց**, № 71):

Լրագրում մեծարվում է աշխատանքի մարդը, վաստակած մարդը: Ահա Գուրգեն Գրիգորյանը՝ Հրազդանի սովխոզից: Նա արժանացել է հանրապետության վաստակավոր հովվի կոչման, բազմիցս պարգևատրվել պատվոգրերով, մեդալներով: Նրա մասին է պատմում Գ. Գրիգորյանը **Մարերին սովոր** ակնարկում (№ 84): Իսկ Չարենցավանի № 6 շինվարչության մոնտաժող Վ. Թավաքալյանը գրում է իր պարտավորության մասին— աշխատել այնպես, որ շահագործման հանձնվող շենքերը գնահատվեն միայն լավ ու գերազանց, տնտեսվեն հնարավորին չափ շատ շինանյութեր:

**Արդյունավետության և որակի հնգամյակ** (№ 39) հոդվածում Չարենցավանի երկաթբետոնե կառուցվածքների գործարանի կուսկազմակերպության քարտուղար Ռ. Սոլկարյանը նկարագրում է, թե գործարանի կոմունիստներն ինչպես են հայտաբերում արտադրանքի ավելացման, ինչպես և թողարկվող արտադրանքի որակի բարելավման չօգտագործված ռեզերվները: Հոդվածագիրը նշում է, որ գործարանում արդյունավետության և որակի բարձրացմանը մեծապես խթանում է սոցմրցությունը:

**Հրապարակայնությունը խթանում է սոցմրցությունը** (№ 90) հոդվածում Չարենցավանի

«Կենտրոնաձուլ» գործարանի սկզբնական կուսկազմակերպության քարտուղար Վ. Լևոնյանը նշում է կուսկոմիտեի դերը սոցմրցության հրապարակայնության ապահովման խնդրում: Կուսկոմիտեն վճռական նշանակություն է տալիս մրցողների նյութական ու բարոյական խրախուսմանը: Գործարանի բոլոր աշխատողների նշանաբանն է՝ «Տասներորդ հնգամյակը դարձնել արդյունավետության և որակի հնգամյակ՝ հանուն էկոնոմիկայի և ժողովրդի բարեկեցության հետագա աճի»: Այս հնգամյակի անդրանիկ տարվա առաջին եռամսյակում սոցմրցության մեջ հաղթող ճանաչվելու համար Չարենցավանի «Կենտրոնաձուլ» գործարանը երրորդ անգամ արժանացավ ՍՍՀՄ հաստոցաշինության և գործիքաշինության մինիստրության մրցանակին:

**Համագործակցված աշխատանքով** (№ 37) թղթակցությունում Գ. Յուրմուզյանը ներկայացնում է Չարենցավանի հաստոցաշինական գործարանի կոլեկտիվի հեռանկարները: Լվովի ֆրեզերային հաստոցների գործարանի օրինակով, նրանց ուսանելի փորձի հիման վրա, ձեռնարկությունում արմատավորվում է արտադրանքի որակի ղեկավարման կոմպլեքսային սիստեմ:

Ստեղծագործական որոնումների հնգամյակ է տասներորդը: Արդյունավետությունն ինքնին չի ստեղծվում, աշխատանքի յուրաքանչյուր րոպեն պետք է խելացի օգտագործվի: Իսկ արդյունավետություն նշանակում է՝ ամենից առաջ, արդյունավետ օգտագործել նոր տեխնիկան, հումքը, օժանդակ նյութերը: Ահա ինչու Մ. Հովհաննիսյանի **Արդյունավետություն նորի ներդրմամբ** (№ 59), Ս. Սարգսյանի **Ստեղծումի ուղիով** (№ 61) հոդվածներում հատուկ ուշադրություն է նվիրվում գյուտարարական և նորարարական նախաձեռնություններում աշխատավորության լայն մասսաների ակտիվ մասնակցության ապահովմանը: Դրան նպաստում է գյուտարարների և նորարարների բյուրոն:

Աշխատանքային խիզախումների ուղիով են ընթանում շրջանի կոմերիտականներն ու երիտասարդները: Լրագրից տեղեկանում ենք, որ Հրազդանի ՊՇԷԿ-ի ԼԿԵՄ կոմիտեի նախաձեռնությամբ շրջանում ծավալվել են «Արդյունավետության հնգամյակին՝ հզոր էներգետիկ բազա», «Հնգամյակին՝ հարվածային վերջնագիծ», «Մեծ Հոկտեմբերի 60-ամյակին՝ 60 հարվածային շաբաթ» հայրենասիրական շարժումները, որոնց մասնակիցները հաջողությամբ են կատարում ու գերակատարում ստանձնած պարտավորությունները:

ՀԿԿ Կենտկոմի մայիսյան պլենումի որոշումները մեծ խանդավառությամբ համակեցին Հրազդանի շրջանի շինարարներին:

Կառուցել արագ, խնայողաբար և ժամանակակից տեխնիկական հիմքի վրա— ահա կապիտալ շինարարության մեջ բարձր արդյունավետության բաղադրատարրերը,— ՍՄԿԿ XXV համագումարում նշեց Լ. Ի. Բրեժնևը:

**Յուրաքանչյուր տոննայի համար** (№ 87), **Կառուցել արագ, խնայողաբար, որակով** (№ 67), **Նոր թափ կապիտալ շինարարությանը** (№ 77) և այլ հոդվածներում լրագիրը հաղորդում է, որ շրջանում զգալի գործ է արվել շինարարական կադրերի ընտրության, դաստիարակության, շինարարական գործի կազմակերպման ու բարելավման մարզում: Զլոբինյան մեթոդի արմատավորմամբ շինարարության մեջ զգալիորեն բարձրացվել է աշխատանքի արտադրողականությունը:

Լրագրում վեր են հանված նաև շինարարական աշխատանքներում տեղ գտած թերությունները— թերակատարվել են հիմնական ֆոնդերի գործարկման պլանները, կառույցները ժամանակին չեն ապահովվել սարքավորումներով, զգալի է կադրերի հոսունությունը և այլն:

Խմբագրության կազմակերպած ստուգայցերից պարզվում է, որ Չարենցավանի գործիքաշինական գործարանում հաճախ են լինում առաքման վայրերի խախտումներ, սխալ հասցեագրումներ: Մատակարարող կազմակերպությունների պատճառով հաճախ ուշացվում է հումքը (Ծ. Վլասյան, **Սկզբունքայնություն թերությունների հանդեպ,** № 61): Վիճակը բարվոք չէ «Հայներուդ» տրեստի Չարենցավանի հանքվարչությունում (Ս. Սարգսյան, **Անհրաժեշտ է բեկում,** № 94): Այստեղ զգացվում է մասնագետ, բարձրորակ կադրերի խիստ պակաս: Մեծ է կադրերի հոսունությունը: Իններորդ հնգամյակում տրեստը թերակատարել է պետական պլանները: Նոր հնգամյակի առաջին տարում ևս վիճակը չի փոխվում: Բավարար չէ և արտադրանքի որակը: Տեխնիկապես անսարք վիճակում է սպասարկող տրանսպորտը: Հոդվածագիրը եզրակացնում է, որ այս ամենն անհարիր է ժամանակի պահանջներին և անհրաժեշտ է բարեփոխել հանքվարչության աշխատանքները:

Այսպես, «Հրազդան»-ը համար առ համար լուսաբանում է շրջանի տնտեսական և գաղափարական կյանքը, արտացոլում աշխատավորների ծավալած համակողմանի գործունեությունը տասներորդ հնգամյակի կարևորագույն խնդրի՝ որակի ու արդյունավետության բարձրացման ասպարեզում:

# «Լենինյան ուղիով» ամսագրի 1976 թ. համարներում տպագրված հոդվածների և նյութերի ցանկ



## ԱՌԱՋՆՈՐԴՈՂՆԵՐ

## ՍՄԿԿ XXV ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻՆ ԸՆԴԱՌԱՋ: ՔՆՆԱՐԿՈՒՄ ԵՆՔ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ XXV ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻՆ ՆԵՐԿԱՅԱՑՎՈՂ ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ՆԱԽԱԳԻԾԸ



## ԿԵՆՍԱԳՈՐԾԵՆՔ ՍՄԿԿ XXV ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ՈՐՈՇՈՒՄՆԵՐԸ



## ՀՈԴՎԱԾՆԵՐ







## ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿՅԱՆՔ

# Մեր հարցաթերթիկը

**Հարգելի ընկեր**

**ՀԿԿ Կենտկոմի «Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է Ձեզ՝ պատասխանել հետևյալ հարցերին** (ընդգծել անհրաժեշտ պատասխանը):

**1. ԱՄՍԱԳՐԻ Ո՞Ր ՀՈԴՎԱԾՆԵՐՆ ԵՆ ՁԵԶ ԱՎԵԼԻ ՇԱՏ ԴՈՒՐ ԳԱԼԻՍ** (առաջնորդող, տեսական, տնտեսագիտական, կուսակցական աշխատանքի փորձի, գիտության, մշակույթի վերաբերյալ հոդվածներ, ակնարկ, գրախոսություն, «Նշանավոր տարեթվեր» վերտառությամբ հրապարակվող նյութեր):

**2. ԲԱՎԱՐԱՐՈ՞ՒՄ Է ՁԵԶ ՆՅՈՒԹԵՐԻ ՇԱՐԱԴՐՄԱՆ ՄԱԿԱՐԴԱԿԸ** (բավարարում է, խիստ բարդ է, չափից ավելի պարզ է):

**3. ՁԵՐ ԸՆԴՀԱՆՈՒՐ ՏՊԱՎՈՐՈՒԹՅՈՒՆԸ ԱՄՍԱԳՐԻՑ** (սկզբունքային է, բավականաչափ սկզբունքային չէ, հետաքրքրական է, ձանձրալի է):

**4. Ո՞Ր ՀՈԴՎԱԾՆԵՐՆ ԵՆ ՀԱՏԿԱՊԵՍ ՄՆԱՑԵԼ ՁԵՐ ՀԻՇՈՂՈՒԹՅԱՆ ՄԵՋ** (թվարկեք դրանք) ____________________

____________________

____________________

____________________

____________________

**5. ՁԵՐ ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ՊԱՏԿԱՆԵԼՈՒԹՅՈՒՆԸ** (կոմունիստ, կոմերիտական, անկուսակցական):

**6. ՁԵՐ ԶԲԱՂՄՈՒՆՔԸ**

**7. ՁԵՐ ԿՐԹՈՒԹՅՈՒՆԸ** (բարձրագույն, միջնակարգ, ոչ լրիվ միջնակարգ, տարրական):

**8. ԻՆՉՊԻՍԻ՞Ն ԿՑԱՆԿԱՆԱՅԻՔ ՏԵՍՆԵԼ ԱՄՍԱԳԻՐԸ** (Ձեր առաջարկությունները ու դիտողությունները):

**Եթե ցանկանում եք՝ ստորագրեք հարցաթերթիկը:**

**Խմբագրությունը նախապես շնորհակալություն է հայտնում արձագանքելու համար և հուսով է, որ Ձեր պատասխանները կօգնեն ամսագրի մակարդակի հետագա բարձրացմանը:**



Адрес редакции: 375033, Ереван 33. Барекамутян 59 г.

Խմբագրության հասցեն՝ 375033, Երևան—33, Բարեկամության 59 գ.: Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրի տեղակալ՝ 27—25—29, պատ. քարտուղար՝ 27—12—92, պրոպագանդայի և էկոնոմիկայի բաժիններ՝ 27—37—80, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 27—19—80, գրական աշխատող՝ 27—60—64:

*ՎՖ 06784 Պատվեր 2383 Թղթի չափսը 70×108 1/16: Տիրաժ 14.100 Գինը 20 կոպ.*
*Ստորագրված է տպագրության 14/XII 1976 թ.*
*Տպ. 6 մամուլ, մամուլում 68840 նիշ:*
*ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան: Ավ. Իսահակյան փող. № 28:*

# Ձեզ համար, ընթերցողնե՛ր

### ՆՈՐ ԳՐՔԵՐ

Լ. ԲՐԵԺՆԵՎ— Ճառ՝ ՍՄԿԿ Կենտկոմի պլենումում. 1976 թ. նոյեմբերի 25-ին: *«Հայաստան» հրատ., 1976:*

Վ. ԱՎԵՏԻՍՅԱՆ— Հայ հասարակական մտքի պատմությունից: *«Հայաստան» հրատ., 1976:*

Ա. ԿԱՐԻՆՅԱՆ— Ժողովուրդների բարեկամության դրոշի ներքո: *Ե., ԳԱ հրատ., 1976:*

Վ. ԳԱՐԲԻՆՅԱՆ— Աթեիզմը և կոմունիստական աշխարհայացքի ձևավորումը: *ԵՊՀ հրատ., 1976:*

Ս. ՀԱԿՈԲՅԱՆ— Կենսաբանական գիտությունների զարգացումը Սովետական Հայաստանում: *Ե., «Գիտելիք» հրատ., 1976:*

Լ. ՂԱԼՈՒՄՅԱՆ— Կոլտնտեսությունների վարկավորումը զարգացած սոցիալիզմի արդի ժամանակաշրջանում: *ԵՊՀ հրատ., 1976:*

Պ. ՊԱՊՅԱՆ— Քառորդ դար ապարատների մոտ: *«Հայաստան» հրատ., 1976:*

Հ. ՄԿՐՏՉՅԱՆ— Երբ Բաբելոնում թարգմանիչներ լինեին: *«Հայաստան» հրատ., 1976:*

Հ. ԱԴԱՄՅԱՆ— Երկրաբանա-հետախուզական հորատման տեխնոլոգիական և տեխնիկական տերմինների բացատրական բառարան: *ԵՊՀ հրատ., 1976:*

Վ. ԳԱԲՐԻԵԼՅԱՆ— Դիմանկարներ (Սփյուռքահայ գրողներ): *Ե., «Սովետական գրող», 1976:*

Դ. ՄԱԼՅԱՆ— Դեմքեր, հանդիպումներ: *Ե., «Սովետական գրող», 1976:*

**Идеи XXV съезда КПСС — в делах партии, всего народа.** М., Политиздат, 1976.

**Р. БАУЭРМАН, Г. РЕЧЕР — Ленинизм и классовая борьба.** Критика современных концепций антиленинизма. Перевод с нем. Изд. «Прогресс», 1976.

**В. КУЗЬМИН — Принцип системности в теории и методологии К. Маркса.** М., Политиздат, 1976.

**Социализм и труд.** Изд. «Правда», 1976.

**А. ЕПИШЕВ — Партия—организатор наших побед.** М., Воениздат, 1976.

**В АФАНАСЬЕВ — Основы философских знаний.** Издание 9-е, доп. изд. «Мысль», 1976.

**И. РЯЖСКИХ — Соревнование за высокую эффективность труда коллектива.** Изд. «Знание», 1976.

**В. КОРИОНОВ — Устремленные в будущее.** Коммунисты в современном мире. М., Политиздат, 1976.

**А. ШАБАЛИН — Сотрудничество стран—членов СЭВ в сфере материального производства.** Изд. «Знание», 1976.

**Г. ПИРОГОВ — Мирное сосуществование и идеологическая борьба.** Изд. «Знание», 1976.

**В. ШКУНАЕВ — Организация Объединенных Наций в современном мире.** Изд. «Наука», 1976.

**Советско-болгарские отношения и связи (документы и материалы).** Том I (ноябрь 1917—сентябрь 1944). Изд. «Наука», 1976.

**Общественность и проблемы войны и мира.** Изд. «Межд. отнош.», 1976.

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ՕԴԱՆԱՎԱԿԱՅԱՆԻ ՀԱՎԱՔԱՐԱՐԸ

*Օդանավակայանի թռիչքա-վայրէջքային հրապարակում գտնվող ձյունը, կեղտը, փոշին պատահարների պատճառ են: Ահա ինչու աշխարհի բոլոր օդանավակայաններում խստորեն հետևում են սարքերի մաքրությանը, որոնում առավել կատարյալ աղբահավաք միջոցներ: Մինսկի «Մելիորմաշ» փորձարարական գործարանի կոլեկտիվը ստեղծել է օդանավակայանները մաքրող յուրահատուկ վիթխարի մեքենա: Ռեկորդային արտադրողականություն ունեցող այդ հսկան կես ժամում մաքրում է օդանավակայանի ձյունը և չորացնում թռիչքահրապարակը: Հավաքիչի վրա տեղադրված ռեակտիվ շարժիչի արձակած տաք օդը հավաքում է փոշին, հալեցնում ձյունը, չորացնում օդանավակայանի տարածքը:*

## ԿԻՆՈՆԿԱՐ՝ ՃԱՄՊՐՈՒԿՈՒՄ

*Փոքրիկ մի ճամպրուկում է տեղավորված և՛ կինոցուցադրման սարքը, և՛ կինոէկրանը. կինոսեանսի նախապատրաստման համար պահանջվում է ընդամենը մի քանի վայրկյան: Բավական է բարձրացնել ճամպրուկի կափարիչը, առաջ քաշել ոչ մեծ էկրանը, որի կողքին կառավարման պուլտն է ու դինամիկը (բարձրախոսը): Որպեսզի էկրանի վրա հայտնվի պատկերը, անհրաժեշտ է սարքի մեջ դնել կինոժապավենի փոքր կասետը և սեղմել պուլտի կոճակը: Ֆիլմերը ցուցադրվում են առանց լուսաքողարկման: Մագնիտաֆոնային կոճից ոչ մեծ կինոկասետը հերմետիկորեն ծածկված է. այդ պահպանում է ժապավենը վնասվելուց ու կեղտոտվելուց: Ընդհանրապես ժապավենը կասետի մեջ է տեղադրվում առանց կոճի՝ գլանափաթեթի նման, որի ներսի ու դրսի ծայրերը միացված են: Այդ հնարավորություն է ընձեռում կինոնկարը բազմիցս ցուցադրելու: Նման կինոսարքն անհրաժեշտ է դասասենյակներում ու լսարաններում ռեկլամային և ուսուցողական ֆիլմերի ցուցադրման համար: Այն կարելի է օգտագործել նաև ութ միլիմետրանոց ժապավենի սև-սպիտակ կամ գունավոր պատկերման սովորական կարճամետրաժ ֆիլմերի համար: Ամերիկյան «Տուկ-բեյս» ֆիրմայի կինոցուցադրման այս նոր փոքր սարքը սնվում է սովորական էլեկտրացանցից, թեթև է, պարզ ու հուսալի:*

## ՄԱԳԼՑՈՂ ԷՔՍԿԱՎԱՏՈՐ

*Էքսկավատորի նման հսկա բոլոր մեքենաները չէ, որ կարող են բանել ուղղաձիգ լեռնալանջերում: Նորվեգիայի «Էռնստ Մենցի» ֆիրմայի կոնստրուկտորները փորձել են լուծել այդ խնդիրը՝ ստեղծելով թեթև կցովի հիդրավլիկական էքսկավատոր՝ անդրադարձ թիով: Հինգ տոննանոց այդ էքսկավատորը մոնտաժված է երկսռնանի շասսիի վրա, որի անիվները կարող են ընդունել տեղանքին հարմար դիրք: Մեքենայի երրորդ հենման կետն է երկար նեցուկը, որը, միաժամանակ, ծառայում է որպես էքսկավատորը ավտոմեքենայի քարշիչին միացնող առեղ: Բոլոր հանգույցները հաղորդակցվում են 40 լ. վ. հզորություն ունեցող դիզելի միջոցով:*

## ԻՆՔՆԱՁՆՀԱԼ ՄԵՔԵՆԱ

*Ընդհանրապես ձյունմաքրիչ մեքենաների կողքին միշտ լինում են ինքնաթափ մեքենաներ, որոնք փոխադրում են հավաքված ձյունը: Ճապոնական «Սակաի» ֆիրմայի թողարկած նոր մեքենան փողոցից հավաքում է ձյունը, բեռնում բունկերը, որտեղ այն հալչում է և թափվում քաղաքային ջրթող սիստեմը: Իհարկե, ձնհալ մեքենան համեմատաբար մեծ է (երկարությունը՝ 11,5 մետր, բարձրությունը՝ 3,5 մետր, ծանրությունը՝ 21,5 տոննա), բարդ ու սովորականից թանկ, բայց և ավելի շահավետ, քանի որ միանգամից ազատվում են մի քանի ինքնաթափեր: Նոր մեքենան մոնտաժվում է երկար, չորսսռնանի շասսիի վրա. արտադրողականությունը ժամում 120 տոննա է, աշխատանքային արագությունը՝ ժամում 5,6 կմ, տրանսպորտայինը՝ ժամում 28 կմ:*

*Վերջերս «Սակաի» ֆիրման թողարկել է ձնհալ մեքենայի ևս մի մոդել՝ ժամում 30 տոննա արտադրողականությամբ: Մոնտաժված է երկսռնանի ամենագնաց շասսին: Դրանք հարմար են մեծ քաղաքների, այգիների, սպորտային համալիրների, օդանավակայանների համար, առավել արդյունավետ են բանում զերոյից փոքր-ինչ ցածր ջերմության պայմաններում:*